ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 3
ՄԱՐՏ
1961 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVIII
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

СОДЕРЖАНИЕ







# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՏՎԻ ԳՈՐԾԸ

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, հաջողությամբ կենսագործելով յոթնամյա պլանը, ստեղծում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան:

Մեր մեծ Հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ միասին Սովետական Հայաստանի աշխատավորները, մտնելով սոցիալիստական մրցության մեջ, նույնպես գերակատարեցին ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1960 թվականների առաջադրանքները: Անցյալ տարի ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած արդյունաբերական արտադրանքի թողարկման առաջադրանքը կատարվեց 102 տոկոսով և, 1959 թվականի համեմատությամբ, աճը կազմեց 12 տոկոս, պլանով նախատեսված 10-ի փոխարեն:

Անցած երկու տարվա արդյունքները ցույց տվին, որ մեզ մոտ բոլոր հնարավորությունները կան՝ ժամկետից շուտ կատարելու յոթնամյա պլանը:

Ամբողջ ռեսպուբլիկայով մեկ ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը քաղաքական ու արտադրական մեծ ակտիվություն է առաջ բերել բանվորների ու բանվորուհիների, կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի և գյուղատնտեսական մասնագետների մոտ, որոնք պայքարի են ելել՝ պատվով կատարելու յոթնամյակի երրորդ տարվա առաջադրանքները:

Երևանի Կիրովի անվան գործարանի, Ղափանի պղնձամոլիբդենային կոմբինատի, Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանի, Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի, Երևանի առաջին կոշկի ֆաբրիկայի և ուրիշ ձեռնարկությունների կոլեկտիվներ կատարեցին այս տարվա հունվար ամսվա պլանները: Այդ ձեռնարկությունների արտադրական հաջողություններն առաջին հերթին արդյունք են այն բանի, որ տնտեսական ղեկավարները, պարտիական ու արհմիութենական կազմակերպությունները կարողանում են լիովին օգտագործել ներքին ռեզերվները, բարձր պահել աշխատանքային կարգապահությունը և բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների բոլոր ջանքերն ուղղել պետական պլանները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու նպատակին:

Սակայն ռեսպուբլիկայի արդյունաբերական մի շարք ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններ, տարվելով անցյալի հաջողություններով, թուլացրին իրենց աշխատանքի թափը, չգլխավորեցին մասսաների արտադրական խանդավառությունը՝ հենց այս տարվա սկզբից արտադրա-

կան պլանների կատարումն ապահովելու համար: 1961 թվականի հունվարին ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերությունը պլանը կատարել է 97,5 տոկոսով: 249 ձեռնարկություններից 68-ը, կամ ձեռնարկությունների ընդհանուր թվի 27 տոկոսը, չեն կատարել հունվար ամսվա առաջադրանքները:

Ռեսպուբլիկայի արդյունաբերական այնպիսի կարևորագույն և առաջատար ճյուղեր, ինչպիսիք են՝ սարքաշինությունը, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը և մասամբ էլ քիմիական արդյունաբերության առանձին ձեռնարկություններ ո՛չ միայն չկատարեցին այս տարվա հունվար ամսվա իրենց արտադրական առաջադրանքները, այլև չմնացին անցյալ տարվա դեկտեմբերին հասած մակարդակի վրա: Դրությունը մխիթարական չէ Շինանյութերի արդյունաբերության, Փայտամշակման և անտառային արդյունաբերության, Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության վարչությունների արդյունաբերական ձեռնարկություններում:

Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի թեթև արդյունաբերությանը ենթակա 15 ձեռնարկություն թերակատարել են այս տարվա հունվար ամսվա առաջադրանքները, Հայրենիքին պարտք մնալով ավելի քան մեկ և կես միլիոն ռուբլու արտադրանք:

Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկությունների զգալի մասը անբավարար է աշխատել նաև 1960 թվականի չորրորդ եռամսյակում, որի հետևանքով արտադրանքի թողարկման եռամսյակային պլանը կատարվել է 98,9, իսկ դեկտեմբերինը՝ 91,3 տոկոսով: Բավական է նշել, որ դեկտեմբերին 78 գործարան և ֆաբրիկա թերակատարեցին իրենց պետական առաջադրանքները:

Ի՞նչն է պատճառը, որ այսպիսի դրություն է ստեղծվել ռեսպուբլիկայի ժողտնտխորհին ենթակա արդյունաբերական ձեռնարկություններում:

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը քննարկելով ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերության 1961 թվականի հունվարի աշխատանքի արդյունքները՝ նշեց, որ 1960 թվականի 4-րդ եռամսյակում և այս տարվա հունվարին ժողտնտխորհի արդյունաբերության պետական պլանը չկատարելու հիմնական պատճառը պետական կարգապահության և ժողտնտխորհի վարչությունների ղեկավարների պատասխանատվության զգացման թուլացումն է: Արդյունաբերական ձեռնարկություններին ցույց չի տրվել օպերատիվ ղեկավարություն: Վարչությունների և մի շարք գործարանների ու ֆաբրիկաների ղեկավարներ անցյալ տարի անհրաժեշտ նախապատրաստական աշխատանք չեն կատարել 1961 թվականի պետական պլանի կատարման ուղղությամբ:

Անցյալ տարի Լենինի անվան հայէլեկտրագործարանի ձուլման ցեխում լրացուցիչ հզորությունները շահագործման չհանձնելու պատճառով թերակատարվեց Երևանի էլեկտրատեխնիկական գործարանին ձուլվածք մատակարարելու պլանը: Դրա հետևանքով վերջինս հունվար ամսին չկատարեց էլեկտրաշարժիչների թողարկման պլանը: Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի արտադրած վատորակ պղնձի պատճառով Երևանի կաբելի գործարանը թերակատարեց հունվարի պլանը: Լենինականի հեծանիվների գործարանը անցյալ տարվա 4-րդ եռամսյակում պլանից դուրս ծախսել էր նորմատիվներով նախատեսված փոխանցվելիք նյութերն ու հումքը, որի պատճառով հուն-



վար ամսին մնացած նյութերն ու հումքը չբավականացրին պետական առաջադրանքը կատարելուն:

Արդյունաբերական ձեռնարկությունների, ժողտնտխորհի վարչությունների, պարտիայի քաղաքային ու շրջանային կոմիտեների առանձին ղեկավարներ, փոխանակ խորամուխ լինելու արտադրության մեջ, ուսումնասիրելու և հայտաբերելու եղած արտադրական հնարավորությունները և ձեռնարկությունների կոլեկտիվներին մոբիլիզացնելու պետական առաջադրանքների կատարման ու գերակատարման համար, անհիմն կերպով ձգտում են ապացուցել, որ պլանները պետք է վերանայել ու նվազեցնել:

Ռեսպուբլիկայի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններում ստեղծված այս վիճակը որոշ չափով հետևանք է այն բանի, որ ՀԿՊ Երևանի և Լենինականի քաղաքային, Երևան քաղաքի Ստալինյան, 26 կոմիսարների անվան շրջանային կոմիտեները ինչպես հարկն է ուշադրություն չեն հատկացնում արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական գործունեությանը, բավարար չափով չեն զբաղվում ձեռնարկությունների կոլեկտիվների, սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքով, նրանց չեն մղում արտադրության ներքին ռեզերվները մոբիլիզացնելու, ժողովրդա-տնտեսական պլանները անվերապահորեն կատարելու նպատակին:

Արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները թուլացրել են ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրենց ֆունկցիայի կատարումը: Շատ գործարաններում և ֆաբրիկաներում պարտիական վերահսկողության հանձնաժողովներն աշխատում են անբավարար: Միայն դրանով կարելի է բացատրել, որ այս տարվա հունվարին Երևանի արդյունաբերական ձեռնարկությունները պլանը կատարեցին 96,9, իսկ Լենինականինը՝ 90,6 տոկոսով:

Պետք է նշել, որ ռեսպուբլիկայի Պետպլանը չի սահմանել անհրաժեշտ վերահսկողություն, որպեսզի ժամանակին ձեռնարկություններին իջեցվեն արտադրության համար անհրաժեշտ նյութերի, կոմպլեկտավորող առարկաների ու կոոպերացված մատակարարումների ֆոնդերն ու պլանները:

Վերլուծելով յոթնամյակի առաջին երկու տարվա արդյունքները՝ համարձակորեն կարելի է ասել, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության բոլոր ճյուղերը, արդյունաբերական բոլոր ձեռնարկություններն առանց բացառության, ունեն հնարավորություններ և ռեզերվներ՝ անթերի կատարելու պետական առաջադրանքները: Այդ է ցույց տալիս առաջավոր գործարանների ու ֆաբրիկաների փորձը:

Նոր, ավելի վիթխարի և պատվավոր խնդիրներ են դրված արդյունաբերության առջև 1961 թվականին: Դրանք լուծելու համար պարտիական կազմակերպությունները պետք է մոբիլիզացնեն ողջ աշխատավորության ջանքերը, քաղաքական-մասսայական աշխատանքն ի սպաս դնեն պետական առաջադրանքների կատարմանը:

Այժմ պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեների, ռեսպուբլիկայի ժողտնտխորհի, նրա ճյուղային վարչությունների, ձեռնարկությունների ղեկավարների և սկզբնական պարտիական ու արհմիութենական կազմակերպությունների վրա մեծ պատասխանատվություն է դրված արդյունաբե-

րության պետական պլանները բոլոր ցուցանիշներով կատարելու և գերակատարելու համար:

Ձեռնարկությունները պետք է ղեկավարել ավելի կոնկրետ և օպերատիվ: Լուրջ ուշադրություն պետք է հատկացնել ճյուղային վարչությունների և ժողտնտխորհի ամբողջ սիստեմի ձեռնարկությունների կոոպերացված մատակարարման գործը ճիշտ և ժամանակին կատարելուն:

Յոթնամյակի երրորդ տարվա պետական առաջադրանքների հաջող կատարումը պայմանավորված է նաև նորակառույց արդյունաբերական օբյեկտները ժամանակին շահագործման հանձնելով: Հաշվի առնելով այդ, ՀԿՊ Կենտկոմը որոշեց նյութական ու դրամական միջոցները կենտրոնացնել գործարկվող օբյեկտներում՝ արտադրական նոր կարողությունները ժամանակին շահագործման հանձնելու համար:

Արտադրանքի նոր տեսակների յուրացման ու թողարկման, սարքավորումները ժամանակին պատրաստելու, տեխնոլոգիական պրոցեսները ճիշտ կազմակերպելու և որակյալ կադրեր պատրաստելու գործում շատ կարևոր է նաև ձեռնարկություններին ժամանակին ցույց տրվող կազմակերպական և տեխնիկական օգնությունը: Արդյունաբերության հիմնական խնդիրներից մեկը պետք է լինի կարճ ժամկետում անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել չտեղակայված սարքավորումներն օգտագործելու և գործող սարքավորումների արտադրողականությունը բարձրացնելու, աշխատատար պրոցեսները մեքենայացնելու և ավտոմատացնելու, որոնք կապահովեն պլանների կատարումը:

Ներքին ռեզերվներն ավելի լրիվ օգտագործելու, վարչա-կառավարչական ապարատում եղած ավելորդությունները վերացնելու համար Պետպլանը և ժողտնտխորհը պետք է ըստ աշխատանքային ցուցանիշների ճշտեն ձեռնարկությունների պլանները:

Մեր օրերում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում պլանների կատարման գործում վճռական դեր են կատարում կադրերը: Այդ իսկ պատճառով ռեսպուբլիկայի ժողտնտխորհի ղեկավարությունը, ՀԿՊ քաղաքային և շրջանային կոմիտեները պետք է ջանան արդյունաբերական ձեռնարկություններն ապահովել տնտեսական-տեխնիկական ձեռնհաս ու որակյալ կադրերով, արտադրության ղեկավարումը հանձնեն այնպիսի ընկերների, որոնք կապահովեն պետական և աշխատանքային բարձր կարգապահություն և պետական առաջադրանքների կատարումը:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումում արտասանած ճառում ընկեր Ն. Ս. Խրուշչովը գյուղատնտեսության արտադրության առաջավորներին անվանեց փարոսներ: Այդպիսի փարոսները շատ ու շատ են նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, որոնք պատվով են կատարում իրենց առաջադրանքները:

Պարտիայի շրջանային կոմիտեները, աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների գործկոմները, սովխոզների և կոլտնտեսությունների ղեկավարները պետք է միջոցառումներ մշակեն ժողովրդա-տնտեսական պլանով հաստատված ժամկետներում ապահովելու մսի և կաթի հավասարաչափ մատակարարումը արդյունաբերական վերամշակման նպատակով:

Արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների հիմնական խնդիրը պետք է լինի՝ ուժեղացնել հսկո-



ղությունը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, ակտիվացնել
պարտիական վերահսկողության հանձնաժողովների աշխատանքը, բարելա-
վել կազմակերպական, քաղաքական և մասսայական աշխատանքը կոլեկ-
տիվներում, նրանց մոբիլիզացնել պետական առաջադրանքները և ստանձ-
նած սոցիալիստական պարտավորությունները բոլոր ցուցանիշներով կատա-
րելու և գերակատարելու համար:

Ինչպես ողջ երկրում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում արդյունաբե-
րության մեջ աշխատում են շատ կանայք: Կոմունիստական պարտիան ու Սո-
վետական կառավարությունը մեծ միջոցներ են հատկացնում արտադրու-
թյան մեջ աշխատող կանանց աշխատանքի ժամերին երեխաներին խնամե-
լու հոգսից ազատելու համար՝ ստեղծելով մանկամսուրների և մանկապար-
տեզների լայն ցանց: Սակայն երբեմն մանկապարտեզների և մանկամսուր-
ների շենքերը կառուցվում են արդյունաբերական ձեռնարկություններից հե-
ռու, որը ծնողների համար ավելորդ դժվարություններ կրելու տեղիք է տալիս:
Դրանից խուսափելու համար աշխատավորների դեպուտատների քաղաքային
և շրջանային Սովետները այսուհետև պետք է ձգտեն մանկական հիմնարկ-
ների շենքերը կառուցել այն օբյեկտների մոտ, որտեղ մեծ թվով կանայք են
աշխատում:

Ոչ մի ետ մնացող ձեռնարկություն, արդյունաբերության ոչ մի ետ մնա-
ցող բնագավառ,— այս պետք է լինի մեր նշանաբանը: Այս նպատակին պետք
է ուղղվեն ժողտնտխորհի, նրա վարչությունների, ձեռնարկությունների ղե-
կավարների, պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակեր-
պությունների ջանքերը:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագու-
մարի պատվին սկսված սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալվում
է ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, ցեխերում,
բրիգադաներում և ագրեգատներում: Հայաստանի տնտեսական վարչական
շրջանի ժողովրդական տնտեսության խորհրդի ձեռնարկությունների, կա-
ռույցների և կազմակերպությունների կոլեկտիվները պարտավորվել են այս
տարվա համախառն արտադրանքի թողարկման պետական պլանը կատա-
րել ժամկետից շուտ, պլանից դուրս յուրացնել 22 տեսակի նոր սարքավո-
րումների, սարքերի, մեխանիզմների, ինչպես նաև 365 նոր արտադրանք-
ների ու նյութերի պատրաստումը. հումքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի
խնայողաբար ծախսման, ներքին ռեսուրսների մոբիլիզացման հաշվին
պլանից դուրս տալ 1800 տոննա կաուչուկ, 10000 կոմպլեկտ ավտոդող, 5000
տոննա կալցիումի կարբիդ, 6000 տոննա ցեմենտ, 200 հազար հատ շիֆերի
պայմանական սալիկ, 40 հազար մետր բրդյա, 100 հազար մետր մետաքսյա
գործվածքներ և այլ արտադրանք, ընդամենը՝ 15 միլիոն 604 հազար ռուբլու
արժողությամբ: Դա Հայաստանի կոմունիստների՝ մեր բոլոր աշխատողների
պատվի գործն է:

Սովետական Հայաստանի արդյունաբերության բնագավառի աշխատող-
ները, ինչպես նաև ողջ աշխատավորությունը իրենց բոլոր ջանքերն ու գիտե-
լիքները կգործադրեն՝ պատվով կատարելու յոթնամյակի երրորդ տարվա
պլանները և արտադրական լավագույն նվերներով կդիմավորեն ՍՄԿՊ XXII
համագումարը:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԱՄԵՆԱԱԶԴԵՑԻԿ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒԺԸ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

Ավելի քան հարյուր տարի առաջ գիտական կոմունիզմի առաջին ծրագրային փաստաթղթում՝ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ում Մարքսի և Էնգելսի ազդարարած կոմունիզմն այժմ դարձել է ամենազորեղ շարժումը, ամենաազդեցիկ քաղաքական ուժն ամբողջ աշխարհում։ Պատմությունը չգիտե քաղաքական մտքի մի այլ հոսանք, գաղափարախոսություն կամ շարժում, որը մեկ հարյուրամյակի ընթացքում, ներքին և արտաքին թշնամիների գնդակների տարափի տակ կարողանար ոչ միայն հաղթահարել դժվարությունները և տիրապետել հարյուր միլիոնավոր մարդկանց մտքերին, այլև դառնալ այն հզոր նյութական ուժը, որը հասարակական առաջադիմության կարևորագույն գործոնն է մեր օրերում։

Ո՞րն է համաշխարհային կոմունիստական շարժման կենսունակության գաղտնիքը։

Պատմությունը կերտում են ժողովրդական մասսաները, իսկ կոմունիստական շարժման հզորության արմատները պետք է փնտրել մասսաների վրա նրա ունեցած ազդեցության մեջ։ Հարյուրամյակի ընթացքում կոմունիստները միշտ գտնվել են մարդկության առաջադիմության համար մղվող պայքարի առաջին բնագծում։ Կոմունիստական և բանվորական պարտիաների 1960 թվականի նոյեմբերյան խորհրդակցության արդյունքները մի անգամ ևս հաստատեցին, որ չկա մի այլ ուժ, որի դերը մարդկության զարգացման մեջ լիներ այնքան որոշիչ, որքան համաշխարհային կոմունիստական շարժման դերը։

Գիտական կոմունիզմի արշալույսին, երբ նրա գաղափարները մոգական լապտերի պես սկսեցին փարատել պատմությունը պարուրող խորհրդավոր մշուշը, կոմունիստներին կարելի էր հաշվել միայն հարյուրներով, այն էլ Արևմտյան Եվրոպայում։ Հետհոկտեմբերյան առաջին տարիներին, երբ սկսվեց կոմունիստական պարտիաների ձևավորման պրոցեսն արտասահմանում, ամբողջ աշխարհում կոմունիստների թիվը չէր անցնում մի քանի հարյուր հազարից։ Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրեին աշխարհում կար 4 միլիոն 200 հազար կոմունիստ, իսկ այժմ կոմունիստական և բանվորական պարտիաներն իրենց շարքերում միավորում են ավելի քան 36 միլիոն մարդ։

1957 թվականից մեզ բաժանող երեք տարիները հանդիսացան համաշխարհային կոմունիստական շարժման զարգացման մի նոր էտապ։ Այդ ժամանակամիջոցում կազմակերպվեցին 12 նոր պարտիաներ և այժմ աշխարհում գործող կոմունիստական և բանվորական պարտիաների թիվը հասնում է 87-ի։



Մարքսիստական պարտիաների առաջացման ու կազմակերպման պրոցեսը շարունակվում է։ Իմպերիալիզմի դեմ մղվող ազգային-ազատագրական պայքարի հաջողությունների հետ մեկտեղ, նոր կոմունիստական պարտիաներ են կազմավորվում գաղութակալության լուծը թոթափած երկրներում։

Կոմունիստական շարժման աճման մեջ իր արտահայտությունն է գտնում ժողովրդական մասսաների ձգտումը դեպի կոմունիզմ։ Համաշխարհային կոմունիստական շարժման վիթխարի ազդեցիկ ուժը միայն նրա թվական աճի և միջազգային ծավալի հետևանքը չէ։ Դրանք երևույթներ են, որոնք ինքնըստինքյան չեն բացահայտում հարցի էությունը և կարիք ունեն հիմնական բացատրության։ Ուրեմն որո՞նք են համաշխարհային կոմունիստական շարժման՝ մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժը դառնալու պատճառները։



Կոմունիստական և բանվորական պարտիաների 1960 թվականի նոյեմբերյան խորհրդակցության ծրագրային փաստաթղթում՝ Հայտարարության մեջ տրված է մեր դարաշրջանի նոր գիտական բնորոշումը։

«Մեր դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելն է,— ասված է Հայտարարության մեջ,— որն սկսվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայով, հասարակական երկու հակադիր սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական ռևոլյուցիաների և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, սոցիալիզմի ուղին նորանոր ժողովուրդների անցման, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը»։

Կոմունիստական շարժումը միակն է, որը պատմության երբևէ համընթաց արտահայտում է ժամանակի ոգին։ Դա ամենառևոլյուցիոն շարժումն է, որին խորթ է պահպանողականությունը։ Ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմով, համաշխարհային կոմունիստական շարժման ղեկավար օրգանները ճիշտ և ժամանակին են ըմբռնում մեր դարաշրջանի առանձնահատկությունները, դրանցից բխող խնդիրները և գտնում դրանց լուծման ուղիները։

Կապիտալիստական հասարակության պաշտոնական և անպաշտոն գրչակներն անընդհատ լուտանք են շպրտել և շարունակում են շպրտել գիտական կոմունիզմի հասցեին։ Պրոլետարիատի, նրա քաղաքական ավանգարդի և նրա ռևոլյուցիոն ուսմունքի նկատմամբ իմպերիալիստական բուրժուազիայի տածած անասնական ատելության մեջ արտահայտվում է նրա խուճապը մոտալուտ կործանման վտանգի հանդեպ։

Գաղափարական անզուսպ արշավանք ծավալելով համաշխարհային կոմունիստական շարժման դեմ, նրա ուսմունքը հայտարարելով «չհիմնավորված», «սխեմատիկ», «միստիկա» և այլն, իմպերիալիստական ռեակցիան չի բավարարվում միայն իր դիպլոմավոր և անդիպլոմ փիլիսոփաների ու սոցիոլոգների, հրապարակախոսների ու պատմաբանների, գրողների ու ժուռնալիստների հերյուրանքներով, որոնք հեղեղում են հակակոմունիստական գրական բորսան։ Բանն այն է, որ հակակոմունիստական զառանցանքի հանդեպ ընթերցողը, ունկնդիրը և հանդիսատեսը կորցրել են հետաքրքրությունը, այն համարելով սիրտ խառնելու չափ տաղտուկ, միօրինակ և անճաշակ։ Բուր-

ժուական գաղափարական դիվերսանտներին չեն փրկում մինչև իսկ այդ գրական խոտանին փակցված սենսացիոն վերնագրերը, ինչպես, օրինակ՝ «Հակակոմունիստական մանիֆեստ», «Դեմոկրատիան ընդդեմ կոմունիզմի» և այլն, որոնք կոչված են շլացնող ռեկլամի դեր կատարելու։ Հակակոմունիստական հերյուրանքի շուկայում պահանջարկը արագորեն ընկնում է։ Այդ պատճառով իմպերիալիստական բուրժուազիան ջանասիրությամբ հավաքագրում և օգտագործում է ամեն գույնի ռևիզիոնիստներին, կարիերիստներին, կոմունիզմի ժամանակավոր ուղեկից-ռենեգատներին, փորձելով համաշխարհային կոմունիստական շարժման և նրա ուսմունքի մասին տարածվող զրպարտությունները ներկայացնել որպես «լավատեղյակ աղբյուրներից» ստացվող «ճշմարտություն»։

Մերկապարանոց կերպով ժխտելով ժամանակաշրջանի հիմնական պրոբլեմները մարքսիզմ-լենինիզմի օգնությամբ լուծելու հնարավորությունը՝ ռենեգատներն ու ռևիզիոնիստներն անկարող են մարքսիզմի ամենակարող, ամբողջական և համակողմանի ուսմունքին հակադրել որևէ գիտական կոնցեպցիա։ Մարքսիզմը հերքելու ապարդյուն փորձերը գրեթե այնքան հին են, որքան ինքը՝ պրոլետարիատի ռևոլյուցիոն ուսմունքը։

Միջազգային կոմունիստական շարժումը և նրա ուսմունքը աճել, կոփվել և հարստացել են թշնամիների դեմ մղված անողոք պայքարում։ Նրանք անսասան ժայռի նման միշտ մնացել են կանգուն, իսկ հակակոմունիզմի ալիքներն անօգնական կերպով փշրվել են՝ դիպչելով այդ ժայռի ամրակուռ կողերին։ Մարքսիզմ-լենինիզմի անսասանության գաղտնիքը նրա ճշմարտացիության մեջ է։

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության փաստաթղթերը՝ Հայտարարությունը և աշխարհի բոլոր ժողովուրդներին ուղղած Դիմումը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի ճշմարտացիության, նրա կենսունակության նոր վկայություն են։ Այդ փաստաթղթերն աչքի են ընկնում իրենց գիտական խորությամբ, ընդգրկման մասշտաբներով, հարցադրումների պարզությամբ ու պատասխանների սպառիչ բնույթով։ Աշխարհում չկա մի այլ քաղաքական ուժ, որը կարողանա չափվել համաշխարհային կոմունիստական շարժման հետ, որի գործունեության ծրագիրն այդ փաստաթղթերն են։

Հատկանշական է, որ նույնիսկ մարքսիզմի և կոմունիզմի կատաղի թշնամիները և նրանց աջ սոցիալիստական տրուբադուրներն անկարող եղան լռության մատնել համաշխարհային կոմունիստական շարժման Մոսկվայի ֆորումի փաստաթղթերը։ Չնայած իրենց տված գնահատականների շինծու զսպվածությանը, նրանք այնուամենայնիվ անկարող էին շրջանցել դրանց միջազգային նշանակության հարցը։ Այսպես, ՆԱՏՕ-ի խորհրդի 1960 թվականի դեկտեմբերյան սեսիայում բելգիական աջ սոցիալիստ Սպաակը կոչ արեց ստեղծել մի «փաստաթուղթ», որը կարողանար լինել կոմունիստների մոսկովյան ֆորումի հայտարարության «արժանի պատասխան»-ը։ Արևմտագերմանական սոցիալիստական «Նեյե Ռեյցեյտունգ» թերթը գրում էր. «Այդ փաստաթուղթը պետք է գնահատել որպես մեր ժամանակի քաղաքական փաստաթղթերից ամենանշանակալին»։

Հայտարարությունը և Դիմումը համաշխարհային կոմունիստական շարժման գաղափարական և քաղաքական խոշորագույն հաղթանակն են։ Այդ



փաստաթղթերը հանդիսացան մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման, կոմունիստական և բանվորական պարտիաների կոլեկտիվ բանականության մարմնավորման օրինակ և նոր պատմական փորձի հիման վրա շարունակեցին, զարգացրին և հաստատեցին 1957 թվականի Դեկլարացիայի և մանիֆեստի գաղափարները, որոնց ճշտությունը հաստատված է անցած երեք տարիների իրադարձությունների ընթացքով։



Բուրժուական գաղափարախոսների համար այժմ շատ ավելի դժվար է պայքարել մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի տարածման դեմ, որովհետև այն վաղուց միայն տեսություն չէ։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների նվաճումները գիտական կոմունիզմի գաղափարների կիրառման կոնկրետ, շոշափելի արդյունքներն են, որոնք այլևս չի կարելի հերքել ոչ փքուն ֆրազներով, ոչ ամպագոռգոռ ճառերով, ոչ քողարկված կամ անսքող զրպարտությամբ, ոչ դիվանագիտական պերճախոսությամբ և ոչ էլ փիլիսոփայական մանվածապատ խորհրդածություններով։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի նվաճումներն անսահման հետաքրքրություն են առաջացնում այդ սիստեմից դուրս գտնվող բոլոր երկրներում։ Սկզբունքորեն դեմ լինելով ռևոլյուցիայի արտահանման գաղափարին, Վ. Ի. Լենինը տնտեսական շինարարությունը համարում էր այն բնագավառը, որտեղ սոցիալիզմի ուժերը պետք է ծավալեն իրենց վճռական մենամարտը կապիտալիզմի ուժերի դեմ։

Սոցիալիզմի հետ խաղաղ տնտեսական մրցությունը դարձել է կապիտալիստական աշխարհի աքիլլեսյան գարշապարը։ Երկու սիստեմների մրցությունն ու պայքարը խաղաղ գոյակցության պայմաններում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի զարգացման մեջ սկսված նոր էտապի յուրահատկությունն է։ Իսկ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամն իր բոլոր կողմերով նպաստում է համաշխարհային կոմունիստական շարժման հետագա ընդլայնմանը և ամրապնդմանը։

Կոմունիստական և բանվորական պարտիաների Հայտարարության մեջ ընդգծվում է. «Մեր ժամանակի գլխավոր բնորոշ գիծն այն է, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմը վերածվում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի»։ Այս միտքը պետք է հասկանալ նաև կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի տնտեսական առավելությունների իմաստով։

Առաջադեմ մարդկության համար սոցիալիզմն այն երիտասարդ, կենսունակ, անընդհատ հզորացող և կատարելագործվող սիստեմն է, որը հանդիսանալու է ամբողջ աշխարհի ապագա համապարփակ տնտեսական կացութաձևը։ Մինչդեռ կապիտալիստական տնտեսաձևը հիշեցնում է հարուստ կենսափորձ ունեցող, բայց անբուժելի հիվանդություններով տառապող ծերունու զառամած օրգանիզմ։

Հետպատերազմյան տարիներին արևմտյան բուրժուական շրջաններում շատ են ծամծմում կապիտալիզմի առողջացման զանազան «տեսությունները»։ Աջ սոցիալ-դեմոկրատներն ու մարքսիզմ-լենինիզմի ռևիզիոնիստները գնալով բուրժուական տեսաբանների թարմ հետքերով՝ երբեմն նրանցից ավելի բարձր են աղաղակում կապիտալիզմի «էվոլյուցիայի» մասին, նրա խաղաղ ու ներ-

դաշնակ «տրանսֆորմացիայի» մասին, որը բուրժուական ռեֆորմիստական տնտեսագիտական գրականության մեջ ստացել է «ժողովրդական կապիտալիզմ», «դեմոկրատական կապիտալիզմ» կամ «ընդհանուր բարեկեցության պետություն» հրապուրիչ անվանումները: Իրականում ողջ համաշխարհային կապիտալիստական սիստեմին համակել է անկման և քայքայման խոր պրոցեսը, որի ծնունդն է պետական մոնոպոլիստական սիստեմը: Մոնոպոլիստների ուժը պետության ուժի հետ մի ընդհանուր մեխանիզմում միավորելու միջոցով պետական մոնոպոլիստական կապիտալը նպատակ ունի կապիտալիստական կարգը դուրս բերել հարաճուն դժվարություններից: Այսպիսով, կապիտալիզմի դեմոկրատական «տրանսֆորմացիայի» առասպելը ոչ այլ ինչ է, եթե ոչ մի խայծ, որով իմպերիալիստական բուրժուազիան փորձում է որսալ աշխատավորական մասսաների աճող դժգոհությունը:

Աշխարհում ոչ մի քաղաքական ուժ իր թափով, ծավալով և տարածվածությամբ չի կարող համեմատվել կոմունիստական շարժման հետ: Միջազգային մասշտաբով նա գերազանցում է սոցիալ-դեմոկրատական շարժմանը ավելի քան 3 անգամ: Ամբողջությամբ վերցրած համաշխարհային բանվորական շարժման մեջ մարքսիստական-լենինյան հոսանքը զգալիորեն գերազանցում է ռեֆորմիստական հոսանքին: Եթե կոմունիստական շարժումն ընդունել է իսկական համաշխարհային մասշտաբներ, ապա սոցիալ-դեմոկրատական շարժումը շարունակում է հիմնականում սահմանափակվել Եվրոպայի շրջանակներում:

Կոմունիստական և բանվորական պարտիաներ այժմ կան աշխարհի գրեթե բոլոր երկրներում և շատ երիտասարդ պարտիաներ իրենց ուժով և քաղաքական ազդեցությամբ ամենևին չեն զիջում այն երկրների պարտիաներին, որոնք համարվում են բանվորական շարժման և նրա քաղաքական կազմակերպությունների օրրանը: Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում այժմ գործում են ուժեղ և ազդեցիկ կոմունիստական պարտիաներ:

Աջ սոցիալիստական պարտիաների ազդեցության խիստ անկման պատճառն այն է, որ նրանց ծրագրերն ու պլատֆորմներն ամբողջովին շաղախված են հակակոմունիզմի թույնով և հակասում են ժողովրդական մասսաների ձգտումներին:

Այժմ քչերին է հետաքրքրում եվրոպական աջ սոցիալիստական պարտիաների կարծիքը աշխարհը հուզող պրոբլեմների մասին և նրանց գործունեության հետ կապված կարևորագույն իրադարձություններն անցնում են աննկատ: Այդպես աննկատ անցավ Արևմտյան Եվրոպայի աջ սոցիալիստական պարտիաների առաջնորդների հանդիպումը Ավստրիայի Զալցբուրգ քաղաքում: Զալցբուրգի երեքօրյա բանակցությունները նվիրված էին Կոմունիստական և բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցության արդյունքներին: Փակ դռների հետևում տեղի ունեցած այդ հանդիպումը չտվեց և չէր էլ կարող տալ ժամանակաշրջանի արմատական հարցերի պատասխանը: Եվ պատահական չէ, որ նրա մասնակիցները խուսափեցին հասարակայնության դատին ներկայացնել իրենց որոշումները: Զալցբուրգի հանդիպումը ցույց տվեց, որ սոցիալ-դեմոկրատիան անընդունակ է մեր դարաշրջանի առանձնահատկություններից բխող որևէ կոնցեպցիա հակադրել Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցության պլատֆորմին՝ խաղաղության, զինաթափման, գաղութային սիստեմի վերացման,



կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու հարցերում: Այն ապացուցեց, որ սոցիալ-դեմոկրատիան անուժ է դիմադրելու համաշխարհային կոմունիստական շարժման շարքերի ընդլայնմանը և հեղինակության աճին:

Կոնգրեսին հղած իր առաջին ուղերձում պրեզիդենտ Քեննեդին նշեց, որ 1919—33 թթ. ճգնաժամից հետո երբեք այդքան սնանկացման դեպքեր չէին եղել ԱՄՆ-ի գործարար աշխարհում: ԱՄՆ-ում գործազուրկների թիվն այժմ անցնում է 5,5 միլիոն մարդուց: Իր ուղերձում Քեննեդին ստիպված էր խոստովանել, որ տնտեսության աճի տեմպերով Միացյալ Նահանգները գտնվում են վերջին տեղերից մեկում: Նա ասաց, որ մասնագետները տագնապալից միահամուռությամբ կանխագուշակում են տնտեսության հետագա թուլացում և միայն գործազրկության աննշան կրճատում 1961 և 1962 թվականներին: 1960 թվականին ԱՄՆ-ի պատմության մեջ առաջին անգամ ծագեց դոլարի ճգնաժամը:

Ճիշտ հակառակ պատկեր գոյություն ունի սոցիալիստական երկրներում: Եթե 1957—1959 թթ. կապիտալիստական երկրների արտադրանքի ծավալն աճել է ընդամենը 7,4 տոկոսով, ապա սոցիալիստական սիստեմի երկրներում այն աճել է 37,1 տոկոսով: Բոլոր սոցիալիստական երկրներում արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը կազմում է 17 տոկոս, իսկ կապիտալիստական երկրներում միայն 3,6 տոկոս, ըստ որում ՍՍՌՄ տարեկան միջին տեմպը հասել է 10,9 տոկոսի, իսկ ԱՄՆ-ինը՝ 2,4 տոկոսի: Յոթնամյակի առաջին երկու տարիներին Սովետական Միությունում արդյունաբերական արտադրանքն ավելացել է 23 տոկոսով, պլանով նախատեսված 17 տոկոսի փոխարեն և պլանից դուրս թողարկվել է 12 միլիարդ ռուբլու արտադրանք:

Սոցիալիստական երկրները և, մասնավորապես, Սովետական Միությունը ակնբախ նվաճումների են հասել գիտության և տեխնիկայի կարևորագույն ճյուղերի՝ տիեզերքի նվաճման, միջուկային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու, արտադրության մեքենայացման և ավտոմատացման բնագավառներում: Սոցիալիստական երկրների տնտեսական նվաճումներն ուղեկցվել են սոցիալ-քաղաքական այնպիսի վերափոխություններով, որոնք վերացրել են կապիտալիզմի վերականգնման հնարավորությունները՝ սոցիալիստական սիստեմի բոլոր երկրներում:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը թևակոխել է իր զարգացման նոր էտապը: Սովետական Միությունը հաջողությամբ իրագործում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ծրագիրը: 1965 թվականին ՍՍՌՄ-ը արտադրության ծավալով կգերազանցի ԱՄՆ-ին, իսկ մոտավորապես 1970 թվականին առաջ կանցնի ԱՄՆ-ից՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով. հեռու չէ այն ժամանակը, երբ սոցիալիստական սիստեմը կհաղթի կապիտալիզմին նյութական բարիքների արտադրության ասպարեզում:

Անշուշտ սոցիալիզմի առավելությունները չեն սահմանափակվում արտադրության զարգացման անհամեմատ բարձր տեմպերով ու մեծ հնարավորություններով: Սոցիալիզմն ապացուցել և շարունակում է ապացուցել իր անվիճելի առավելությունները աշխատավորների կենսամակարդակի բարձրացման, ժողովրդական կրթության, սոցիալական ապահովագրության և այլ բնագավառներում:

Դժվար է գերագնահատել կապիտալիստական սիստեմի նկատմամբ սո-

ցիալիստական սիստեմի տնտեսական հաղթանակի նշանակությունն ամբողջ աշխարհի կոմունիստական և բանվորական շարժման համար։ Այն շրջադարձային կետ կհանդիսանա մարդկության պատմության մեջ, աննախընթաց չափով կմեծացնի սոցիալիզմի ձգողական ուժը և մահացու հարված կհասցնի համաշխարհային կոմունիստական շարժման առավել պնդաճակատ ընդդիմախոսներին, նրանցից խլելով կապիտալիզմի պաշտպանության վերջին փաստարկը։

Համաշխարհային կոմունիստական շարժման մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժը դառնալու հարցում ոչ մի գործոն այնքան մեծ դեր չի խաղացել, որքան սոցիալիստական սիստեմի երկրների սոցիալ-տնտեսական և քաղաքական նվաճումները։ Սակայն սոցիալիզմի ձգողական, ազդեցիկ մեծ ուժի պատճառը պետք է փնտրել ոչ միայն նրա նվաճումների, այլև սոցիալիստական երկրների փոխադարձ կապերի և փոխհարաբերությունների բնույթի մեջ։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը սուվերեն երկրների ազգային տնտեսությունների մի ամբողջություն է, որն իր գործունեությամբ ստեղծել է արտադրության մասնագիտացման, կոոպերացման և աշխատանքի միջազգային բաժանման նոր ձևեր։

Սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությունը նպատակ ունի վերացնել նրանց մակարդակների միջև պատմականորեն գոյացած տարբերությունները և հնարավոր դարձնել նրանց ավելի կամ պակաս չափով միաժամանակյա անցումը կոմունիզմին։ Այդ խնդրի լուծումը իմպերիալիզմի կողմից տնտեսական ու կուլտուրական հետամնացության դատապարտված ժողովուրդներին ցույց է տալիս զարգացման կոմունիստական ուղու արդյունավետությունը։

Սոցիալիստական սիստեմի երկրների նվաճումները և նրանց տնտեսական ու կուլտուրական զարգացման առաջ բացվող անեզր հորիզոններն անսպառ կենսահյութով են լցնում համաշխարհային կոմունիստական շարժումը և անընդհատ ընդլայնում նրա ազդեցության ոլորտը։ Ոչ մի պատնեշ, ոչ մի արգելք չի կարող կասեցնել այդ շարժման հաղթական երթը։

Հայտարարության մեջ ցույց է տրված, որ այժմ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի ընդհանուր հոսանքի մեջ միախառնվում են արդիականության այնպիսի մեծ ուժեր, ինչպիսիք են սոցիալիզմ կառուցող ժողովուրդները, կապիտալիստական երկրների ռևոլյուցիոն բանվոր դասակարգը, ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական և համադեմոկրատական շարժումը։ Այս ուժերը գտնվում են ակտիվ փոխներգործության մեջ։

Ազգային-ազատագրական շարժումը դարձել է մեր ժամանակի սոցիալական առաջադիմության և խաղաղության ամրապնդման կարևոր գործոններից մեկը։ Գաղութակալությունն այժմ ներկայացնում է փոթորկոտ օվկիանոսում անօգնական կերպով դեգերող մի նավ, որի կողերին բազմաթիվ ճեղքվածքներ են բացվել։ Այդ ճեղքվածքներից ներհոսում է ջուրը՝ սպառնալով խորտակել նավը։ Իմպերիալիստները՝ նավաբեկության սպառնալիքից դիվահար նավաստիների պես ամեն կերպ փորձում են փակել այդ ճեղքվածքները և փրկել նավը խորտակվելուց։ Սակայն նրանց ջանքերն ապարդյուն են։ Ազատագրական շարժման փրփրաբաշ ալիքները հարաճուն ցասումով հարվածում են խորտակվող նավին և նորանոր ճեղքվածքներ բացում նրա կողերին։



Իմպերիալիզմի գաղութակալության նավը վերահաս կործանումից անկարող է փրկել նույնիսկ այն հանգամանքը, որ նավապետի կամրջակին կանգնած է այնպիսի փորձված ու նենգ միջազգային ժանդարմ, ինչպիսին է ամերիկյան իմպերիալիզմը։

Իմպերիալիզմի գաղութային սիստեմի կործանումն իր պատմական նշանակությամբ երկրորդ երևույթն է՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումից հետո։

«Բուրժուական և ռևիզիոնիստական քաղաքագետներն ասում են,— գրում է Ն. Ս. Խրուշչովը,— թե ազգային-ազատագրական շարժումը զարգանում է, իբր թե սոցիալիզմի համար բանվոր դասակարգի մղած պայքարից, սոցիալիստական պետությունների աջակցությունից անկախ, թե նախկին գաղութային երկրների ժողովուրդներին ազատությունը գաղութատերերն են պարգևում։ Նման հերյուրանքներն այն բանի համար են հորինվում, որպեսզի երիտասարդ անկախ պետությունները մեկուսացվեն սոցիալիստական լագերից, որպեսզի ապացուցեն, թե նրանք միջազգային ասպարեզում պետք է, իբր ինչոր «երրորդ ուժի» դեր խաղան, և ոչ թե հանդես գան իմպերիալիզմի դեմ»։

Պատմության փորձն ապացուցում է, որ առանց սոցիալիզմի հաստատման անհնարին կլիներ գաղութակալության սիստեմի կործանումը։ Վ. Ի. Լենինը համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի և ազգային-ազատագրական շարժման զարգացումը դիտում էր որպես միասնական պրոցես։

Քաղաքական անկախության հասած ժողովուրդներն օգտվում են սոցիալիստական պետությունների բազմակողմանի աջակցությունից, որը հնարավորություն է տալիս հաջողությամբ դիմագրելու նրանց ստրկացնելու իմպերիալիստական փորձերին։ Այդ օգնության անկաշառ բնույթը միջազգային կոմունիստական շարժման համար միլիոնավոր համախոհներ է շահում ազատագրական երկրներում։

Ազատագրված երկրներում աճում և ամրապնդվում են այն ուժերը, որոնք հանդես են գալիս զարգացման սոցիալիստական ուղու օգտին։

Գաղութակալության լուծը թոթափած երկրներում ձգտումը դեպի սոցիալիզմ այն աստիճան ակնբախ է, որ պետության ղեկի մոտ կանգնած ազգային բուրժուազիայի ներկայացուցիչներն իրենց դիրքերն ամրապնդելու նպատակով զբաղվում են սոցիալիստական ֆրազաբանությամբ։ Թաքնվելով սոցիալիզմի դիմակի տակ, նրանք գաղափարական և ոստիկանական արշավանք են կազմակերպում կոմունիստների և առաջադեմ գործիչների դեմ, որոնք պայքարում են զարգացման իսկապես սոցիալիստական ուղու համար։ Պատահական չէ, որ սոցիալիզմի թշնամիները հավանության բացականչություններով և ծափահարություններով են դիմավորում իրենց «սոցիալիզմի կողմնակիցներ» ազդարարող այդ կարգի ազգային գործիչների հակակոմունիստական ակտերը։

Կոմունիստները, պաշտպանելով ազգային կառավարությունների ընդհանուր դեմոկրատական միջոցառումները, աշխատավորական մասսաներին պարզաբանում են, որ ազգային բուրժուազիայի՝ սոցիալիզմի գույնով գունազարդված գործիչների տեսական մարզանքները ոչնչով նման չեն գիտական կոմունիզմի ուսմունքին։

Սոցիալիզմի համար մարտնչող ուժերի և ազգային-ազատագրական ուժերի պայքարն ընդհանուր թշնամու՝ միջազգային իմպերիալիզմի դեմ, միաձուլում է պայքարի ազգային և սոցիալական խնդիրները մի ընդհանուր ռևո-

լյուցիոն հոսանքի մեջ՝ ինչպես առանձին երկրներում, այնպես էլ միջազգային մասշտաբով։ Այս իրողությունը համաշխարհային կոմունիստական շարժումը դարձնում է ամենաազդեցիկ քաղաքական ուժը ազգային-ազատագրական ռևոլյուցիաներում։

***

Կոմունիստները մեր ժամանակի հարցերի հարցը համարում են պայքարը ընդհանուր խաղաղության համար։ Խաղաղության պայքարի առաջամարտիկի դերը խիստ մեծացրել է համաշխարհային կոմունիստական շարժման նշանակությունը մեր օրերում։

Ընդհանուր խաղաղության պահպանման գործում վճռական դեր կխաղա ընդհանուր և լրիվ զինաթափման սովետական ծրագրի իրագործումը, որի առաջադրումը առանձին հստակությամբ ցույց է տալիս կոմունիստական գաղափարախոսության մարդասիրական բնույթը։

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունը, մանրամասն մշակելով համաշխարհային կոմունիստական շարժման խնդիրները խաղաղության ամրապնդման գործում, ընդգծեց. «Կոմունիստները իրենց պատմական միսիան են համարում ոչ միայն այն, որ համաշխարհային մասշտաբով վերացնեն շահագործումն ու աղքատությունը և մարդկային հասարակարգի կյանքից ընդմիշտ բացառեն ամեն մի պատերազմի հնարավորություն, այլև արդեն ներկա դարաշրջանում մարդկությունը փրկեն համաշխարհային նոր պատերազմի մղձավանջից։ Բոլոր երկրների կոմունիստական պարտիաները պատմական այս մեծ միսիայի իրագործմանը կնվիրեն իրենց բոլոր ուժերն ու եռանդը» (*Հայտարարություն, էջ 41*)։

Այսպիսով, խորհրդակցությունը նորից հաստատեց ՍՄԿՊ XX համագումարի հայտնի դրույթն այն մասին, որ մինչև սոցիալիզմի լիակատար հաղթանակն ամբողջ աշխարհում, ռեալ հնարավորություններ կան համաշխարհային պատերազմը մարդկության կյանքից իսպառ բացառելու համար։ Այս տեսակետն ամենևին չի հակասում լենինիզմի այն դրույթին, որ պատերազմ ծնող պատճառները կլինեն, քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը։ Բանն այն է, որ սանձահարվեն իմպերիալիզմի պատերազմ հրահրելու ավանտյուրիստական ձգտումները։ Իսկ դրա համար անհրաժեշտ է ամենօրյա պայքարում միավորել համաշխարհային սոցիալիստական լագերի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման, պատերազմի դեմ հանդես եկող բոլոր ուժերը։ Այդ դժվարին, բայց վեհ գործը գլխավորում են կոմունիստները։

Կոմունիստական և բանվորական պարտիաները ամենուրեք հանդես են գալիս որպես խաղաղության դրոշակակիրներ։ Սոցիալիստական լագերի երկրներում, որտեղ նրանք ներկայացնում են պրոլետարիատի դիկտատուրայի գլխավոր ղեկավար ուժը, նրանց գործունեությունը հօգուտ խաղաղության արտահայտվում է պետական իշխանության արտաքին քաղաքական ակտերում։ Մյուս երկրներում կոմունիստները գլխավորում են աշխատավորների և բոլոր բարի կամքի տեր մարդկանց մասսայական գործողությունները՝ ուղղված խաղաղության պահպանմանն ու ամրապնդմանը։

Կասկածից դուրս է, որ իմպերիալիզմը նոր համաշխարհային պատերազմ



սանձազերծելով կարագացներ իր վերջնական կործանումը։ Բայց կոմունիստները դեմ են պատերազմին, որովհետև գիտեն, որ նրանից ամենից շատ տուժում են աշխատավորները և նրանց ավանգարդը՝ բանվոր դասակարգը։ Կոմունիստները համոզված են, որ սոցիալիզմի հաղթանակը կապիտալիզմի դեմ ապահովված է խաղաղ տնտեսական մրցության մեջ։ Այդ պատճառով նրանք հանդիսանում են տարբեր սոցիալ-տնտեսական սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության ակտիվ պրոպագանդիստները։

Բոլոր բարի կամքի մարդիկ ողջունեցին կոմունիստների ներկայացուցիչների խորհրդակցության փաստաթղթերը, որովհետև նրանք ներթափանցված են մարդկության ճակատագրի, խաղաղության ճակատագրի նկատմամբ խոր մտահոգությամբ։

Մինչև իսկ բուրժուական մամուլը անկարող եղավ լռության մատնել խաղաղության այն կրքոտ կոչը, որով սկզբից մինչև վերջ տոգորված են այդ պատմական փաստաթղթերը։ «Կարմիրների մանիֆեստը պաշտպանում է գոյակցության սովետական գիծը»,— հայտարարում էր «Նյու-Յորք թայմս»-ը։ «Խաղաղության համաշխարհային կոչ, պատերազմի բացառում, թեկուզ և գոյություն ունի կապիտալիզմը»,— գրում էր լոնդոնյան «Թայմսը»։ Բուրժուական մամուլի շատ օրգաններ եզրակացնում էին, որ Մոսկվայի խորհրդակցության արդյունքները նոր բանակցությունների հնարավորություններ են ստեղծում Արևելքի և Արևմուտքի միջև։

Մոսկվայի խորհրդակցությունը ցույց տվեց, որ արդիականության բոլոր կարևոր հարցերում համաշխարհային կոմունիստական շարժման ներսում գոյություն ունի կուռ միասնություն։

Խորհրդակցության կարևորագույն արդյունքներից մեկն այն է, որ այն էլ ավելի համախմբեց սոցիալիստական լագերը՝ Սովետական Միության գլխավորությամբ։ Միջազգային կոմունիստական շարժման և սոցիալիստական լագերի հետագա հզորացման կարևորագույն գրավականը երկու խոշորագույն կոմունիստական պարտիաների՝ ՍՄԿՊ և Չինաստանի կոմպարտիայի և երկու խոշորագույն սոցիալիստական տերությունների՝ ՍՍՌՄ-ի և ՉԺՌ-ի բարեկամության և միասնության ամրապնդումն է։ Այժմ կարելի է գոհունակությամբ նշել, որ հակառակ համաշխարհային կոմունիստական շարժման թշնամիների ակնկալությունների, Մոսկվայի խորհրդակցությունը հանդիսացավ այդ բարեկամությունը և միասնությունը ցեմենտող մի նոր էտապ։ Այն մի նոր աստիճանի բարձրացրեց համաշխարհային կոմունիստական շարժման միասնությունն ու համախմբվածությունը։ Աշխարհում ոչ մի քաղաքական ուժ և ոչ մի շարժում իր շարքերի, նպատակների ու ձգտումների միասնությամբ չի կարող չափվել կոմունիստական շարժման հետ։

Համաշխարհային կոմունիստական շարժումը մեր օրերի ամենաազդեցիկ քաղաքական ուժն է, որովհետև նրա կողմն է Սովետական Միության և ողջ սոցիալիստական լագերի անխորտակելի հզորությունը, որովհետև իր միասնական և ամրակուռ շարքերով նա ընթանում է խաղաղության, դեմոկրատիայի, ազգային-ազատագրության և սոցիալիզմի համար մղվող պայքարի առջևից։

---







# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՆ ԵՎ ՍԵՎԱՆԱ ԼՃԻ ԱՊԱԳԱՆ


## *Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ*

Հայկ. ՍՍՌ Մինիստրների Սովետի նախագահի առաջին տեղակալ


*Ամեն մի երկրի, տնտեսական ամեն մի շրջանի տնտեսության զարգացման համար կարևոր նշանակություն ունի էներգետիկան։ Չունենալով հանքային վառելիքի տեղական աղբյուրներ, նախառևոլյուցիոն Հայաստանը չնչին քանակությամբ էլեկտրաէներգիա էր արտադրում։ Սովետական իշխանության հաստատումից հետո անցած 40 տարում Հայկական ՍՍՌ-ում ստեղծված է հզոր էներգետիկ բազա։ Այժմ մեզ մոտ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան արտադրվում էր ամբողջ ցարական Ռուսաստանում 1913 թվականին։*

*Ներկայումս ժողովրդական տնտեսության մեջ սպառվող ամբողջ էլեկտրաէներգիան արտադրում են հիդրոէլեկտրակայանները, որոնց մեջ առաջատար տեղ է գրավում Սևան—Հրազդան կասկադը։*

*Ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների յոթնամյա պլանով նախատեսված է Հայկական ՍՍՌ էներգետիկայի հետագա զարգացման մի վիթխարի ծրագիր։ Նոր կարողությունների գործարկման և էլեկտրաէներգիայի մատակարարման գործը բարելավելու հետ մեկտեղ լուրջ փոփոխություններ տեղի կունենան էլեկտրաէներգիայի ստացման աղբյուրների մեջ։ Յոթնամյա պլանով նախատեսվում է ավարտել Սևան—Հրազդան կասկադի վերջին երկու աստիճանների՝ Աթարբեկյանի և Երևանի հիդրոէլեկտրակայանների կառուցումը, Որոտան գետի վրա սկսել Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը. Երևան, Կիրովական և Հրազդան քաղաքներում կառուցել գազով աշխատող ջերմաէլեկտրակայաններ, ինչպես և կառուցել Աղստաֆա-Հայկական էներգոսիստեմ էլեկտրահաղորդման բարձրավոլտ գիծը, որով մեր ռեսպուբլիկան էլեկտրաէներգիա կստանա Ադրբեջանական ՍՍՌ-ից։*

*Այդ ծրագրի մեջ կարևոր տեղ են գրավում ջերմաէլեկտրացենտրալները, որոնք նախատեսված են ինչպես էլեկտրաէներգիա արտադրելու, այնպես էլ արդյունաբերական ձեռնարկությունները գոլորշիով ապահովելու համար։ Յոթնամյակի վերջում ռեսպուբլիկայում արտադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի ավելի քան 60 տոկոսը կտան բնական գազով աշխատող ջերմաէլեկտրակայանները։*



*Նախատեսված պլանների կենսագործմամբ 1965 թվականին ռեսպուբլի-
կայի էլեկտրակայանների սահմանված կարողությունը, 1958 թվականի հա-
մեմատությամբ, կավելանա մոտ 2 անգամ, կսպառվի 80 տոկոսով ավելի
էլեկտրաէներգիա, ներառյալ նաև դրսից ստացվողը։*

*Պետք է գոհունակությամբ նշել, որ Հայաստանի ջերմաէներգետիկ բա-
զայի զարգացման պլանը հաջողությամբ է կենսագործվում, և յոթնամյակի
առաջին երկու տարում արդեն ձեռք են բերվել մեծ հաջողություններ։ 1959
թվականին շահագործման հանձնվեց Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանը,
իսկ ընթացիկ տարվա առաջին եռամսյակում շահագործման կհանձնվի Երևա-
նի հիդրոէլեկտրակայանը, որը Սևան—Հրազդան կասկադի էլեկտրակայաննե-
րի վերջին աստիճանն է։ 1960 թվականին սկսվել և մեծ թափով ծավալվում է
ջերմաէլեկտրացենտրալների շինարարությունը Երևանում և Կիրովականում։
Աղստաֆա-Հայկական էներգոսիստեմ էլեկտրահաղորդման բարձրավոլտ
գծի կառուցումը ավարտվեց 1960 թվականի երկրորդ կիսամյակում. դրանով
ավարտվեցին Անդրկովկասյան միասնական էներգետիկ սիստեմի ստեղծման
աշխատանքները։*

*Հայկական ՍՍՌ ջերմաէներգետիկ բազայի և ամբողջ էկոնոմիկայի զար-
գացման գործում մեծ իրադարձություն հանդիսացավ Ղարադաղ—Աղստա-
ֆա—Երևան գազամուղի կառուցումը, որը շահագործման հանձնվեց 1960
թվականի սկզբներին։ Եղբայրական Ադրբեջանից ստացվող բնական գազն
առայժմ օգտագործվում է որպես վառելիք արդյունաբերության և կոմունալ-
կենցաղային տնտեսության մեջ, իսկ մոտ ապագայում այն կօգտագործվի կա-
ռուցվող ջերմաէլեկտրացենտրալների կողմից էլեկտրաէներգիա և գոլորշի ար-
տադրելու համար, իսկ քիմիական արդյունաբերության մեջ՝ որպես սինթետիկ
կաուչուկի, արհեստական մետաքսի և բազմաթիվ այլ արժեքավոր պրոդուկտ-
ների արտադրության համար անհրաժեշտ էժան տեխնոլոգիական հումք։*

*Պատրաստված է Որոտան գետի վրա Տաթևի հիդրոէլեկտրակայանի կա-
ռուցման նախագծա-նախահաշվային դոկումենտացիան, որի կառուցումը նա-
խատեսվում է սկսել այս տարում։ Տաթևի հիդրոէլեկտրակայանն իր կարողու-
թյամբ ռեսպուբլիկայում կլինի երկրորդը՝ Գյումուշի հիդրոէլեկտրակայանից
հետո։ Այն աչքի կընկնի էներգետիկ և տնտեսական բարձր ցուցանիշներով։*

*Որոտան գետն իր հզորությամբ մեր ռեսպուբլիկայի երկրորդ ջրաէներգե-
տիկ աղբյուրն է՝ Սևան—Հրազդան սիստեմից հետո։ Նրա երկարությունը
հասնում է 194 կիլոմետրի, որից 127-ն անցնում է Հայաստանի և 67-ը՝ Ադրբ-
բեջանի տերիտորիայով։ Գետը հոսում է մեծ թեքություններով. ակունքից
սկսած մինչև գետաբերանը նրա ընդհանուր անկումը կազմում է 2775 մետր։
Որոտան գետի կոմպլեքսային իռիգացիոն-էներգետիկ օգտագործման սխեմա-
յով նախատեսվում է կառուցել 7 հիդրոէլեկտրակայանից բաղկացած մի կաս-
կադ՝ մոտ 400 հազար կիլովատ հզորությամբ և տարեկան ավելի քան 1,5 մի-
լիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրական կարողությամբ. դրա
հետ միասին լիովին բավարարվելու է երկու ռեսպուբլիկաների ոռոգման պա-
հանջը այդ գետի ավազանում։ Որոտանի վրա ստեղծվելու են չորս ջրամբար-
ներ, որոնք մեծ չափով կբարձրացնեն կասկադի կարգավորող ունակությունը։
Կասկադը Հայկական էներգոսիստեմի համար առանձնապես մեծ նշանակու-
թյուն կունենա Սևանա լճի ջրերի բացթողումը կրճատելու, ինչպես նաև այն*

տեսակետից, որ գտնվում է Զանգեզուրի խոշոր լեռնահանքային ձեռնարկությունների շրջանում։

Կասկադի յոթ էլեկտրակայաններից չորսը՝ Սպանդարյանինը, Անգեղակոթինը, Շամբինը և Տաթևինը, որոնք տալու են կասկադում արտադրվող էլեկտրաէներգիայի 75 տոկոսը, կառուցելու են Հայաստանի տերիտորիայում, իսկ մնացած երեք կայանները՝ Գելշինի, Բախտիրյարլիի և Գիլիջանի հիդրոէլեկտրակայանները՝ Ադրբեջանում։ Տաթևինը Որոտանի կասկադի ամենաբարձր ճնշում և հզորություն ունեցող էլեկտրակայանն է լինելու։ Այդ կայանն օգտագործելու է Որոտան գետի 31 կիլոմետրի վրա եղած անկումը։ Նրա ճնշման բարձրությունը հավասար կլինի 568 մետրի։ Որոտանի կասկադի էլեկտրաէներգիայի տարեկան ընդհանուր արտադրանքի մոտ 45 տոկոսը բաժին է ընկնելու Տաթևի հիդրոէլեկտրակայանին։

Սովետական Հայաստանի էներգետիկան 1965 թվականից հետո զարգանալու է ինչպես ջրային ռեսուրսների օգտագործման, այնպես էլ, գլխավորապես, էժան բնական գազի օգտագործման ճանապարհով։ Նախնական հաշվարկումների համաձայն նախատեսվում է ընդարձակել հին էլեկտրակայանները և կառուցել բնական գազով աշխատող նոր էլեկտրակայաններ ու ջերմաէլեկտրացենտրալներ՝ Երևանում, Կիրովականում, Հրազդանում, Լենինականում և Սևանում։ Մի շարք հիդրոէլեկտրակայաններ կկառուցվեն նաև Որոտան և Դեբեդ գետերի վրա։

Սևան—Հրազդան կասկադից բացի խոշոր էներգետիկ հզորություն ունեցող բազմաթիվ նոր հիդրոէլեկտրակայանների կառուցումը, էլեկտրաէներգիայի նոր աղբյուրների ստեղծումը, ինչպես նաև ոռոգման համար ջրային նոր ռեսուրսների հայտաբերումը հնարավորություն են ընձեռում նոր ձևով լուծելու Սևանի պրոբլեմը։

Հաշվի առնելով այն մեծ հետաքրքրությունը, որ հասարակայնության լայն շրջանները ցուցաբերում են այդ պրոբլեմի նկատմամբ, անհրաժեշտ ենք համարում փոքր-ինչ ավելի հանգամանորեն անդրադառնալ ժողովրդական տնտեսության զարգացման համար Սևանա լճի ջրերի կոմպլեքսային օգտագործման հարցին, ինչպես նաև այն միջոցառումներին, որոնք իրագործվում են լճի մակերեսը բարձր մակարդակի վրա պահելու համար։

Սևանն իր անկրկնելի գեղեցկությամբ աշխարհի խոշորագույն բարձր լեռնային լճերից մեկն է։ Այն գտնվում է ծովի մակերևույթից 1916 մետր բարձրության վրա։ Սևանա լճի ջրերը բաց թողնելուց առաջ նրա մակերեսը կազմում էր 1416 քառակուսի կիլոմետր, ընդ որում՝ մեծ Սևանինը 1032 քառակուսի կիլոմետր՝ մինչև 50 մետր խորությամբ և փոքր Սևանինը՝ 384 քառակուսի կիլոմետր, 100 մետր առավելագույն խորությամբ։ Լճի ջրի պաշարները կազմում էին 58,5 միլիարդ խորանարդ մետր, ջրահավաք ավազանի տարածությունը՝ մոտ 4900 քառակուսի կիլոմետր։ Լճի մեջ թափվում են 28 գետ, իսկ նրանից սկիզբ է առնում միայն Հրազդան գետը, որը հոսում է Երևան քաղաքով, հասնում Արարատյան հովիտը և թափվում է Արաքս գետը։

Սևանա լճի ծագումը կապվում է տեկտոնական շարժումների, ինչպես նաև երիտասարդ հրաբուխների գործողության հետ, որոնք լավայե պատնեշներ են ստեղծել Սևան քաղաքի մոտ։ Սևանա լճի մակարդակի իջեցման հետևանքով ջրի տակից գետնի երես դուրս եկած հնադարյան բնակավայրերը,



որոնք պատկանում են ուրարտական շրջանին—մեր թվագրությունից առաջ 7—8-րդ դարերին, վկայում են, որ Սևանի ջրերի ներկա մակարդակը շատ ավելի ուշ է գոյացել։

Բնական ռեժիմի պայմաններում Սևանա լճի ջրերի բալանսը ներկայացնում էր հետևյալ պատկերը. (միլիոն խորանարդ մետրերով, տարեկան)

| ՄՈՒՏՔԸ | | ԵԼՔԸ | |
|---|---|---|---|
| Լճի մեջ թափվող ջրերը . . . . . | 770 | Լճի մակերեսից գոլորշիացող ջրեր . | 1212 |
| Տեղումները լճի մակերեսին . . . . | 552 | Լճի տակից արտահոսող ջրեր . . . | 60 |
| | | Մակերեսից Հրազդան գետով արտահոսող ջրեր . . . . . . . . . | 50 |
| Ընդամենը՝ | 1322 | | 1322 |

Այսպիսով, ամեն տարի Սևանա լճի մակերեսից գոլորշիանում էր ավելի քան մեկ միլիարդ երկու հարյուր խորանարդ մետր ջուր։ Մինչդեռ այդքան ջրով կարելի էր ջրել և ծաղկուն տարածությունների վերածել Սևանի մակարդակից մոտավորապես 1000 մետր ցածր գտնվող Արարատյան հովտի մոտ 200 հազար հեկտար արգավանդ հողեր. միաժամանակ կարելի էր օգտագործել ջրերի անկման ուժը էլեկտրաէներգիայի արտադրության համար, կառուցելով հիդրոէլեկտրակայանների մի ամբողջ կասկադ։ Այսպիսով, Սևանի պրոբլեմի հիդրոլոգիական էությունն այն է, որ լճի մակերեսի կրճատման միջոցով պակասեցվի մակերեսից գոլորշիացող ջրերի քանակը և ստացվող ջրերը օգտագործվեն հողերի ոռոգման և էլեկտրաէներգիայի արտադրության համար։

ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի, հատուկ գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտների երկարամյա, մանրամասն և բազմակողմանի գիտական հետազոտությունների հիման վրա կազմվեցին Սևանա լճի ջրերի կոմպլեքսային օգտագործման մի շարք սխեմաներ՝ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման համար։ Այն սխեման, որն ընդունվեց և որով կատարվեց հիդրոէլեկտրակայանների ու ջրատնտեսական կառուցվածքների շինարարությունը, նախատեսում էր լճի ջրերի մակարդակն իջեցնել 50 մետրով, մակերեսը կրճատել գրեթե 7 անգամ, այն հասցնելով 238 քառակուսի կիլոմետրի։ Այդ նշանակում էր լիովին չորացնել մեծ Սևանը և փոքրացնել փոքր Սևանը։ Լճի բնական ռեժիմի այդպիսի էական խախտումը պետք է հանգեցներ նրա ջրային բալանսի խիստ փոփոխման, որն ապագայում՝ Սևանի լճի նոր, կայուն դրության պայմաններում, կներկայացներ հետևյալ պատկերը. (միլիոն խորանարդ մետրերով, տարեկան)

| ՄՈՒՏՔԸ | | ԵԼՔԸ | |
|---|---|---|---|
| Լճի մեջ հոսող ջրեր . . . . . . | 816 | Ջրերի գոլորշիացումը լճի մակերեսից . | 215 |
| Տեղումներ լճի մակերեսին . . . . | 96 | Լճից Հրազդան գետով հոսող ջրեր . . | 697 |
| Ընդամենը՝ | 912 | | 912 |

Ինչպես երևում է աղյուսակից, լճի նոր ռեժիմի դեպքում լճից Հրազդան գետով արտահոսող ջրերի քանակը կավելանա և տարեկան կկազմի 697 միլիոն խորանարդ մետր այն ժամանակ, երբ Սևանի բնական վիճակում այն կազմում էր 50 միլիոն խորանարդ մետր։

Սևանա լճի բնական դիրքի խախտումից հետո, նրա կյանքում, ըստ սխեմայի, կլինի երկու շրջան. առաջին՝ ջրադատարկման, որի ընթացքում օգտագործվելու են լճի ջրերը, և աստիճանաբար իջնելու է լճի մակարդակը, երկրորդ՝ նոր հավասարակշիռ շրջան, որը հաջորդելու է ջրադատարկման շրջանին, և երբ Սևանից բաց կթողնվի այնքան ջուր, որքան ստացվում է տարեկան։

Քանի որ ոռոգումը հիմնված պետք է լինի միայն մշտական ջրի վրա, ապա ոռոգման զարգացումը սխեմայով նախատեսվում է ոչ թե ըստ առաջին շրջանի պայմանների, երբ ամեն տարի լճից կարելի կլինի բաց թողնել ցանկացած քանակությամբ ջուր, այլ հնարավորին չափ ըստ երկրորդ շրջանի։ Ուստի, ոռոգման տարածությունը սահմանված է մոտ 100 հազար հեկտարի չափով։ Այսպիսով, երկրորդ շրջանում լճի ջուրը բաց է թողնվելու միայն իրիգացիոն գրաֆիկով, որը մինչ այդ անցնելու է կասկադի էլեկտրակայաններով՝ էլեկտրաէներգիայի արտադրության համար։

Ինչ վերաբերում է առաջին շրջանում լճից բաց թողնվող ջրերի քանակին, ապա այն որոշվում է ոչ թե ըստ ոռոգման պահանջի, այլ ելնելով ժողովրդական տնտեսության՝ էլեկտրաէներգիայի կարիքներից և, իհարկե, իր ծավալով զգալի չափով գերազանցում է իրիգացիայի համար պահանջվող ջրերի քանակը։

Ելնելով հիդրոէլեկտրակայանների կասկադի շինարարության ու հիդրոէլեկտրակայանների ամորտիզացիայի ժամկետներից, ժողովրդական տնտեսության էլեկտրաէներգիայի պահանջից և մի շարք այլ գործոններից, տնտեսապես առավել նպատակահարմար են գտել լճից տարեկան բաց թողնել 1200 միլիոն խորանարդ մետր ջուր։ Այդ հաշվով առաջին շրջանի տևողությունը (այսինքն՝ լճի ջրերի պաշարների դատարկման շրջանի տևողությունը, երբ պաշարները կկրճատվեն և 58,5 միլիարդից կհասցվեն 2,8 միլիարդ խորանարդ մետրի) սխեմայով սահմանված է մոտավորապես 50 տարի։ Սխեման նախատեսում էր կառուցել հիդրոէլեկտրակայանների 8 աստիճանանոց կասկադ և մի շարք ոռոգման ջրանցքներ։

Սևանա լճի և Հրազդան գետի ջրերի կոմպլեքսային օգտագործումը սկըսվեց 1929 թվականից՝ ոռոգման սիստեմների կառուցմամբ։ Սևանի ջրերի առաջին բացթողումներն սկսվեցին 1933 թվականից։ 1936 թվականին շահագործման հանձնվեց կասկադի առաջին հիդրոէլեկտրակայանը՝ Քանաքեռգէսը։ Այդ ժամանակվանից էլ մինչև մեր օրերը շարունակվում է Սևան—Հրազդան իրիգացիոն—էներգետիկ սիստեմի էլեկտրակայանների և ջրատնտեսական կառուցվածքների շինարարությունը։ Հերթով կառուցվեցին և շահագործման հանձնվեցին Սևանի հիդրոէլեկտրակայանը (1949 թ.), Գյումուշգէսը (1953 թ.), Արզնիգէսը (1956 թ.), Աթարբեկյանգէսը (1959 թ.)։ Շուտով շահագործման կհանձնվի նաև Երևանի հիդրոէլեկտրակայանը։

Ոռոգման կարևորագույն օբյեկտներից կառուցվել և շահագործման են հանձնվել Ստալինի անվան, Ստորին-Հրազդանի, Նորքի, Ստորին-Դալմայի, Ալափարսի ջրանցքները և այլն։ Այժմ կառուցվում և մասամբ շահագործման են հանձնված Արզնի—Շամիրամի և Կոտայքի ջրանցքները։ Դրանց կառուցումը լրիվին ավարտելուց հետո Սևան—Հրազդան սիստեմի ջրերով ոռոգվող հողերի տարածությունը կավելանա՝ 50 հազարից հասնելով 78 հազար



հեկտարի։ Արդեն այժմ այդ հողերում մշակվում և բարձր բերք են տալիս խաղողի և պտղատու այգիները, բամբակը, ծխախոտը, խորդենին, բանջարեղենը, զանազան կերաբույսեր և այլ կուլտուրաներ։

Սևանա լճի մակարդակը, 1961 թվականի հունվարի 1-ի դրությամբ, իջել է 13,5 մետրով։ Օգտագործվել է մոտ 18,3 միլիարդ խորանարդ մետր ջուր, լճի մակերեսը կրճատվել է 123 քառակուսի կիլոմետրով և այժմ կազմում է 1293 քառակուսի կիլոմետր։

Սևանա լճի և Հրազդան գետի ջրերի կոմպլեքսային օգտագործումը բացառիկ կարևոր, վճռական նշանակություն ունեցավ Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման համար։ Հայկական ՍՍՌ-ի պայմաններում, որը մինչև վերջերս չուներ վառելիքի—էներգետիկայի այլ աղբյուրներ, կարճ ժամանակամիջոցում էներգետիկ բազայի ստեղծումը և դրա հետ միասին արգավանդ հողերի ոռոգումը հնարավորություն տվին զարգացնելու արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը, ավելի բարեկեցիկ դարձնելու ժողովրդի կյանքը։

Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրության մակարդակով Սովետական Հայաստանը առաջ է անցել կապիտալիստական մի շարք զարգացած երկրներից և դարձել համատարած էլեկտրիֆիկացման երկիր։ Էլեկտրաէներգիայի շնորհիվ մեզ մոտ բուռն զարգացում են ապրում գունավոր մետալուրգիան և քիմիական արդյունաբերությունը, իսկ վերջերս՝ նաև էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, սարքաշինությունը և հաստոցաշինությունը։

Գյուղատնտեսությունը ջրով ապահովելը սննդի և թեթև արդյունաբերության տվեց հումքի հարուստ բազա, որի շնորհիվ լայնորեն զարգացան գինեգործությունը, կոնյակի և եթերայուղի արտադրությունը, պահածոների, ծխախոտի և տեքստիլ արդյունաբերությունը։

Հազար ինը հարյուր վաթսուն թվականին, երբ լրացավ Սովետական Հայաստանի գոյության 40 տարին, արդյունաբերական արտադրանքի ծավալը 1913 թվականի մակարդակը գերազանցեց 70 անգամ։ Հայկական ՍՍՌ արդյունաբերության բազմաճյուղ բնույթը և զարգացման բարձր մակարդակը պայմանավորում են Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների և տընտեսական շրջանների հետ ունեցած նրա տնտեսական սերտ կապերը։ Մոտիկ անցյալում տնտեսապես հետամնաց Հայաստանը այժմ արդյունաբերական արտադրանքի բազմաթիվ ու բազմապիսի տեսակներ է արտահանում արտասահմանյան տասնյակ երկրներ։

Սևանա լիճը, նրա ջրային ռեսուրսների օգտագործումը մեր օրերում էլ կարևոր, վճռական գործոն են Սովետական Հայաստանի տնտեսության զարգացման համար։ Ներկայումս Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանները տալիս են ռեսպուբլիկայում արտադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի մոտ 90 տոկոսը։ Սովետական իշխանության տարիներին ոռոգելի դարձած հողերի 40 տոկոսին և յոթնամյա պլանով ոռոգման ենթակա հողերի 47 տոկոսին ջուր է մատակարարում Սևան—Հրազդան ոռոգիչ սիստեմը։

Սևանա լճի ջրերի ռացիոնալ օգտագործումը եղել է և այժմ հանդիսանում է պարտիայի և կառավարության հատուկ հոգատարության առարկան։ Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիս-

տըրների Սովետը հետևողականորեն իրագործում են մի շարք միջոցառումներ, որոնց նպատակն է բարձրացնել այդ ջրերի օգտագործման տնտեսական արդյունավետությունը և հնարավորին չափ բարձր պահել լճի մակարդակը։

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության էներգետիկ բազայի վերաբերյալ 1958 թվականին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ընդունած որոշումը ո՛չ միայն ապահովում է ռեսպուբլիկայի էներգետիկայի նոր հուժկու զարգացումը, այլև նոր բովանդակություն է տալիս Սևանի պրոբլեմին։ Էլեկտրաէներգիայի վերոհիշյալ նոր հզոր աղբյուրների շնորհիվ հնարավոր է դառնում 1965 թվականից կրճատել և տարեկան 120 միլիոն խորանարդ մետրի հասցընել միայն էներգետիկայի համար բաց թողնվող ջրերի քանակը և հիմնականում անցնել ոռոգացիոն գրաֆիկին, այսինքն՝ Սևանա լճից բաց թողնել այնքան ջուր, որքան հարկավոր է հողերի ոռոգման համար, նախապես օգտագործելով այդ ջրերը հիդրոէլեկտրակայանների կասկադում։ Այդ նշանակում է, որ յոթնամյակի վերջում խիստ կրճատվելու է յուրաքանչյուր տարի լճից բաց թողնվող ջրերի քանակը. այն հասցվելու է 500 միլիոն խորանարդ մետրի, ներառյալ նաև այն 120 միլիոն խորանարդ մետրը, որ բաց է թողնվելու էներգետիկ նպատակներով։ Հենց միայն այս միջոցառումը վճռական նշանակություն ունի Սևանա լճի ջրերն ավելի խնայողաբար օգտագործելու և լիճը բնական պայմաններին համապատասխանող մակարդակի վրա պահելու համար։

Միութենական կառավարության որոշմամբ աստիճանաբար կրճատվում է ջրերի բացթողնումը Սևանա լճից։ Այսպես, եթե 1953 թվականին բաց է թողնըվել 1740, իսկ 1958 թվականին՝ 1400 միլիոն խորանարդ մետր, ապա 1960 թվականին այն հասցվել է 1230 միլիոն խորանարդ մետրի, իսկ 1961 թվականի պլանով նախատեսված է բաց թողնել միայն 1100 միլիոն խմ։

Ելնելով Սևանա լճի օգտագործման նոր ռեժիմից, նախատեսված հիդրոկայաններից երկուսը՝ Արգավանդի և Նորագավիթի կայանները այլևս չեն կառուցվելու։

Սակայն մեծ Սևանը ամբողջովին չորացնելու միջոցով լճի մակերեսը խիստ կրճատելու նախնական պլանից լիովին հրաժարվելու համար անհրաժեշտ է մոտ ապագայում լիովին դադարեցնել ջրի բացթողնումը։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը մի քանի տարի առաջ ռեսպուբլիկայի գիտական և նախագծային կազմակերպությունների առաջ խնդիր դրեցին՝ որոնել ոռոգման ջրի լրացուցիչ աղբյուրներ, ելնելով արդի նպաստավոր պայմաններից մշակել միջոցառումներ Սևանի պրոբլեմը նոր ձևով լուծելու համար։

Վերջերս երկրի մի շարք գիտական հիմնարկությունների և կազմակերպությունների հետազոտությունները դրական արդյունք տվեցին։ Կատարված աշխատանքները հաստատեցին, որ Սևանի՝ ոռոգման նպատակով օգտագործվող ջրերը կարելի է փոխարինել ոռոգման ջրի այլ աղբյուրներով, լիովին դադարեցնել ջրի բացթողնումը լճից։

Ո՞րն է Սևանի պրոբլեմը նոր ձևով լուծելու էական նշանակությունը։ Եթե ելնենք այն բանից, որ նշված միջոցառումների իրագործման համար կպահանջվի 10—11 տարի, լճից ջրերի բացթողնումը մինչև 1965 թվականը կկատարվի ըստ էներգետիկ գրաֆիկի, իսկ 1965 թվականից սկսած՝ ոռո-



գացիոն գրաֆիկի. ապա լճի մակարդակը կիջնի ևս 6—7 մետրով և ընդամենը քսան մետրով։ Դրանից հետո լճի մակերեսի մակարդակը կգտնվի 1896 մետրի վրա, առավելագույն խորությունը մեծ Սևանում կլինի 30, իսկ փոքր Սևանում՝ 80 մետր։ Լճի հայելին կկրճատվի մոտավորապես 188 քառակուսի կիլոմետրով և կկազմի 1228 քառակուսի կիլոմետր՝ սկզբնական 1416-ի դիմաց, այսինքն՝ կփոքրանա միայն 13,5 տոկոսով՝ նախկին սխեմայով նախատեսված 86 տոկոսի փոխարեն։ Այսպիսով Սևանը կպահվի բնական պայմաններին մոտ մակարդակի վրա։

Սևանա լճի մակերեսի այդ չափի կրճատումը կհանգեցնի գոլորշիացող ջրերի քանակի նվազման և լճից կարտահոսի տարեկան մոտ 170 միլիոն խորանարդ մետր ջուր (չհաշված այն 100 միլիոն խորանարդ մետրը, որն օգտագործվում է ոռոգման համար Սևանի ավազանում)։

Սևանա լճի նոր, կայուն դրության համար նրա ջրային բալանսը կներկայացնի հետևյալ պատկերը. (միլիոն խորանարդ մետրերով, տարեկան)

| ՄՈՒՏՔԸ | | ԵԼՔԸ | |
|---|---|---|---|
| Լճի մեջ հոսող ջրեր . . . . . . | 735 | Ջրերի գոլորշիացում լճի մակերեսից . | 964 |
| Տեղումներ լճի մակերեսին . . . . | 418 | Լճի տակից հոսող ջրեր . . . . . | 18 |
| | | Լճից Հրազդան գետով հոսող ջրեր . . | 171 |
| Ընդամենը՝ | 1153 | | 1153 |

Սևանա լճի ջրերի հաշվին 1965 թվականից հետո տարեկան բաց թողնվող 500 միլիոն խորանարդ մետր ջրերից զուտ էներգետիկայի համար օգտագործվող 120 միլիոնը իրականում գործնական նշանակություն չի ունենա և դրանից կարելի է հրաժարվել. իսկ ոռոգման համար անհրաժեշտ 380 միլիոն խորանարդ մետր ջրից 170 միլիոնը կվերցվի լճից ազատորեն արտահոսող ջրերից. հետևապես ջրի հետագա ծախսումը լիովին դադարեցնելու համար անհրաժեշտ կլինի գտնել ջրի նոր աղբյուրներ՝ ոռոգման համար անհրաժեշտ մնացած 210 միլիոն խորանարդ մետրը փոխարինելու նպատակով։

Այդ և ավելի մեծ քանակությամբ ոռոգիչ ջուր, համեմատաբար ոչ մեծ կապիտալ ներդրումներով, կարելի է ապահովել Արարատյան հովտի ստորերկրյա ջրերի, Հրազդան գետի ավազանի գարնանային ջրերի, ինչպես նաև աղբյուրների և Արարատյան հովտի լեռնային գետակների ու Քասախ գետի չօգտագործվող ջրերի հաշվին։

Այսպիսով, նշված ջրային ռեսուրսների և նոր ռեժիմի պայմաններում Սևանա լճի ջրերի ազատ հոսքի օգտագործումը, հաշվի առնելով ոռոգիչ սիստեմների օգտակար գործողության գործակցի բարձրացումը, լիովին կբավարարի ոռոգման ջրի այն պահանջը, որն այժմ ապահովվում է Սևանի ջրերի ծախսման հաշվին։

Սակայն հարց է ծագում, թե Սևանի պրոբլեմը նոր ձևով լուծվելուց հետո ինչպե՞ս կօգտագործվեն Սևան—Հրազդան կասկադի էլեկտրակայանները։ Լճից ազատորեն արտահոսող 170 միլիոն խորանարդ մետր ջուրը և Հրազդան

[1] Չհաշված արհեստական անձրևացման և լճի մակերեսից ջրերի գոլորշիացումը հատուկ միջոցառումներով նվազեցնելու ուղղությամբ իրականացվող հետազոտությունների հնարավոր դրական արդյունքները։

գետի կենցաղային հոսքը խիստ կնվազեցնեն կասկադի շահավետությունը, և այն կկորցնի իր կարգավորիչ նշանակությունը: Դրանից խուսափելու համար նախատեսվում է դեպի Սևան ուղղել հարևան ավազանների ջրերը և հիդրոկայանների կասկադում դրանք օգտագործել կարգավորող էլեկտրաէներգիայի արտադրության համար: Ապացուցված է, որ տնտեսապես նպատակահարմար է դեպի Սևան ուղղել Արփա գետի վերին հոսանքը, որը լճի ջրերը տարեկան կավելացնի մոտ 300 միլիոն խորանարդ մետրով, առանց վնասելու այդ գետի ավազանի ոռոգման, էներգետիկայի և ջրամատակարարման գործին թե՛ հիմա և թե՛ ապագայում: Այդ խնդրի լուծման համար անհրաժեշտ է անցկացնել 60 կիլոմետր երկարություն ունեցող մի թունել: Հենվելով տեխնիկայի նվաճումների վրա՝ նախագծա-հետախուզական բոլոր տեսակի աշխատանքները ավարտելուց հետո թունելը կարելի է կառուցել 4 տարում: Արփա գետի ջրերի մի մասը դեպի Սևանա լիճն ուղղելու համար կատարվող կապիտալ ներդրումները չեն գերազանցում հիդրոտեխնիկական այն աշխատանքների վրա կատարվելիք ծախսերին, որոնք կապված են լճի հատակի չորացման, գետերը դեպի փոքր Սևան ուղղելու համար ջրանցքներ անցկացնելու, ինչպես նաև երկրորդ հերթին ջրահավաք կառուցվածքների շինարարության հետ:

Այդ միջոցառման ժողովրդա-տնտեսական մեծ նշանակությունը որոշվում է ո՛չ միայն Սևան—Հրազդան կասկադի գործող հիդրոէլեկտրակայանների կարողությունների ավելի ռացիոնալ օգտագործմամբ, ցածր ինքնարժեքով լրացուցիչ քանակությամբ էլեկտրաէներգիա ստանալով, այլև նրանով, որ դեպի լիճն ուղղվող ջրերը կարող են բաց թողնվել և էլեկտրակայաններն աշխատեցնել տարվա բոլոր եղանակներին, ինչպես նաև բազմամյա պլանով, առավել մեծ կարգավորիչ նշանակություն տալով կասկադին: Կբարձրանա Սևանի կարգավորիչ դերը նաև իռիգացիոն սիստեմի համար:

Դեպի Սևան տարվող ջրերը, նրանից արտահոսող ջրերի հետ միասին, որոնց տարեկան ընդհանուր քանակը կազմելու է 470 միլիոն խորանարդ մետր, կապահովեն էլեկտրակայանների շահութաբեր աշխատանքը, ընդ որում ավելի բարենպաստ պայմաններում, քան այն ռեժիմի դեպքում, երբ իռիգացիոն գրաֆիկով լճից տարեկան բաց կթողնվի 500 միլիոն խմ ջուր:

Այսպիսով, Սևանի պրոբլեմը, որն այնքան մեծ դեր է խաղացել Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերելքի գործում և այժմ էլ կարևոր գործոն է ռեսպուբլիկայի տնտեսության համար, ստանում է մի նոր բովանդակություն, որը զուգորդվում է ինչպես երկրի ժողովրդական տնտեսության զարգացման շահերի, այնպես էլ Սևանա լճը բնական պայմաններին համապատասխանող մակարդակի վրա պահելու խնդրի հետ: Հարցի նման լուծումը ամբողջովին բխում է բնության պահպանության բնագավառում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության խնդիրներից և խորապես համապատասխանում է աշխատավորների ցանկություններին:

Այդ մեծ ու կարևոր պրոբլեմի պրակտիկ լուծումը գտնվում է ռեսպուբլիկայի պարտիական, սովետական, տնտեսական և գիտա-հետազոտական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

---

# ԼԵՆԻՆԸ ՈՐՊԵՍ ԺՈՒՌՆԱԼԻՍՏ

## Ա. ԱԴՈՅԱՆ

Սովետական մամուլը մեծ և անգնահատելի դեր է խաղում կոմունիզմի կառուցման համար մղվող համաժողովրդական պայքարում: Ռևոլյուցիոն մամուլի տրադիցիաներով սնված և լենինիզմի գաղափարներով տոգորված սովետական ժուռնալիստների կոլեկտիվն իրոք պատկառելի բանակ է, մի բանակ, որի օգնությամբ պարտիան շարունակում է կռվել հին աշխարհի վերապրուկների դեմ, հայտաբերել և աճեցնել ապագա հասարակության պիոներին, օգնել սոցիալիստական տնտեսության բարգավաճման գործին:

Կատարյալ հասարակության կերտման այս երթում չկա մի նշանավոր գործ, որը չլծորդվի մեծ Լենինի անվան հետ, նրա կոփած Կոմունիստական պարտիայի էպոխաշեն ձեռնարկումների հետ: Մեր երկրում չկա մի ժուռնալիստ, որն այդ երթի այս կամ այն անցքը գրառելիս, հար չդիմի լենինյան մտքի անսպառ գանձարանին:

Այսօր, երբ ժողովուրդն իբրև մեկ մարդ, անդադրում ջանքերով կենսագործում է յոթնամյա պլանը, մեզ կրկին ու կրկին անհրաժեշտ է խորհրդակցել աշխարհիս մեծագույն ժուռնալիստի՝ Լենինի հետ:

Լենին ժուռնալիստի կերպարն այնքան գունեղ և հարուստ է, որ անհնար է մի հոդվածում ընդգրկել դրա բոլոր կողմերը: Այստեղ կփորձենք միայն հիմնական շտրիխներով ուրվագծել աշխարհի մեծագույն ժուռնալիստի ստեղծագործական դիմաստվերը:

### ԱՅԳԱԲԱՑԻՆ

Հանդես գալով պատմության թատերաբեմ իբրև հասարակական առաջընթացի բախտորոշ ուժ, միջազգային ռևոլյուցիոն պրոլետարիատն ի դեմս Մարքսի և Էնգելսի գտավ ոչ միայն իր պայքարի մեծ կազմակերպիչներին և անզուգական տեսաբաններին, այլև իր շահերի թարգման՝ երկու կարկառուն ժուռնալիստներին:

Ելնելով այն ըմբռնումից, թե սոցիալ-պատմական վիթխարի տեղաշարժերը կարող են իրականանալ միմիայն զենքի քննադատությամբ, նրանք երբեք չէին վարանում, որ մինչև զենքերի շառաչը, պրոլետարիատին կենսականորեն անհրաժեշտ է օգտվել քննադատության զենքից: Վերջինս է, որ իր լայն գործադրումով օգնում է պրոլետարիատին զինվելու դասակարգային սուր մարտեր մղելու գիտակցությամբ: Մինչ նրանք գլուխ կբերեին հին աշխարհը հիմնիվեր սասանող մեծագույն հրետանին՝ «Կապիտալ»-ը, երկար

տարիներ փայլուն կերպով կիրառելով ժուռնալիստիկայի բոլոր ժանրերը՝ բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժումը ճիշտ հունի մեջ դրին։ Մարդկային միտքը հարստացնելով անմահ երկերով, Մարքսն ու Էնգելսն իրենց բազմաբեղուն կյանքի փառավոր ուղին սփռեցին ժուռնալիստիկայի շողարձակ գանձերով։

Նրանք երբեք չէին տարակուսում, որ իրենց գրած բազմաթիվ հրապարակախոսական հոդվածները, սուր պամֆլետները, խարանող ֆելիետոնները, պատմագրական տեսությունները, քաղաքական, պատմա-տնտեսագիտական, քննադատական և այլ ժանրի մեծ ու փոքր հոդվածները կոչված են ծանր հարվածներ տալու բուրժուազիային, դասակարգային գիտակցությամբ զինելու պրոլետարիատին։

Կանգնելով ռուսական ռևոլյուցիոն պրոլետարիատի ազատագրական շարժման գլուխ, Վ. Ի. Լենինը վերցրեց և առաջ տարավ Մարքսի ու Էնգելսի վառած ջահը ռուսաստանյան ահավոր խավարում։ Զարգացնելով և վարպետորեն կենսագործելով նրանց մշակած ուսմունքը, նա միաժամանակ նոր աստիճանի վրա դրեց մարքսիստական ժուռնալիստիկայի արվեստը։ Հասարակական իր գործունեության սկզբից ևեթ, Լենինը մեծ ջանքեր գործադրեց ռևոլյուցիոն մամուլ ստեղծելու նպատակով։

Այն էպոխան, որում սերվեց և ծաղկեց ռուսական ռևոլյուցիոն ժուռնալիստիկան, Լենինը իրավամբ որակել է իբրև նողկանքի տարիներ, երբ Ռուսաստանում շնչահեղձ էր լինում այն ամենը, ինչ կենսալի էր։ Այդ «եղեպոսյան ճառերի, գրական ստորաքարշության, ստրկական լեզվի, գաղափարական ճորտատիրության անիծյալ» ժամանակաշրջանն էր։ Լենինյան ժուռնալիստիկան իր մեջ առնելով մարքսիստական միջազգային մամուլի վիթխարի ժառանգությունը և որդեգրելով ռուսական ռևոլյուցիոն-դեմոկրատական մտքի լավագույն տրադիցիաները, իր բոլոր կողմերի վրա պրոլետարական ռևոլյուցիայի դարաշրջանի վառ կնիքն է կրում։ Ահա թե ինչու լենինյան սերնդի փայլուն գրչին պատկանող գործերը պրոլետարիատի ազատագրական մեծ մաքառումների հրաբորբ ոգով են տոգորված։

«Սվինների դարում», ռևոլյուցիոն մրրիկների շնդալից բախումներում թևավորված լենինյան ժուռնալիստիկան իր հարուստ բովանդակությամբ, աշխատավորներին ի զեն մղելու ունակությամբ և պայքարի անհաղթելի ուժով՝ պարտիայի ձեռքին դարձավ աշխարհը վերափոխող անփոխարինելի միջոց։

Բազում առիթներով Վ. Ի. Լենինը նշել է, թե ինքը պրոֆեսիայով ժուռնալիստ է։ Երբ կազմակերպվեց Սովետական ժուռնալիստների միությունը, նա դիմեց իրեն կազմակերպության մեջ ընդունելու համար։

Տակավին աքսորավայրում (1887—1900 թթ.) ժուռնալիստ Լենինը տարիներով նվիրական մի իղձ էր փայփայում՝ հանրամատչելի հոդվածներ և բրոշյուրներ գրել բանվոր ընթերցողների համար։ Բայց նա դառն փորձով գիտեր, որ իննսունական թվականներին Ռուսաստանում անլեգալ մամուլի կազմակերպումն անհնարին է։ Դեռ այն ժամանակ համոզված լինելով, որ մամուլը քաղաքական կազմակերպության հիմքն է ու կենտրոնը, նա մեկնեց արտասահման ռևոլյուցիոն մամուլի կազմակերպման գործը գլուխ բերելու մտադրությամբ։

Լենինի ժուռնալիստական տաղանդը փարթամորեն փթթեց իր իսկ հիմ-



նած «Իսկրա»-ի, «Վպերյոդ»-ի և բազմաթիվ այլ թերթերի ու ամսագրերի էջերում։ Նրա վիթխարի գրական ժառանգության մեծ մասը հրապարակախոսական և այլ ժանրի հոդվածներ են, որոնց մեջ հստակորեն երևում է հեղինակի հրացայտ և խարանող հրապարակախոսության թափն ու խորությունը, հարցերը գիտականորեն լուծելու կարողությունը։ Հայտնի է, թե ինչպիսի խոշոր դեր խաղաց մեր պարտիայի կազմակերպման գործում լենինյան «Իսկրան»։ Եվ դա առավել քան այն բանի շնորհիվ, որ նրա էջերում տպագրվում էին Լենինի ծրագրային հոդվածները, որոնք վճռական նշանակություն ունեցան Ռուսաստանի ամրակուռ մարքսիստական բանակի կազմավորման գործում։

Լենինի գրչին պատկանող գործերում զանազան առումներով սպառիչ կերպով մշակված են նոր ժուռնալիստիկայի սկզբունքները։ Ելնելով այն հասկացությունից, որ մամուլը ոչ միայն գաղափարներ պրոպագանդող է, այլև մասսաների պայքարի կոլեկտիվ կազմակերպիչ, Լենինը հենց այդ մամուլի միջոցով հրահրեց և ղեկավարեց կոմունիստական շարժումը ամենից առաջ Ռուսաստանում։

Հրապարակախոսությունը համարելով արդիականության գրառված պատմություն, նա սովորեցնում էր համախոհներին. ով մասնակցում է գրչապայքարին, պետք է կարողանա կշռադատել մտքերը, ունենա համարձակություն, տրամաբանական հետևողականություն, երևույթների կապերի ճիշտ ըմբռնում և մտքերը հստակ շարադրելու ունակություն։

Հիրավի, բռնատիրության, մարքսիզմի հակառակորդների դեմ ուղղված Լենինի հրապարակագրական հոդվածներում, պամֆլետներում, բրոշյուրներում և մենագրություններում ցայտունորեն դրսևորվում է հեղինակի ոչ միայն քննախույզ մտքի ուժը, այլև դրանց շաղախը հանդիսացող՝ ատելավառ ոգին։ Լենին ժուռնալիստի գրած յուրաքանչյուր տողում կա ստեղծարար կիրք, եռացող կյանք և հաղթանակի անկոտրում կամք։

Չէ՞ որ տակավին Հեգելն է նկատել, թե առանց կրքի, աշխարհում ոչ մի մեծ բան չի կատարվել (Гегель, том VIII, стр. 23):

Ուրեմն, միանգամայն օրինաչափ է, երբ Լենինը ռևոլյուցիոն ժուռնալիստների սրբազան պարտքն էր համարում այնպես գրել արդիականության պատմությունը, որպեսզի այն ամեն կերպ օգնի պրակտիկ շարժման ընդլայնմանը, նպաստի ուժերի նվազագույն ծախսումով՝ մեծ արդյունքների հասնելուն։ Եվ այս վեհ նպատակին էր ծառայում նրա գրիչը, երբ բուրժուական կարգերի աղտեղանքը գովերգող գրչակների վայրախոսություններին հակադրում էր խորահայաց և արդարացիությամբ տոգորված իր հոդվածներն ու աշխատությունները։

Բոլշևիկյան մամուլը, հավատարիմ լենինյան ժուռնալիստիկայի սկզբունքներին, վճռական դեր խաղաց Մեծ Հոկտեմբերի հաղթության գործում։

## ՆՈՐ ՄԱՄՈՒԼԸ

Ռուսաստանում իշխանություն նվաճած պրոլետարիատը ձեռնարկեց կոմունիզմի կառուցման մեծ գործին։ Բնականաբար նոր և բարդ խնդիրներ դրվեցին սովետական մամուլի առջև։ Նոր կյանք կերտող մարդկանց մամուլը

պետք է առավելապես սրտամերձ լինի նրանց նոր ոգորումներին, դրվատի մեծ տեղաշարժերի դրական հետևանքները։

Լենինը Լունաչարսկուն գրած մի նամակում հպարտությամբ շեշտում էր. մենք փափկասուններ չենք, այլ լրագրողներ (газетчики), որոնք կոչված են՝ Սովետական իշխանության պայմաններում մամուլը քաղաքական նորություններ և սենսացիաներ հաղորդելու օրգանից վերածելու մասսաների տնտեսական վերադաստիարակության միջոցի։ Եթե անցյալում բոլշևիկյան մամուլի գլխավոր խնդիրը բուրժուական ստի և խաբեության մերկացումն էր, ապա այժմ նրա ուշադրության կենտրոնում պետք է լինեն տնտեսության կազմակերպման հարցերը։

Տակավին 1918 թվականին, անդրադառնալով սովետական մամուլի մերձակա խնդիրներին, Վ. Ի. Լենինն ասում էր. Թող մեր մամուլում հրատապ հարցերին նվիրված նյութերը տասնապատիկ անգամ քիչ լինեն, սակայն թող որ միլիոնավոր օրինակներով ժողովրդի մեջ տարածվեն մամուլի այն օրգանները, որոնք մասսաներին լուսաբանում են օրինակելի տնտեսությունների դրական փորձը։ Ժուռնալիստների ուշադրության կենտրոնում պետք է լինեն. աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության պրոցեսների արդյունավետ կազմակերպման, հանրային արդյունքների հաշվառման կանխման հարցերը։

Դրական օրինակի փորձը պրոպագանդողից Լենինը պահանջում էր պարզորեն գրել. «Որո՞նք են այդ հաջողությունները։ Ապացուցվա՞ծ են արդյոք դրանք։ Չկա՞ն արդյոք այստեղ հեքիաթներ, սնապարծություն, ինտելիգենտական խոստումներ («բարելավվում է», «կազմված է պլան», «ուժերը գործադրում ենք», «այժմ երաշխավորում ենք», «բարելավումն անտարակույս է» և այլ շառլատանական ֆրազներ, որոնց «մենք» այնպես վարպետ ենք)։ Ինչպե՞ս են ձեռք բերված հաջողությունները։ Ինչպե՞ս դրանք ավելի տարածել» (ընդգծումները մերն են—Ա. Ա.), (հատոր 28, էջ 107)։

Այն տարիներին մեր մամուլի թերությունը համարելով հին թեմաների շուրջը տեղ գտած քաղաքական ճոռոմաբանությունը, Լենինը սովորեցնում էր մամուլի գործունեության առանցքը դարձնել էկոնոմիկան, նոր կյանքի շինարարությունը։ Հարկավոր է սովորել քաղաքական նոր փաստերի մասին գրել «հեռագրական ոճով», և ոչ թե ընդհանուր դատողություններով։ Տնտեսական հարցերի լուսաբանումը սակայն չպետք է լինի ««ընդհանուր» դատողությունների, գիտական տեսությունների, ինտելիգենտական պլանների և այլ դատարկության իմաստով»։ Այն պետք է արվի նոր կյանքի վառ օրինակների «մանրակրկիտ ստուգման» և հրապուրիչ եղանակներով պրոպագանդելու նպատակով—ուսուցում էր նա։

Ժուռնալիստը պարտավոր է լինել կյանքի աղմկածուփ խառնարանում և իր գրիչն ի սպաս բերել լավի պրոպագանդմանը, վատի խարազանմանը, մշտապես ստուգելով, թե առօրյա աշխատանքում ստեղծված նորը «որքան կոմունիստական է»։ Լենինը պահանջում էր, որպեսզի բոլոր գրողները, ագիտատորները, պրոպագանդիստները, կազմակերպիչները մշտապես խույս տան փքուն ֆրազներից, առավել շատ զբաղվեն առօրյա գործերով։

Տեխնիկական պրոգրեսի արագացման և արդյունքի ինքնարժեքի իջեցման, արդյունաբերության և գյուղատնտեսության նորանոր ռեզերվների հայտաբերման և աշխատանքի արտադրողականության բարձրացման, յոթնամյա



պլանների գերակատարման և աշխատանքի կոմունիստական բրիգադաների ծավալման խոշորագույն հարցերը պետք է լինեն ժուռնալիստների ուշադրության կենտրոնում։ Մամուլի աշխատողների համար չկա ավելի պատվավոր բան, քան մասսաներին զինել տնտեսության և տեխնիկայի խոր իմացությամբ, օգնել գյուղատնտեսության հզոր վերելքին և վերացնել տնտեսվարությունից աչքակապությունը, խաբեության երևույթները, պրոպագանդել առաջավոր փորձը։

Թերթերն ու ամսագրերն ավելի հրապուրիչ և ավելի խոր կերպով պետք է արծարծեն սովետական մարդու հոգեկան աշխարհի կատարելագործման և գեղեցկացման շնորհակալ հարցերը։ Հաղթահարելով տպագիր խոսքում դեռևս առկա ստանդարտը, ճոռոմաբանությունն ու գորշությունը՝ ժուռնալիստները պարտավոր են անվերջ կատարելագործելու գրական իրենց վարպետությունը, կիրառել բազմապիսի ժանրեր և խոսքը դարձնել ավելի դիպուկ, կրքոտ ու ճշմարտացի։

Եթե Չարենցը գրողի մեծագույն արժանիքն էր համարում այն, երբ նա իր օրերի շունչն է դառնում, ապա ժուռնալիստը որպես պարտիայի անձնվեր օգնական՝ պարտավոր է զգալ րոպեի զարկը, ապրել թռչող վայրկյաններով։

Լենինը սովորեցնում էր ժուռնալիստներին լինել սկզբունքային և աշխատանքի ընթացքում մշտապես շտկել սխալները։ Լռությամբ մատնել դրանք, ինչպես մենշևիկներն են անում, մեծագույն գռեհկություն է, ասում էր նա։ Սխալվելը բոլորին է հատուկ, այստեղ ոչինչ վատ բան չկա։ Սակայն իր սխալների վրա համառելով, թերթը կորցնում է հեղինակությունը։ Հայտնի է, որ Լենինը հաճախ պայման էր դնում տպագրողի կամ խմբագրի առջև՝ փոփոխություններ չմտցնել. «Եթե հարմար չէ, խնդրում եմ վերադարձնել»։ Նա սաստիկ զայրացած կշտամբում էր հարազատ քրոջն այն բանի համար, որ վերջինս փորձել էր անտեղի մեղմելու լիկվիդատորների դեմ գրած նրա հոդվածը։

Բարձր գնահատելով Լենին ժուռնալիստին, Վ. Վորովսկին հետևյալ ցայտուն բնութագիրն է տալիս նրան. «...Երբ խորհուրդը լավ է, ոչ ոք չի կարող նրա պես ուրիշի խորհրդին հետևել։ Նրա պես ոչ ոք այդպես բարեհոգաբար թույլ չի տալիս իր հոդվածները «փոփոխել», խմբագրել։ Ոչ ոք նրա պես հաճույքով չի ենթարկվում մեծամասնության կարծիքին։ Բայց, իհարկե, այդպես է միշտ, երբ նա չի համոզված, որ դրանով վնաս կտրվի պարտիայի և բանվոր դասակարգի շահերին։ Հակառակ դեպքում իր պահանջներում նա ամուր է, նույնիսկ եթե դրան պետք է հաջորդի կապերի խզումը լավագույն ընկերների հետ...»։ Ահա թե որքա՞ն բարձր էր գնահատում Իլյիչը ժուռնալիստի սկզբունքայնությունը։

Նա քանիցս կրկնում էր, որ գիտակից ընթերցողի համար ամենից առաջ և ամենից շատ թանկ է մամուլի սկզբունքայնությունը։ Բայց որպեսզի իր հեղինակությունը միշտ բարձր պահի, մամուլի օրգանը պարտավոր է մշտապես ընթանալ առջևից և հարցերն արծարծելիս բազմակողմանի մոտեցում ցուցաբերել։ Երբ թերթը ետ է մնում կյանքից, այն կործանված է, ասում էր Լենինը։

Այսպիսով, լենինյան ժուռնալիստիկայի կարևորագույն գծերից է ոչ միայն նրա բարձր գաղափարայնությունը, այլև կոնկրետությունը, արդիականությունը։

Լենինյան ուղղության ժուռնալիստն ամենահանրամատչելի գրողն է, որն իր ընթերցողին (նույնիսկ չզարգացած) համարում է մի մարդ, որը մտադիր է գլխով աշխատելու և օգնում է նրան կատարելու այդ լուրջ ու դժվարին քայլը։ Նա իր գրական աշխատանքով ընթերցողին մոտեցնում է խոր մտքի, խոր ուսմունքի, ոչ բարդ դատողությունների միջոցով գլխավոր եզրակացություններն է տալիս և մտածող ընթերցողի ուղեղում նոր հարցեր է հարուցում, ասում է Լենինը։

Լենինը պահանջում էր, որպեսզի հանրամատչելի գրողը չիջնի չզարգացած ընթերցողի մակարդակին, այլ նպաստի նրա աստիճանական բարձրացմանը։ Հանրամատչելիությունը, հարկավ, բացառում է գռեհկությունը, շատախոսությունը և ավելորդ կրկնությունները։ Մատչելի գրելը,— հիշում է Ն. Կրուպսկայան,— Լենինը սովորել է Պիսարևից, Չերնիշևսկուց, Էնգելսից և այլ ականավոր մտածողներից։

Այս չափանիշով միայն պետք է գնահատել յուրաքանչյուր ժուռնալիստի գրական աշխատանքը։ Միայն այդ կարգի հանրամատչելիությունն է, որին պետք է ձգտի սովետական ժուռնալիստը։

## ԲՆՈՐՈՇ ԳԾԵՐ

Վ. Ի. Լենինը կատարյալ ժուռնալիստ էր։ Նրա գրական ժառանգության վիթխարի ծավալը նախ և առաջ վկայում է նրա արտակարգ աշխատունակության մասին։ Մի հանգամանք, որը թելադրում է մեր օրերի ժուռնալիստներին լուրջ խորհրդածություններ անել իրենց պրոֆեսիոնալ մտահորիզոնն ընդարձակելու շուրջ։ Լավ ժուռնալիստ լինելու համար միայն բնատուր ձիրքը բավական չէ։ Հարկավոր է և (թերևս ավելի շատ), աշխատասիրություն։ Դա մեզ պետք է ընթացակցի, քանի դեռ գրչով մասնակցում ենք նոր կյանքի զարգացման գործին։

Այն հանգամանքը, որ Լենինը մեծագույն մտածող էր, լույս է սփռում ուշագրավ մի իրողության վրա. Նրա գրչին պատկանող բոլոր գործերն աչքի են զարնում շարադրվող հարցի խորիմացությամբ և փայլուն վերլուծությամբ։ Նյութի կոնկրետ շարադրանքը ընթերցողի մտքի առջև բացահայտում է քննարկվող երևույթի մերթ հիմնական և գլխավոր (երբ հոդվածի ծավալը շատ սեղմ է), մերթ բոլոր կապերն ու անցումները (երբ հոդվածի ծավալը բավական է)։ Շոշափվող նյութի լենինյան վերլուծությունը ոչ միայն ընթերցողին կլանում է այն բանով, որ լայն կերպով ծավալում է ուղենիշ գաղափարը և վառ գույներով է պատում իր կուռ եզրակացությունները, այլև ընթերցողին մտավոր որոճի առատ նյութ է տալիս։ Նրա շարադրանքը տրամաբանորեն այնքան կուռ է և ներդաշնակ, որ անգամ փորձված հակառակորդներին չի հաջողվում որևէ չափով թեատել նրա ինքնաբուխ մտքերը։

Հասարակական կյանքի, մտքի զարգացման ամենաբարդ և նրբագույն երևույթների իմաստն ըմբռնելու և այն հատվածաբար, մաս առ մաս լուսաբանելու ասպարեզում Լենինն անզուգական էր։

Ինքնին հասկանալի է, որ նրա հարուստ գրական ժառանգության մեջ մենք տեսնում ենք գրական ու ժուռնալիստական բոլոր ժանրերի ներդաշնակ մարմնացում։ Նա միշտ էլ հաճույքով էր կրկնում Վոլտերին, ասելով, թե բոլոր ժանրերն էլ լավ են, երբ տաղտկալի չեն։ Վերջինիս պատճառներից մեկն



էլ միայն մտքի աղքատությունը չէ, այլև միակերպությունը։ Դրա համար էլ նա գրում է, թե «Ավրորա» ժուռնալը կարծես սկզբից մինչև վերջ մի մարդ է գրել։ Ուրեմն, ժանրերի աղքատությունը մտքի աղքատության վկայությունն է։

Ժանրերից ո՞րն էր գերադասում Լենինը։ Նայած թե ում համար և ինչպիսի նպատակով էր գրում։ Մասսայական ընթերցողների քաղաքական լուսավորության համար նա գրում էր հոդվածներ, հանրամատչելի բրոշյուրներ, ներքին տեսություններ, զրույցներ, սատիրական դիալոգներ, թերթային հաշվետվություններ, ֆելիետոններ, թռուցիկներ, հրապարակախոսի դիտողություններ։ Մարքսիզմի հակառակորդներին ջախջախելու նպատակով նա հանդես էր գալիս փայլուն պամֆլետներով, հրապարակախոսական մեկնաբանություններով, տնտեսագիտական էտյուդներով, պատմա-տնտեսական տեսություններով, հրապարակախոսական ալեգորիաներով, պատմա-պարտիական մեմուարներով, հրապարակախոսական դիալոգներով։ Երբ կյանքը պահանջում էր սպառիչ պատասխան տալ ժամանակի հարցերին, նա հրապարակ էր գալիս լուրջ մենագրություններով, գրախոսություններով, քննադատական դիտողություններով, կուռ թեզիսներով, պատմագրական տեսություններով և մի շարք այլ ժանրերի կիրառումով։

Լենինի ստեղծագործական այս բազմաժանր գրչափորձը, նրա ժուռնալիստիկայի ոճի բնորոշ կողմերը կարելի է այսպես բանաձևել. ճշմարտացիություն, հրատապություն, գրավչականություն, հստակություն, գաղափարական անհաշտելիություն, հանրամատչելիություն, արտահայտչականություն, կրքոտություն, դիալեկտիկականություն, պատկերավորություն, ներգործունություն, ոճի պարզություն, վառ դիպուկություն, սեղմություն, ցցունություն, քաղաքական սրություն, կոնկրետություն, նպատակասլացություն, կտրականություն, ձևակերպումների կատարյալ ճշգրտություն, համոզչականություն և իմաստալիություն։

Վերցրեք նրա ուզած հատորը և կարդացեք որևէ հոդված և դուք կնկատեք, որ նրա գրական ոճի վերոհիշյալ բնորոշ գծերն (այս կամ այն ներհյուսմամբ) արտահայտվում են դրա էջերում այնպիսի ցայտունությամբ, որ երկար ժամանակ մոռանալ չեք կարող։ Նույնիսկ միայն այս թվարկումը խոսում է ամենևին ոչ այն ժուռնալիստների օգտին, որոնք տարիներով գրելով մամուլում, չունեն մինչև անգամ իրենց գրելաձևը կամ ոճը։ Այնինչ, Լենինը բարձր էր գնահատում այն գրիչներին, որոնք կարողանում էին ընդհանուր ճշմարտությունները գրել ոչ միայն ճիշտ, այլև յուրովի։ Ոճազուրկ հեղինակը պտղազուրկ ծառի է նման։

Ա. Լունաչարսկին նշում է, որ Լենինը եռում էր քաղաքականապես։ Հիրավի, նրա հոդվածների, բրոշյուրների, ճառերի և բոլոր գործերի էջերից հառնում է աշխարհի մեծագույն ռևոլյուցիոների և ժուռնալիստի կերպարը։ Զգայուն ընթերցողը չի կարող չնկատել, որ Լենինի յուրաքանչյուր գործում կա նրա անսպառ կորովի, նրա ջղերի ու մտավոր եռանդի մարմնացումը։ Եվ, որովհետև նրա հոդվածի հենքը օրվա քաղաքական ամենապիրկ թելերից է հյուսված, այն անպայման ձեզ կօգնի դեմընթաց լինելու հասարակական կյանքի անակնկալներին։

Լենինը գրում էր, ինչպես խոսում էր։ Հազվագյո՞ւտ և խիստ արժեքավո՞ր շնո՞րհք։ Երկու դեպքում էլ նրա խոսքը զարմանալի անբռնազբոսիկ է,

վարարուն և հորդաբուխ։ Դրա համար էլ հոդվածների մեծ մասը գրում էր մի շնչով, հաճախ առանց ջնջումների և հազվադեպ՝ աննշան ուղղումներով։ Շնորհիվ իր ճշմարտացիության և ամենակողմանիության, այն համոզում է ընթերցողին և վառ արտահայտչականության հետևանքով հրապուրում, գրավում։ Խոսելիս կամ գրելիս նա երբեք չէր հրճվում իր «գեղեցիկ ֆրազով» և չէր շփոթվում այս կամ այն անճշտությունից։ Իր ոճի թերությունները շտկելու փոխարեն, շտապում էր փակագծերով բացատրել հնարավոր թյուրըմբռնումը,— գրում է Ա. Լունաչարսկին։ Որովհետև նրա մոտ բովանդակությունն ու ձևը ներդաշնակ էին, վերջինիս վրա իր ուշադրությունը կենտրոնացնելու կարիքը չուներ։

Ժուռնալիստ Լենինի համապարփակ և հստակ տրամաբանության շնորհիվ նրա գրածը օժտված է համոզելու ուժով։ Նա այնքան աշխույժ, անմիջական, անաչառ է խոսում ընթերցողի հետ, որ վերջինս սկսում է խորհրդածել, մտորել, համաձայնել։ Տարակուսելիս, ընթերցողն իրեն տանջող հարցի սպառիչ պատասխանն անպայման կգտնի նրա մեկ այլ հոդվածում։ Իսկ երբ վերջինս կանգնել է լենինյան գաղափարների ճանապարհին, դիմում է նրա բազմաբովանդակ մենագրություններին և հագեցնում իր ճշմարտասիրության ծարավը, գտնում «ի՞նչ անել» հարցի պատասխանը։

Սովետական ժուռնալիստի բնորոշ գիծը համեստությունն է։ Նա չպետք է գրի այն թեմայի մասին, որը չի ուսումնասիրել և որի վերաբերյալ հստակ գաղափար չունի։ Կարողությունից վեր թեմայով հանդես գալը նման է նրան, երբ բուրժուական շատ ժուռնալիստներ գրում են առանց լուրջ գիտելիքների և բանը հասկանալու։ Մինչդեռ 1899 թվականին երիտասարդ Լենինը գրում է Գ. Պլեխանովին. «...Շատ լավ գիտակցում եմ իմ փիլիսոփայական անուսումնառությունը և այդ թեմաների մասին մտադիր չեմ գրելու այնքան ժամանակ, մինչև լավ չսովորեմ։ Այժմ հենց դրանով եմ զբաղվում, սկսելով Հոլբախից և Հելվեցիուսից և պատրաստվելով անցնելու Կանտին» (հատ. 34, էջ 29)։

Որքա՜ն անհրաժեշտ է այս համեստության գեթ աննշան մասն այն «գիտուններին», որոնք սիրում են խոսել մալթուսյան «նվազ պտղաբերության թեորիայի մասին» (փոխանակ պտղաբերության), բայց զուրկ են անգամ բանաքաղելու տարրական կարողությունից։

Լենին ժուռնալիստնականավոր պոլեմիստ էր (բանակռվող)։ Բավական է վերցնել նրա «Ինչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ», «Ի՞նչ անել», «Մի քայլ առաջ, երկու քայլ ետ», ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ», «Պրոլետարական ռևոլյուցիան և ռենեգատ Կաուցկին» և շատ ուրիշ երկեր ու հոդվածներ, որպեսզի վառ կերպով երևա հազվագյուտ բանակռվողի՝ Լենինի պոլեմիկական տաղանդը։ Նրա գրչին պատկանող բոլոր գործերի ոգին՝ ստեղծարար, բազմակողմանի և անաչառ քննադատությունն է։ Գաղափարական հակառակորդներին և պրոլետարիատի շարքերի դասալիքներին քննադատում էր անզիջում։ Ոմանք նրան համարում էին «անզուսպ պոլեմիստ» և «հայհոյող»։ Բայց նրանից վայելուչ և զգույշ մարդ դժվար էր գտնել։ Որևէ մեկին խարազանելիս, նա երբեք անձնական մոտեցում չուներ, հիշում է Ա. Լունաչարսկին։ Համախոհների հետ խոսում էր մի լեզվով, թշնամիների՝ բոլորովին այլ։

Տակավին «Իսկրա»-ի տարիներին, Լենինը գտնում էր անհրաժեշտ, որ-



պեսզի չլուծված հարցերի շուրջ բանավեճ մղվի մամուլէ էջերում։ Բանավեճից մի՛ վախեցեք։ Շաբաթական 2—3 բանավեճային հոդվածներ զետեղեք, գրում էր նա բոլշևիկյան թերթին։ Մեծ դիալեկտիկը խորշում էր այն հրապարակախոսներից և մտածողներից, որոնք սահելով կյանքի հարթ մակերեսին, խույս էին տալիս իրականության խճճված հակասություններից՝ աբստրակտ մտակառուցումներ հորինելով։ Մինչդեռ ինքը որպես բացառիկ և կրակոտ հրապարակագիր, թեման վերցնում էր զարգացման ելևէջներով և հակասականություններով, մշտապես առաջին պլանի վրա մղելով թեմայի հրատապ կողմը, որը պատասխան է տալիս օրվա պահանջներին։

Ժուռնալիստ Լենինի զայրացայտ և անաչառ հրապարակախոսությունը հաճախ միահյուսվում է պատմագիտության, տնտեսագիտության, գրականագիտության հետ։ Թեժ բանավեճում նա օգնության է կոչում վիճակագրական աղյուսակներ, պարբերական մամուլից առնված ստույգ փաստեր, պատմական և տնտեսագիտական անհերքելի հետևություններ, ականավոր հեղինակությունների վկայակոչություններ։ Մոլի հակառակորդների ֆրազների Մոմբլանին հակադրում է անողոք փաստերի, ժողովրդական առակների, ասացվածքների, շչեդրինյան կամ գոգոլյան կերպարների, Հայնեի, Ուսպենսկու և Գրիբոյեդովի երգիծանքի դիպուկ նմուշները։ Հղկված և սուր տերմիններով, կուռ ու ցայտուն, հակիրճ ու փաստալի դատողություններով Լենինը քարը քարի վրա չէր թողնում թշնամիների մտահնարներից։

Ենելով այն ըմբռնումից, որ հոդվածը վերցնում և ցցուն կերպով արտահայտում է մի հարաբերակցություն, նա այլ կապակցություններին անդրադառնում էր մի քանի այլ հոդվածներով, ամբողջ հոդվածաշարով։

## ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՊԱՐՏՔԸ

Լենինը ժուռնալիստներից պահանջում էր նախ և առաջ ունենալ կայուն և հետևողական աշխարհայացք՝ մարքսիզմ։ Առանց վերջինիս՝ ամենաշնորհալի ժուռնալիստն անգամ ի վիճակի չէ ըմբռնելու և պրոպագանդելու ճշմարտության էական կողմերը. առանց դրա նա կյանքը կըմբռնի աղավաղված։ Մարքսիզմ-լենինիզմի, պատմության, գրականագիտության, բնագիտության և շատ այլ գիտությունների բազմակողմանի իմացությունը ժուռնալիստի հանապազորյա հացն է։ Չկա՛ և չի՛ կարող լինել լավ ժուռնալիստ, որը չտիրապետի իր ժամանակի առաջավոր գիտությանը։

Սովետական ժուռնալիստի պարտականությունն է համաքայլ ընթանալ պարտիայի հետ. դրվատել ու վերհանել կոմունիզմի ծիլերը, նշավակել և խարազանել նոր կյանքի կերտման արգելքները։ Լենինը ուսուցանում էր ժուռնալիստներին, վատի, վնասակարի դեմ գրել կրքոտ, ցասմամբ։ Կոլեգանե՛ր, առանց ցասման գրել վնասակարի մասին, դա նշանակում է գրել տաղտկալի, գրում էր նա «Պրավդա»-ի խմբագրությանը։

Նա խորհուրդ էր տալիս Լունաչարսկուն առայժմ հետաձգել Պլեխանովին պատասխանելը (փիլիսոփայության հարցերի շուրջ) և հանձն առնել «տխուր և գարշահոտ աշխատանք», մերկացնել մենշևիկների կովի գծում եղանակները և կեղտոտ նպատակները։ «Ստորությունն ու թույնը թողնել անխարան՝ հրապարակախոսին անթույլատրելի է։ Յուրաքանչյուր հրապարակախոսի սուրբ իրավունքն է՝ քննադատել դրանց»։ Նշավակեցե՛ք մենշևիկներին և նրանցից

*հավաքական տիպ ստեղծեք։ Նրանց պորտրեն կերտեք հասակովը մեկ, նրան-
ցից առնված ցիտատներով։*

*Այսպես էր Լենինը Լունաչարսկու փայլուն գրիչն ի սպաս դնում ռևոլյու-
ցիայի մեծ գործին։*

*Ժուռնալիստը որպես կոմունիզմի մարտիկ, որպես նոր կյանքի սերմնա-
ցան, կոչված է ցանելու օգտավետ սերմեր և տարածելու դրանք, բայց նա պար-
տավոր է և քաղհանել մոլախոտերը, քննադատել «տհաճը»։*

*Ն. Կրուպսկայան գրում է, թե Լենինի ասելով, Մարտովը տիպիկ ժուռնա-
լիստ էր։ Նա արտակարգ դյուրազգաց էր և տպավորվող, որի շնորհիվ նա կա-
րողանում էր որսալ այն, ինչ կատարվում էր մասսաների շրջանում, արձա-
գանքել հրատապ հարցերին։ Այդ հատկությունը Լենինը բարձր էր գնահատում։
Բայց հենց այդ արտակարգ դյուրազգացության հետևանքով նա շատ էր են-
թակա զանազան բացասական ազդեցությունների։*

Դյուրազգացությունը, վառ երևակայությունը և ռևոլյուցիոն բնազդը *լրջո-
րեն կօգնեն ժուռնալիստին, երբ նա ունի կայուն մարքսիստական հայացք և
չի ենթարկվի պատահական երևույթներին։ Ժողովրդի, կյանքի հետ ունեցած*
*անմիջական* կապերն *անհրաժեշտ են ժուռնալիստին։ Բայց դա բավական է
հաջողության համար։ Անհրաժեշտ է* ձիրք *ունենալ, որը մեծապես դյուրաց-
նում է աշխատանքը։ Շնորհքով ժուռնալիստը կարողանում է ոչ միայն աչ-
խույժ, սրամիտ և համարձակորեն գրել, այլև կարողանում է ընտրել իր հա-
կումներին և կարողություններին համապատասխան թեմա, կարողանում է
ընտրել իր հետ աշխատակցող վարպետ գրիչների։*

*Տպվելու կիրքը ազնիվ կիրք է, ասում էր Լենինը։ Բայց տպվել ցանկա-
ցողը պարտավոր է մեղվի պես ջանալ. նեկտարը պետք է հավաքել կենդանի
և բազմազան ծաղիկներից, այլ ոչ թե մարդկանց սեղանների վրա դրված քաղ-
ցրավենիներից ու քաղցր մրգերից։*

*Մեծամտությունը և ինքնագոհությունը խորթ են լենինյան տիպի ժուռնա-
լիստին։ Լենինը դատապարտում էր «օրը-օրին» ապրելու տակտիկան, ասելով,
թե բոլեական հաջողությունները մեզ չեն բավարարում։ Մենք պետք է մշտա-
պես* ստուգենք *մեզ, ուսումնասիրելով կյանքն իր ամբողջության մեջ։ Վեր-
լուծելով երեկվա սխալները, մենք դրանով հենց սովորում ենք խույս տալ
դրանցից այսօր ու վաղը։ Լենինյան այս դրույթը լիովին վերաբերում է ժուռ-
նալիստներին։ Կուտակե՛լ գիտելիքներ,* վերլուծե՛լ *և* ընդունե՛լ երեկվա *սխալ-*
ները *ու վրիպումները և ջանալ չկրկնե՛լ դրանք վաղը։ Աշխատանքի լենին-
յան այս ոճի կիրառումը միայն ժուռնալիստին հնարավորություն կընձեռի
մշտապես լինել իր օրերի հետ դաշն։*

*Սակայն նրա հաջողության համար անհրաժեշտ է նաև, որպեսզի նա
կարողանա և սովորի՝ գրել* պարզ, ստույգ, սեղմ, հանրամատչելի:
*Սեղմ ու պարզ գրելու համար անհրաժեշտ է, որպեսզի ժուռնալիստն օժտված
լինի* էականն *ու* երկրորդականը զատելու կարողությամբ, *կարողանա բանա-
կանության խոշորացույցով նշմարել գլխավորը պարուրող մանրուքները։*

*Լենինը թշնամի էր մթին, խրթին, և շիլաշփոթ գրելաձևին։ Վ. Զասուլիչի
մի հոդվածի մասին նա նկատել է. մտքի մթություն և անհարիրություն, գործը
փչացնում է երկար, տանջալի ծանր պարբերություններով, խուսագրություն-
ներով և Պոնտից Պիղատոսին հղումներով։ Մի այլ առիթով շեշտել է, թե*



*ի տարբերություն Ֆ. Էնգելսի ոճի, այստեղ ամեն ինչ ճապաղ է, մթին և շիլա-
շփոթ։*

*Իհարկե, էականը մանրուքներից ջոկելու ունակությունը կախված է խել-
քից, մտահորիզոնի ծավալից և կենսափորձից։ Պարագաներ, որոնք անհրա-
ժեշտ են ամեն մի ժուռնալիստի համար։ Միայն այս դեպքում նա ի վիճակի
կլինի դատարկախոսությունը փոխարինել նյութի ճիշտ վերլուծությամբ։*

*Յուրաքանչյուր հոդվածի մեջ Լենինի համար կարևորը հեղինակի* մտքերն
*են։ Լինելով դատարկ ֆրազի անողոք թշնամի, նա հաճախ միևնույն միտքը
կրկնում է* տարբեր առումներով, *որպեսզի ընթերցողը հեշտ ըմբռնի։ Այլոց
հոդվածները խմբագրելիս, նա առավելապես ուշադրություն էր դարձնում
դրանց* բովանդակությանը: *Ժուռնալիստի կարևորագույն արժանիքն էր համա-
ռում* վերլուծելու *շնորհքը։ Ավելի հանգիստ վերլուծել փաստարկները և* նշմար-
տությունը *կրկնել ավելի հանգամանորեն, ավելի պարզ, սովորեցնում էր
Իլյիչը։*

*Հոդվածի* գրելակերպի *ուղղումը Լենինը համարում էր մանրուք։ Նա պա-
հանջում էր ժուռնալիստներից մասսաների համար գրելիս՝ հրաժարվել իմաս-
տուն տերմինների հրեշտանուց, օտար և անհասկանալի բառերից, սերտված և
շաբլոն ֆրազներից։ «Ուսյալության» փքուն պաճուճանքները մթագնում են
հարցի էությունը և իրականում դրանց առկայությունը հոդվածում մտքերի
լղարության նշան է։ Երբ ճիշտ միտքը թաղված է ավելորդ բառակույտում,
այն ցայտուն արտահայտվել չի կարող, թուլանում է նրա ուժը։*

*Շնորհալի ժուռնալիստը նման է փորձված բժշկի, որն ամեն հիվանդի իր
ցավին համեմատ դեղեր է տալիս։ Միևնույն թեման* տարբեր առումներով,
*տարբեր ժանրերով պետք է հրամցնել ընթերցողներին։*

*Ինչպիսի՞ ոճով, ո՞ր ժանրով տվյալ թեման մշակել։ Դա կախված է նրա-
նից, թե գրողը որքան լավ գիտի ընթերցողների հոգևոր պահանջմունքները,
նրանց մտավոր մակարդակը և օրվա քաղաքական կյանքը։ Բայց միայն իմա-
ցությամբ հեռու չես գնա։ Տվյալ ժուռնալիստը բազմաժա՞նր է, թե միայն
թերթային հաշվետվությամբ է սահմանափակվում նրա կարողությունը։ Չէ որ
նյութի բնույթը մերթ պահանջում է ֆելիետոնով հանդես գալ, բայց նա ի վի-
ճակի չէ այդ անելու։ Ուրեմն, ժուռնալիստի* վարպետությունը *և* ընդգրկման
ծավալը *մեծ նշանակություն ունեն նյութի հաղթահարման իմաստով։*

*Բավական չէ ճիշտ գրել. անհրաժեշտ է գրել* ցայտուն, *լակոնիկ, իմաստա-
լի և* գեղեցիկ: *Պատկերավոր, լակոնիկ ոճի բազմաթիվ օրինակներ կարելի է
բերել Լենինի գործերից՝ ցույց տալու, թե նա որպիսի՞ խնամքով էր մշակում
նյութը։ Մատուցման եղանակը նրա համար կարևոր հանգամանք էր։ Նա հա-
ճախ դիմում էր պատկերավոր ոճի օգնությանը, շարադրանքը թե՛ աշխույժ
և թե՛ մատչելի դարձնելու նպատակով։*

*Այսպես, օրինակ, առարկելով հակառակորդներին, Լենինը գրում է.*

*«Ասացեք խնդրեմ. երբ որմնադիրները հսկայական և միանգամայն չտես-
նըված շենքի քարերն են դնում զանազան տեղեր,— «թղթային» գործ չէ՞ ար-
դյոք թել անցկացնել, որ օգնում է քար դնելու կանոնավոր տեղը գտնելու,
նշում է ընդհանուր աշխատանքի վերջնական նպատակը, հնարավորություն է
տալիս գործադրելու ոչ միայն ամեն մի քարը, այլև քարի ամեն մի կտորը,
որը զոդվելով նախորդների և հաջորդների հետ, կազմում է ամբողջացած և
ճամայնապարփակ գիծ։ Եվ մի՞թե մենք հենց այդպիսի մոմենտ չենք ապ-*

րում մեր պարտիական կյանքում, երբ մեզանում կան և քարեր, և որմնադիրներ, իսկ բացակայում է հենց բոլորի համար տեսանելի թելը, որը կարողանար բոլորի համար ուղեցույց լինել» (Երկեր, հատ. 5, էջ 669):

Իհարկե, նման հյութեղ, պատկերավոր վերլուծությամբ քաղաքական ամենանուրբ հարցերն անգամ դառնում են մատչելի: Մարքսի «Կապիտալ»-ում,— ասում է Լենինը,— խիստ տաք և կրքոտ բանավեճին զուգընթաց, կան և շատ սրտառուչ տողեր: Սակայն Լենինի համար գեղեցկության հասկացությունը խարսխվում է խոր բովանդակության վրա: Դեկադենտները «գեղեցիկ» են գրում, ասում է նա, բայց նրանց գործերը բովանդակությամբ աղքատիկ, իսկ ֆրազներով՝ լի բաներ են:

Մի անգամ Լունաչարսկուն գրում է, թե «Ձեր բրոշյուրը լավ է: Այն ուղղելն ավելորդ է. չէ որ շատ ափսոս է ջնջել ձեր գույները և փչացնել կենդանի գրածը»: Ուրեմն, երբ բովանդակությունը ճիշտ է անդրադարձնում կյանքը և այդ ցոլացումը ծիածանի գույներով է երևում՝ դա գեղեցիկ է: Նրան դուր էր գալիս Լունաչարսկու պատկերավոր ոճը. «Նրանք քաղաքական շախմատ են խաղում»: Իր իսկ գրած այս տողերը Լունաչարսկին ջնջել է, սակայն Լենինը վերականգնել է:

Նա բարձր էր գնահատում Լունաչարսկու տաղանդը, գրում է Ն. Կրուպսկայան: Երբ մեկը պատահաբար մի միտք էր արտահայտում, Լունաչարսկին այնքան գեղեցիկ և հրապուրիչ էր ձևակերպում, որ այդ մտքի հեղինակն էլ էր զարմանում:

Թերթում ենք Լենինի «Կրկին ժամանակավոր կառավարության մասին» հոդվածի պլանը, որում վկայակոչված է Շեքսպիրի «Միջ ամառնային գիշերվա երազը» պիեսից հետևյալը. Ճշմարիտ սերը երբեք հարթ չի ընթանում:

Այսպիսով, համաշխարհային կլասիկներին վկայակոչելիս, Լենինն օգտագործում էր այն գեղեցիկ տեղերը, որոնք բովանդակալի են և ճշմարտացի: Գեղեցկության հարցին նա մոտենում էր մարքսիստորեն՝ առաջնությունը տալով բովանդակությանը:

## ԱՆՊԼԱՆ ՉԳՐԵԼ

Ոչ միայն անձնական օրինակով, այլև գրավոր ձևով, Լենինը սովորեցնում էր ժուռնալիստներին գրական վարպետության գաղտնիքները: Նախ և առաջ ժուռնալիստը պետք է կարենա կյանքի քաոսից զատել և վեր առնել կարևորը, էականը: Իսկ դա նշանակում է, որ նա պետք է օժտված լինի հասարակական երևույթների օրինաչափությունների ըմբռնման ունակությամբ: Տասնյակ և հարյուրավոր պատահական երևույթների լաբիրինթոսում բացահայտել դրանց շարժման հիմքում ընկած անհրաժեշտ օրենքները՝ դա ժուռնալիստի հաջողության գրավականն է: Իսկ եթե դա չկա, ապա նա մինչև ականջները կխրվի էմպիրիկ փաստերի և էպիզոդիկ երևույթների ծովում, կսուզվի հատակը: Այս դեպքում է, որ հոդվածը կդառնա պատահական նյութի մի տաղտկալի կոնգլոմերատ:

Երբ ժուռնալիստն ընդգրկել է թեմայի էական միջուկը, ապա նա չպետք է մոռանա, որ տեսական բնույթի հոդվածը ագիտացիոն չէ, այլ պրոպագանդիստական: Ահա թե ինչ է գրում Լենինը. Թեման վերցված է լավ և ճիշտ է մշակված, բայց գրական հղկումն անբավարար է: Չափից ավելի «ագիտացիա»



կա, որը չի համապատասխանում տեսական հարցին նվիրված հոդվածին: Ուրեմն լավ մշակումից բացի, հոդվածը պետք է որ շեշտված բնույթ ունենա, որը չհակասի իր ժանրին: Կարողանալ զատորոշել պրոպագանդիստական և ագիտացիոն հոդվածի սահմանները՝ ժուռնալիստը պարտավոր է: Այլ կերպ, այն կարող է ձախողվել:

Որպես կանոն, հոդվածի բովանդակությունը հեղինակի էության որոշ կողմերի արտացոլումն է: Իսկ երբ այն ճապաղ, ցրված, հեղհեղուկ, մեդուզայի պես մի բան է, դա նշանակում է, որ ինքը հեղինակն է անդեմ և անորոշ: Այստեղ արդեն ժուռնալիստի մասին խոսք չի կարող լինել, որովհետև իսկական ժուռնալիստը շեշտված դեմք և կայուն ուղղություն ունի: Նա ունի քաղաքական ողնաշար և գաղափարական կռվաններ: Հեղհեղուկ հոդվածը փչացնում է ընթերցողների միտքը և ճաշակը:

Սովետական ժուռնալիստի վարպետության բաղկացուցիչ տարրերն են՝ թեմայի ընտրությունը, նրա մշակումը և գրական հղկումը: Առանց այս երեք օղակների կատարելության, չի կարելի երազել, թե ժուռնալիստը հասել է իր նպատակին: Նույնիսկ այն դեպքում, երբ թեման հաջող է ընտրված, երաշխիք չկա, որ հոդվածը հաջող կստացվի:

Ինչո՞ւ: Որովհետև պետք է կարողանալ նաև ճիշտ պլան կազմել: Անպլան գրված հոդվածները միշտ էլ տառապում են միակողմանիությամբ և մակերեսայնությամբ: Լենինն առանց պլանի հոդված, բրոշյուր կամ գիրք չէր գրում: Բարեբախտաբար պահպանված նրա մի շարք պլանները մեզ սովորեցնում են գրելու վարպետության պայմաններին տիրապետել: Հաճախ նա պլանի երեք-չորս փոփոխակներ էր մշակում նույն հոդվածի համար: Թեման լիարյուն է և ամենակողմանի, երբ գրված է նախապես մշակված պլանի հիման վրա:

Թեման հաջող է մշակված ոչ միայն այն դեպքում, երբ նյութը ճիշտ է վերլուծված ու մեկնաբանված, այլև երբ հեղինակի կողմից այն մշակված է կառուցվածքի և՛ գրական տեսակետից: Լենինը միևնույն թեմայով գրում էր խիստ տեսական և ագիտացիոն հոդվածներ: Տվյալ դեպքում գրելաձևը, ժանրը, ծավալը պայմանավորվում են թեմայի բնույթով:

Երբ թեմայի բնույթը համապատասխանում է ժուռնալիստի մտադրությանը, դեռևս երաշխիք չկա, որ գործը հաջողությամբ կպսակվի: Եթե հեղինակի մտադրությունը կենսազուրկ է և զերծ օրվա ջերմությունից, ապա թեման կանխավ համարեք ձախողված:

Որոշ ժուռնալիստներ չկարողանալով կատարելագործել իրենց պրոֆեսիոնալ վարպետությունը, պրակտիկայում կիրառում են հին մամուլի քարացած ձևերը և մաշված շաբլոնը: Նրանք մոռանում են, Չարենցի ասածը, որ.

Հինը հաճախ
Հանճարեղ անցքեր է ճարում,—
Եվ չկոտրես եթե այդ ռիթմը դավաճան —
Քեզ չի օգնի Լենինը — այս լենինյան դարում...

1905 թվականին Լենինը կազմել է «Նոր խնդիրներ և նոր ուժեր» հոդվածի պլանը (վեց փոփոխակներով), բայց դեպքերի ընթացքը թելադրել է փոխել դրանք: Հոդվածը պետք է ունենա, կարդում ենք Լենինի մոտ, ոչ թե «Հրատապ հարցը» վերնագիրը, այլ «Նոր խնդիրներ, նոր ուժեր»: Այստեղ կարդում ենք Լենինի ձեռքով գրած. «Հոդվածը չի մտածված, չի հասունացված: Դրա համար էլ խստորեն որոշ մտքի պարզ զարգացում չկա: Դա՝ թերթային հապ-

ձեպագրություններ, սխլուետներ, զրույցներ, մտքեր և նկատառումներ են, այլ ոչ հոդված։

Սեփական անձի նկատմամբ այս խստապահանջությունն առաջնորդի մոտ, մեր ժուռնալիստներին շատ բան է պարտավորեցնում։ Այստեղից բխում է նախ և առաջ, որ թեմայի արդիականությունը պետք է լիովին լծորդվի կոնկրետության հետ։ Թեմայի վերաբերյալ գործում բացառելով քմայքը, ժուռնալիստը պետք է առավելագույն կոնկրետությամբ հագեցնի հոդվածը։ Ընդհանուր տեղիների առատությունը, անտեղի կրկնությունները լավ թեմայի տապալման պատճառներն են։ Մինչ Լենինը սիրում էր քամել հոդվածի ջուրը (ընդհանուր դատողությունները, ծամծմված ֆրազները), թողնելով փաստերի տրամաբանական շարադրանքը, վերլուծությունը և հետևությունները։

Ժուռնալիստի ինքնության մեծագույն պաշտպանը և գնահատողը Լենինն էր։ Ինքնուրույնություն, ոճի յուրահատկություն, տոնի գունեղություն, մեղմ հումոր կամ շեշտված սարկազմ անբաժանելի են գրողի էությունից, որոնք Լենինի հայեցակետով՝ շատ արժեքավոր են։ Առարկելով Պլեխանովին, նա պնդում էր, թե ոչինչ վատ բան չկա, երբ հեղինակը յուրովի է արտահայտվում։ Թղթակիցների հոդվածները խմբագրելիս, Լենինը ձգտում էր պահպանել հեղինակի անհատականությունը, ինքնուրույն դեմքը, ոճի առանձնահատկությունները։ Նա մշտապես մտահոգված էր, որ տպագրվող հոդվածի երանգն ու ադը պահպանվի։ Ըստ որում, որքան հոդվածագրի լեզուն մոտ էր խոսակցական լեզվին, այնքան դա համարում էր առավելություն։

Լենին ժուռնալիստի հոդվածները համոզում են ընթերցողին խոր տրամաբանությամբ և վարակում գաղափարների հուզաթաթավությամբ։ Նյութի գրական անթերի մշակումը մեծապես դյուրացնում է նրա խոշորագույն մենագրությունների լարված ընթերցումը։

Ժուռնալիստը պարտավոր է սովորել անդադրում, որպեսզի կարողանա ընդարձակել իր տեսադաշտը գիտության և քաղաքական կյանքի նոր նվաճումներով։ Եվ վերջապես նա չպետք է ծուլանա ջանասիրությամբ կատարելագործելու իր անփոխարինելի զենքը՝ լեզուն։ Չէ որ առանց լավ լեզվի չկա լավ ժուռնալիստ։ Լեզվի կուլտուրան մտքի հարստության ցուցանիշներից մեկն է։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԸ ԴԱՌՆՈՒՄ Է ԿՅԱՆՔԻ ՏԻՐԱԿԱԼԸ

ՀՈՎՀ. ՀԱԿՈԲՅԱՆ

Սովետական ժողովուրդը պատմության մեջ առաջինն է իրականացնում
մարդկության ամենանվիրական երազանքը... Նա կառուցում է կոմունիզմ...
Բայց այն ինչ-որ հրաշքով չի տրվում... Գեղեցիկը մարդկային հասարակու-
թյան մեջ ստեղծվում է միլիոնավոր մարդկանց աշխատանքով։ Մեծ նպատակն
այնքան ավելի մոտ ու շոշափելի կլինի, որքան եռանդով աշխատի սովետա-
կան մարդը, որքան մեծ սիրով նա իր մտքի ու ձեռքի ուժը նվիրաբերի ընդ-
հանուր գործին։

Աշխատանքը մարդկային հասարակության ամեն մի հարստության ան-
սպառ աղբյուրն է։ Ինչպես նշում է Էնգելսը, «դա մարդկային ամբողջ կյանքի
առաջին հիմնական պայմանն է, և այն էլ այն աստիճան, որ մենք որոշ իմաս-
տով պիտի ասենք՝ հենց աշխատանքն է ստեղծել մարդուն» (Ֆ. Էնգելս,
«Բնության դիալեկտիկա», Հայպետհրատ, 1950 թ., էջ 185)։

Աշխատանքի զարգացումը անհրաժեշտաբար նպաստեց հասարակության
անդամների ավելի սերտ համախմբմանը։ Չէ՞ որ պայքարը սարսափելի քա-
րանձավային արջի դեմ, գիշատիչ գազանների որսը պահանջում էին կոլեկ-
տիվ ջանքեր։ Իսկ մարդը, բնության դեմ մղվող գոտեմարտում, միայն մարդու
մեջ կարող էր տեսնել իր զինակցին ու բարեկամին։ Այդ հասցրեց այն բա-
նին, որ առաջ եկավ միմյանց ինչ-որ բան ասելու պահանջ, որը և ստեղծեց իր
օրգանը՝ լեզուն։

Աշխատանքը մարդկային հասարակության կյանքի առաջին կենսական
պայմանն է։ Պատմությանը հայտնի է մի ժամանակաշրջան, երբ մարդիկ ապ-
րել են համատեղ։ Աշխատանքը եղել է ինչպես ամբողջ կոլեկտիվի, այնպես
էլ կոլեկտիվի ամեն մի անդամի գոյության միակ պայմանը։ Դա մարդկային
հասարակության արշալույսին էր, երբ մարդը կարող էր ահեղ բնությանը հա-
կադրել իր միավորման ուժը։ Ի՞նչը կարող էր այն ժամանակ ավելի սարսա-
փելի լինել, քան կոլեկտիվից զատվելը։ Գետին տապալված, գանահարված
գազանը մի իսկական խնդություն էր կոլեկտիվի համար, իսկ ցրտաշունչ օրե-
րին որսի հետևից ապարդյուն թափառումները՝ անիմանալի դժբախտություն։

Աշխատանքն իմաստնացնում է մարդուն։ Ջհղկված քարե գործիքներից
հետո նա հայտնագործեց դագանակն ու նիզակը, աղեղն ու նետը։ Նա սովորեց
պատրաստել փայտե ամանեղեն և բրուտություն անել, ընտելացնել վայրի
կենդանիներ և բույսեր մշակել, ջրանցքներ փորել ու տներ կառուցել, մետաղ
հալել ու ջուլհակության դազգահներ պատրաստել։ Աշխատանքն էլ սերնդից-
սերունդ դարձավ ավելի կատարյալ, ավելի բազմակողմանի, ավելի բարեբեր։

Եվ, վերջապես, մարդկությունը հասավ մի այնպիսի բարձունքի, երբ հնարավորություն ունեցավ ավելի շատ կորզել բնությունից, քան անհրաժեշտ էր ապրուստի համար։ «...Զարգացման այս աստիճանը,— նշում է էնգելսը,— հիմնականում հենց այն աստիճանն է, որի ժամանակ առաջ են գալիս աշխատանքի բաժանումը և փոխանակությունն առանձին անհատների միջև։ Սրանից հետո այլևս երկար չտևեց, մինչև որ գտնվեց այն մեծ «ճշմարտությունը», թե մարդն էլ կարող է ապրանք լինել, թե մարդկային ուժն էլ կարելի է փոխանակել և օգտագործել, եթե մարդուն ստրուկ դարձնես։ Մարդիկ հազիվ էին սկսել փոխանակությունը, երբ նրանք իրենք էլ փոխանակման առարկա դարձան։ Ակտիվ գործոնը վերածվեց պասսիվի, անկախ նրանից, թե մարդիկ այդ ուզում էին, թե ոչ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, «Ընտիր երկեր», Հայպետհրատ, հ. 2, էջ 415)։

Զրկվելով իր աշխատանքի պտուղներն անմիջականորեն ճաշակելու հաճույքից՝ մարդը զրկվեց նաև ստեղծարար աշխատանքի բերկրանքը վայելելու երջանկությունից։ Հասարակությունը բաժանվեց երկու հակադիր խմբերի՝ փոքրաթիվ տերերի և բազմամիլիոն ստրուկների։ Հասարակությունը սկսեց վեր տողալ շահամոլության զարիթափ կածաններով։

Բայց չէ՞ որ մարդիկ ստրուկներ ու տերեր չեն ծնվում։ Մարդը ձևավորվել, առնացել ու գեղեցկացել է բնության դեմ մղած իր նմանների համատեղ գոտեմարտերում։ Նա մարդկայնացել է այնքանով, որքանով զարգացել են նրա արտադրողական ուժերը։ Եվ մի՞թե նա, աշխատավոր մարդը, բնության այդ ըմբոստ զավակը կարող էր հնազանդորեն կրել արդեն իսկ մարդու կողմից ստեղծված գերության շղթաները։

Առաջինը սոցիալիստ ուտոպիստներն էին, որ մասնավոր սեփականության վերացման մեջ տեսան ազատ ստեղծարար աշխատանքի, անհատի ունակությունների բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման, ապագայի գեղեցիկ մարդու ձևավորման հիմնական պայմանը։ Նրանց երազած պետություններում չկա մասնավոր սեփականություն, չկան և պարապ սրիկաներ ու ձրիակերներ։ Այստեղ կյանքի միակ տիրակալը աշխատանքն է։ Սակայն նրանց մտքի աշխարհները նման էին անապատային տեսիլքի, որը բորբոքում էր մարդկանց ծարավը, բայց ցույց չէր տալիս իրական դրախտի ճշմարիտ ճանապարհը։

Մարդկությունը երկար դեգերում էր պատմության քառուղիներում, երբ ժամանակի կանչով ասպարեզ իջան երկու մեծ մարդիկ՝ Մարքսը և Էնգելսը, որոնք իրենց առաջ խնդիր դրին ո՛չ միայն բացատրել աշխարհը, այլև փոխել այն։ Եվ նրանք աշխատավոր մարդկության երազանքից հանճարեղորեն հյուսեցին ամենաարդարացին, կոմունիստական սկզբունքներով աշխարհը վերափոխելու միակ ճշմարիտ ուսմունքը։

Իսկ ո՞րն է այդ ուսմունքի էությունը։

Որպեսզի մարդն ազատ և երջանիկ ապրի, պետք է վերացնի մարդկանց թշնամացնող մասնավոր սեփականությունը, հասարակությունն իր տիրապետության տակ պետք է վերցնի արտադրության միջոցները։ «Հանրային արտադրության ներսում անարխիան փոխարինվում է պլանային գիտակցական կազմակերպությամբ։ Դադարում է կռիվը առանձին գոյության համար։ Մարդկանց շրջապատող և մինչև այժմ նրանց վրա իշխող կենսական պայմաններն այժմ ընկնում են մարդկանց իշխանության ու վերահսկողության տակ, որոնք



առաջին անգամ դառնում են բնության իսկական ու գիտակից հրամայողներ, որովհետև նրանք դառնում են իրենց հանրայնացված կյանքի տերը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 188)։ Իսկ որպեսզի նոր հասարակությունը մաքրվի հնի ախտերից և հեռու մնա վերասերվելու վտանգից, պետք է ունենա գոյության մեկ պայման — ով չի աշխատում, նա չպետք է ուտի։



Այդ ճշմարիտ ճանապարհով էր, որ մեծ Լենինը պատմության մեջ առաջինը Ռուսաստանի պրոլետարիատին առաջնորդեց գրոհի և հաղթանակեց։ Հազարամյակներ շարունակ բռնադատված աշխատանքի, աշխատավոր մարդու հաղթանակն էր այդ։ Դա միաժամանակ մարդկային նախապատմության ավարտն էր և նոր դարաշրջանի սկիզբը, որի առանցքը պետք է դառնա աշխատավոր մարդն իր հոգսերով և ուրախություններով, իր նյութական և հոգևոր պահանջմունքներով։

«Առաջ,— հայտարարեց Լենինը Սովետների երրորդ համագումարում,— ամբողջ մարդկային խելքը, նրա ամբողջ հանճարն ստեղծագործում էր միայն նրա համար, որպեսզի մի կարգ մարդկանց տա տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր բարիքները, իսկ մյուսներին զրկի ամենաանհրաժեշտից՝ լուսավորությունից ու զարգացումից։ Իսկ այժմ տեխնիկայի բոլոր հրաշքները, կուլտուրայի բոլոր հրաշքները, կուլտուրայի բոլոր նվաճումները դառնալու են համաժողովրդական սեփականություն, և այսուհետև մարդկային խելքն ու հանճարն էլ երբեք բռնության միջոցների չեն վերածվի։ Մենք այդ գիտենք,— և մի՞թե հանուն այդ մեծագույն պատմական խնդրի չարժե տալ բոլոր ուժերը։ Եվ աշխատավորները կկատարեն այդ տիտանական պատմական աշխատանքը, որովհետև նրանց մեջ են ամփոփված ռևոլյուցիայի, վերածնության ու վերանորոգության նիրհող մեծ ուժերը» (Երկեր, հ. 26, էջ 589—590)։

Սակայն մարդիկ միանգամից չկարողացան գիտակցել այդ հաղթանակի պատմական նշանակությունը։ Չէ՞ որ հազարամյակներ ուրիշի համար քաղցի ու կարիքի սպառնալիքի տակ աշխատելուց հետո առաջին անգամ էր հնարավորություն ստեղծվում աշխատելու իր զավակների, իր սեփական պետության համար։ Աշխատավոր մարդը նման էր շղթայված այն հսկային, որ հենց նոր էր դուրս եկել բանտի մութ խցից, բայց դեռևս չէր ընտելացել լույսին և դժվարությամբ էր նշմարում նոր, ազատ կյանքի, ինքնուրույն ստեղծագործության ճանապարհը։ Բայց որքա՜ն կարող էին ննջել գալիքի սերմերը, երբ հին աշխարհի ձնհալն արդեն սկսվել էր, և ազատության արևն ավելի ու ավելի էր ջերմացնում հողը։ Սերմերը պետք է ծիլեր տային, գալիքը պետք է ծնվեր։ Եվ այն ծնվեց։

Դա 1919 թվականի գարնանն էր։ Երկրում մոլեգնում էին տվն ու սառնամանիքը։ Սակայն Մոսկվա-Սորտիրովոչնայա դեպոյի մարդիկ բավականաչափ ուժ ու խիզախություն ունեցան աշխատանքի ժամերից դուրս, Արևելյան ռազմաճակատ ուղարկելու համար, վերանորոգելու երեք շոգեքարշ։ Նրանք այդ կատարեցին անվճար։ Ռուսաստանյան ֆեդերացիայի բոլոր աշխատավորներին ուղղված կոչը՝ կոմունիստական շաբաթօրյակներ կազմակերպելու, իրենց աշխատանքի մի մասն առանց փոխհատուցման բանվորա-գյուղացիական պետությանը տալու մասին, մեծ արձագանք գտավ։ Դա էլ հենց կոմունիզմի

առաջին ծիլն էր, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի առաջին վկայությունը։ Հենց այդպես էլ գնահատեց Լենինը բանվոր դասակարգի «մեծ նախաձեռնությունը»։ «Դա,— գրում է Լենինը,— Կոմունիզմի փաստական սկիզբն է»։

Քառասուն տարուց քիչ ավելի ժամանակ է մեզ բաժանում գարնանային այդ օրերից, բայց կոմունիստական աշխատանքի բոցը ո՛չ միայն չի մարել, այլ ընդգրկել է մեր ողջ երկիրը։ Սովետական հասարակությունը գտավ և գործողության մեջ դրեց աշխատանքի նոր շարժառիթներ, որոնց հիմքում ընկած են ոչ թե եսապաշտական բնազդները, այլ մարդու ստեղծագործական էությունը։ Սոցիալիստական մրցությունն ու հարվածայնությունը շատ կարճ ժամանակամիջոցում հսկայական բեկում մտցրին աշխատանքի նկատմամբ բանվորների և կոլտնտեսականների վերաբերմունքի մեջ։ Աշխատանքը դարձավ արիության, հերոսության, փառքի գործ։

Մեր Հայրենիքում առաջինը վառվեց սոցիալիզմի ջահը։

Սովորաբար, երբ խոսք է լինում սովետական ժողովրդի Հայրենական պատերազմի մասին, մենք գլուխ ենք խոնարհում զոհված հերոսների հիշատակի առաջ։ Բայց ո՞վ չգիտե, որ եթե չլիներ միլիոնների ազատ, ստեղծարար աշխատանքը, չէր գա և հաղթանակը։ Աշխատանքը ո՛չ միայն ստեղծարար, այլև ընդդիմադիր մեծ ուժ է։ Խաղաղ ժամանակվա լավագույն մարդկանց աշխատանքային նվաճումները բազմապատկվեցին փորձության օրերի հարվածայինների ու նորարարների ջանքերով։ Այստեղ է՛լ ավելի ցայտուն կերպով դրսևորվեց սովետական մարդկանց նոր, սոցիալիստական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։ Պատերազմն այն կայծքարն էր, որի վրա փորձվեց ազատագրված աշխատանքի կարծրությունը։ Եվ այն փայլատակեց մի նոր ուժով։

Պատերազմից հետո կյանքը նոր թափով ու գեղեցկությամբ սկսեց ծաղկել Հյուսիսի ու Հեռավոր Արևելքի, Սիբիրի ու Ղազախստանի անծայրածիր տարածություններում։ Սովետական գիտնականների միտքը ավելի խոր թափանցեց տիեզերքի ու ատոմի գաղտնիքների մեջ։ Ատոմը ի սպաս դրվեց մարդուն։ Դեպի տիեզերք սլացան սովետական առաջին լուսնագնացները։ Մեքենայական տեխնիկայի և էլեկտրոնիկայի զարգացումը նոր, հմայիչ հեռանկարներ բացեց աշխատանքային պրոցեսների հետագա ավտոմատացման, գալիք առատության համար։



Այն ժամանակ, երբ մեր երկրում անհետանում էր մասնավոր սեփականությունը, մեր թշնամիները չարախնդում էին.

— Սոցիալի՞զմ... դա ցնորք է։ Կարո՞ղ է արդյոք զարգանալ այն աշխարհը, ուր չքացել է մասնավոր շահը։

Պատմությունը հուսախաբեց թշնամիներին։ Սոցիալիզմը հաղթանակեց։ Իսկ հիմա, երբ օրակարգում է կոմունիզմը, հին եղանակով մի այլ երգ են մռլտում թշնամիները։

— Ո՞վ կաշխատի այն ժամանակ, երբ բարիքները բաշխվեն անվճար։

Բարեբախտաբար պատմությունը ոչ մեկի երգով էլ չի պարում։ Թշնամիներն այս անգամ ևս հուսախաբ կլինեն։ Քաղքենիական նախապաշար-



մունքներից չկուրացածը այսօր էլ կարող է տեսնել, որ սովետական մարդկանց համար աշխատանքը ո՛չ միայն գոյության միջոց է, այլև ներքին բավականության անսպառ աղբյուր։

«Կոմունիզմը,— նշում է Լենինը,— սոցիալիզմի զարգացման բարձրագույն աստիճանն է, երբ մարդիկ աշխատում են ընդհանուրի օգտին, աշխատելու անհրաժեշտության գիտակցության դրդմամբ»։ (Երկեր, հ. 30, էջ 244)։

Բայց այսօր կարո՞ղ ենք արդյոք ասել, որ աշխատանքը մեզ մոտ դարձել է հասարակության բոլոր անդամների կենսական պահանջմունքը։ Իհարկե, ոչ։ Որպեսզի դա լինի, մեզ անհրաժեշտ է ունենալ հարուստ նյութա-տեխնիկական բազա։ Սովետական ժողովուրդը մեծ հաջողությամբ կառուցում է դա։

Մենք պետք է ստեղծենք բոլոր պայմանները,— նշում է ընկեր Խրուշչովը,— որպեսզի յուրաքանչյուր մարդու աշխատանքը դառնա բարձր արտադրողական և միաժամանակ բերկրալի, որպեսզի յուրաքանչյուրն զգա աշխատելու պահանջ։

Իսկ ո՞րն է գլխավորն այդ պրոցեսում։ Ամենից առաջ՝ աշխատանքի բնույթի և նրա պայմանների փոփոխումը։ Չէ՞ որ երբեք էլ ֆիզիկական ծանր, հոգնեցնող աշխատանքը չի կարող հաճելի լինել։ Նշանակում է, որպեսզի «յուրաքանչյուրն զգա աշխատելու պահանջը», առաջին հերթին պետք է բարելավել աշխատանքի պայմանները։ Իսկ ինչպե՞ս։ Լենինն ասում էր, որ Սովետական իշխանությունը չի կարող բանվորների նկատմամբ վերաբերվել այնպես, ինչպես կապիտալիստները, որոնք սովի ու մահակի սպառնալիքով բանվորներին քշում էին առողջության համար վնասակար, ծանր, հյուծող աշխատանքի։ Նշելով հատկապես տորֆամշակման աշխատանքի ծանր պայմանները, Լենինը խնդիր էր դնում մեքենաների ամենալայն կիրառման միջոցով արմատապես թեթևացնել աշխատանքը ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում։

Այն, ինչի մասին երազում էր Լենինը, վաղուց արդեն իրականություն է դարձել մեր երկրում։ Այսօր արդեն աշխատանքային առանձին պրոցեսների մեքենայացմանը փոխարինելու են գալիս արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, որը նշանավորում է նոր հեղաշրջում աշխատանքի բնույթի և նրա պայմանների մեջ։ Եվ, իսկապես, ի՞նչ համեմատություն կարող է լինել այսօրվա էքսկավատորավարի և երեկվա հողափորի, երեկվա հնձվորի և այսօրվա կոմբայնավարի, այսօրվա ղեկավարման վահանակի մոտ կանգնած մասնագետի և երեկվա ձուլող բանվորի աշխատանքի բնույթի և պայմանների միջև։

Դեռևս դժվար է ասել, թե մեզ մոտ ամենուրեք է աշխատանքը դարձել թեթև ու բերկրալի, բայց կարևորն այն է, որ արագ քայլերով մենք գնում ենք այդ ուղիով։ Արդեն այս յոթնամյակում խնդիր է դրված արդյունաբերության բոլոր ճյուղերում ավարտել կոմպլեքսային մեքենայացումը և ավելի լայնորեն ավտոմատացնել արտադրական պրոցեսները։ Հեռու չէ այն ժամանակը, երբ մարդը, դառնալով մեքենաների հրամանատարը, ավելի քիչ ժամանակ և ուժ կծախսի իր գոյության միջոցների արտադրության վրա։ Սա նոր տեխնիկայի շատ էական, բայց միակ առավելությունը չէ։

Արտադրության նոր միջոցները և հների կատարելագործումը թեթևացնելով աշխատանքը, միաժամանակ մարդուց պահանջում են աշխատանքային նոր ընտելություններ, նոր փորձ, իր ունակությունների նոր դրսևորումներ։ Կատարելագործելով արտադրության միջոցները, մարդը կատարելագործում

է և իրեն։ Եթե մեքենայական հին տեխնիկայի բանեցման համար բավարար նախադրյալներ կարող էին լինել ֆիզիկական և նյարդային կոփվածությունը, ապա արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը աշխատողից պահանջում են գիտելիքների ավելի մեծ պաշար, հոգեկան ավելի հղկված կուլտուրա, գործի նկատմամբ բարձր, գիտակցական վերաբերմունք։ Այսպես, ավտոմատ հաստոցի կամ գծի վրա աշխատողից այսօր պահանջվում է ո՛չ միայն լավ գիտենալ առանձին մեքենայի կառուցվածքը, այլև մեքենաների խմբի ներդաշնակ աշխատանքի սկզբունքները, նրա էներգոսնման գծագիրը, նախնական նյութի վերափոխման աստիճանականությունը և շատ այլ բաներ։

Բեռնաթափելով ձեռքերը, տեխնիկական առաջադիմությունը ծանրաբեռնում է միտքը, խթանում, արագացնում է բանվորի մտավոր զարգացումը։ Բայց դրա համար անհրաժեշտ է նաև հասարակության օգնությունը։ Սոցիալիզմի ամենահոյակապ նվաճումներից մեկը ժողովրդական մասսաների կուլտուրայի աննախընթաց վերելքն է։ Այժմ, ՍՍՌՄ-ում ֆիզիկական աշխատանքով զբաղվողների 32 տոկոսն ունեն միջնակարգ կամ բարձրագույն կրթություն, իսկ միայն մտավոր աշխատանքով զբաղված մարդկանց թիվը գերազանցում է 20 միլիոնից։ Մի՞թե այս փաստերը համոզիչ կերպով չեն խոսում այն մասին, որ «Մեզ մոտ արդեն կան շոշափելի նվաճումներ ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև էական տարբերությունների աստիճանական վերացման գործում» (Ն. Ս. Խրուշչով)։

Բայց մի՞թե բանվորի և մտավորականի աշխատանքների միջև եղած էական տարբերությունների վերացումը կարող է լուծվել միայն հասարակության մեջ կրթված ու կուլտուրական մարդկանց քանակական աճով։

Կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը պահանջում են աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ, որոնք իրենց հերթին որակական փոփոխություններ են առաջացնում բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ կազմում։ Այսօր արդեն ֆիզիկական մեծ լարում պահանջող շատ մասնագիտություններ իրենց տեղը զիջել են նոր մասնագիտությունների, որոնք աշխատողից պահանջում են ոչ այնքան ֆիզիկական լարում, որքան գիտելիքներ, մեքենաներից առավելագույն օգուտ քաղելու ունակություններ։ Բայց մի՞թե այս նշանակում է, որ մենք գնում ենք ֆիզիկական աշխատանքը մարդկային հասարակության կյանքից ընդհանրապես դուրս մղելու ուղիով։ Առանց ձեռքերի, կոմունիզմի օրոք էլ հնարավոր չի լինի սարքի գցել կամ վերանորոգել մեքենան, աշխատանքի ծրագիր տալ ավտոմատ հաստոցներին կամ քանդակել. բայց այստեղ արդեն դժվար կլինի որոշել, թե որտե՞ղ է վերջանում մտքի տիրապետությունը, և որտե՞ղ է սկսվում ձեռքի աշխատանքը։ Մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացումը ֆիզիկական և մտավոր աշխատանքների աստիճանական զուգակցման պրոցես է, առանց որի աներևակայելի է մարդու բազմակողմանի, ներդաշնակ զարգացումը։

Անցյալում կարճատեսությունը մտավորականի, իսկ սապատը՝ արհեստավորի ուղեկիցներն էին կյանքում։ Այսօր էլ բժշկության մեջ գործածական է, այսպես կոչված, պրոֆեսիոնալ հիվանդություն հասկացությունը, որի միակ հարուցիչը եղել և մնում է մարդու գամվածությունը մի մշտական զբաղմունքի։ Դեռևս Սովետական իշխանության առաջին տարիներին Լենինը նշում էր, որ ապագայում կիրականացվի անցումը «...մարդկանց միջև աշխատանքի



բաժանման վերացմանը, բազմակողմանի զարգացած ու բազմակողմանի պատրաստված մարդկանց դաստիարակությանը, ուսուցմանը և պատրաստմանը, որոնք կարողանում են ամեն ինչ անել։ Դեպի այդ է գնում կոմունիզմը, պետք է գնա և կհասնի, բայց միայն մի շարք երկար տարիների ընթացքում» (Երկեր, հատոր 31, էջ 42)։

Նոր տեխնիկայի և աշխատանքի կազմակերպման կոմպլեքսային ձևերը այսօր արդեն այնքան են ընդլայնել մարդու արտադրական գործունեության շրջանակները, որ անհրաժեշտություն է դարձել մի քանի հարակից մասնագիտությունների յուրացումն ու զուգակցումը։ Հիմա արդեն եզակի չեն դեպքերը, երբ, ասենք, տրակտորիստը համատեղում է կոմբայնավարի, խառատի, ավտովարորդի, մեխանիկի գործը։ Աշխատանքի հերթափոխումը, օրվա ընթացքում աշխատանքային մի գործողությունից մյուսին, ավելի ծանրից թեթևին, քիչ հետաքրքրից գրավիչին անցնելը թարմացնում է մարդու կենսական ուժերը, աշխատանքը դարձնում բարձր արտադրողական ու հաճելի։

Բայց մի՞թե սա նշանակում է, որ կոմունիզմի օրոք մարդը կմանրատվի, կփոշիանա ամենատարբեր զբաղմունքների միջև, կամ, ինչպես սիրում են բարբաջել բուրժուական իդեոլոգները՝ մարդը կկորցնի իր անհատականությունը։

Ինչպես հայտնի է, մարդու կյանքը դեռևս բավականաչափ տևական չէ, որպեսզի տեխնիկայի և գիտության զարգացման ներկա պայմաններում նա կարողանա միաժամանակ մասնագիտանալ արտադրության ու գիտության թեկուզ և մի քանի ճյուղերում։ Իսկ կոմունիզմի ժամանակ ավելի քան երբևէ կաճի մասնագիտացման դերն ու նշանակությունը։ Բայց դա արդեն չի կարող մարդուն դատապարտել միօրինակության։ Ուսման մերձեցումը կյանքին, միջնակարգ և բարձրագույն հեռակա կրթությունը, բրիգադային և անհատական ուսուցման ամենատարբեր ձևերը, առաջավոր փորձի դպրոցները ապահովում են անհատի յուրօրինակ առանձնահատկությունների, ճաշակի ու նախասիրությունների այնպիսի բազմերանգ դրսևորում, որ մարդը ոչ հեռավոր ապագայում արդեն չի ճանաչի ըստ իր ընդունակությունների ու հակումների կյանքում իր տեղը որոշելու ոչ մի սահմանափակում։ Այսօր արդեն ուսուցման բոլոր ձևերում մեր երկրում ընդգրկված է ավելի քան 52 միլիոն մարդ, այսինքն՝ սովետական յուրաքանչյուր չորս մարդուց մեկը սովորում է։

Տեխնիկական առաջադիմությունը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը սոցիալիզմի պայմաններում մի նոր բարիք էլ են բերում մարդուն։ Տնտեսական անհրաժեշտություն է դառնում աշխատանքային օրվա կրճատումը՝ առանց աշխատավարձի կրճատման։ Չէ՞ որ աշխատանքի արտադրողականության անընդհատ աճող տեմպերը կարող են հանգեցնել մարդկային ուժի անգործության, եթե անփոփոխ մնա աշխատանքային օրը։ Արդեն անցած տարի մեզ մոտ ավարտվեց բանվորների և ծառայողների անցումը յոթ և վեցժամյա աշխատանքային օրվա։ Եկող տարվանից մեր երկրում կսահմանվի 40-ժամյա բանվորական շաբաթ, յոթժամյա աշխատանքային օր ունեցող բանվորների ու ծառայողների համար, իսկ 1964 թվականից կսկսվի բանվորների ու ծառայողների փոխադրումը 30—35-ժամյա բանվորական շաբաթի։ Կոմունիզմի ուղիով մեր հետագա առաջընթացը ենթադրում է աշխատանքային օրվա հետագա նվազում մինչև 3—4 ժամվա։

Իսկ ի՞նչ է նշանակում այդ։ Մարքսը նշում է, որ կոմունիզմի օրոք հասա-

րակության հարստությունը կչափվի ոչ թե աշխատանքին տրված, այլ ազատ
ժամանակով: Սակայն, ինչպես նյութական բարիքների առատության ստեղ-
ծումը, այնպես էլ աշխատանքային կարճ օրը չի կարելի դիտել որպես կոմու-
նիստական հասարակության նպատակ: Կոմունիզմի կիզակետը մարդն է, իսկ
նրա բարձրագույն նպատակը մարդու ազատագրումն է այն բոլոր արտաքին
արգելքներից, որոնք կարող են խոչընդոտել նրա հակումների բազմակողմանի
զարգացումը: Ազատ ժամանակը այն «իսկական հարստությունն է», որ սո-
ցիալիզմը տրամադրում է ոչ թե նրջանիկ ընտրյալներին, այլ բոլոր մարդ-
կանց՝ ուսման, որակավորման բարձրացման, հաճելի հանգստի, գեղարվես-
տական ճաշակի զարգացման համար: Այս խնդրի իրականացմանն են ծառա-
յում մեր երկրում ստեղծված տասնյակ հազարավոր կուլտուրայի տներն ու
ակումբները, սպորտային կառույցներն ու կուլտուրայի համալսարանները:
Սովետական մարդը այսօր արդեն ներքին պահանջ է զգում ո՛չ միայն ըն-
կալելու, այլև վերարտադրելու կուլտուրական արժեքներ: Այդ մասին են վկա-
յում միայն սովետական արհմիությունների գծով գործող ավելի քան 200 հա-
զար գեղարվեստական կոլեկտիվները, մեր հիանալի ժողովրդական թատրոն-
ները, ինքնուս ստեղծագործողների բազմահազարանոց բանակը:

Կոմունիզմի օրոք լայնահուն գետի նման կհորդեն ո՛չ միայն նյութա-
կան, այլև հոգևոր բարիքները, որովհետև նա իր հոսքը կսկսի ժողովրդական
ամենահոծ զանգվածների ստեղծագործական ակունքներից: Այն ժամանակ
մարդիկ ըստ իրենց պահանջմունքների կստանան ո՛չ միայն նյութական, այլև
հոգևոր բարիքներ:

***

Մենք խոսեցինք աշխատանքը մարդու առաջին կենսական պահանջ
դարձնելու օբյեկտիվ պայմանների մասին: Այս առումով կարելի է ասել՝
կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը գալիքի տեխնիկան են,
կոմունիզմի տեխնիկան: Սակայն կարող են առարկողներ գտնվել: Չէ՞ որ
մեքենան մարդ չէ և այն նույնպիսի արդյունավետությամբ կարող է գործել
թե՛ սոցիալիստական և թե՛ կապիտալիստական ձեռնարկություններում: Ար-
դյոք այդ նույն տեխնիկան չի՞ կարող ժամանակի ընթացքում, աստիճանաբար
կապիտալիստական հասարակարգը փոխարինել սոցիալիստականով: Իհարկե,
ոչ: Բանն այն է, որ կապիտալիստական առաջավոր երկրներում կոմպլեքսային
մեքենայացումն ու ավտոմատացումը վաղուց արդեն պատշաճ տեղ են գրա-
վում արտադրության մեջ: Արդյունաբերության մի շարք ճյուղերում, թերևս,
նրա մակարդակն ավելի բարձր է, քան մեզ մոտ, բայց մինչև այժմ կապիտա-
լիստական երկրներում սոցիալիստական զարգացման տարրեր չեն նկատվել և
չեն էլ կարող նկատվել: Մեքենան, իր բոլոր առավելություններով հանդերձ,
կապիտալիստի համար շահութաբերության աղբյուր է: Այստեղ ոչ թե մեքե-
նան է ծառայում մարդուն, այլ մարդը՝ մեքենային, որի պատճառով էլ այն
վեր է ածվում հասարակությանը թշնամի ուժի:

Ավտոմատացումը կապիտալի աշխարհում փողոց է նետում տասնյակ
միլիոնավոր մարդկանց, նրանց զրկելով ամենաէականից, ամենամարդկա-
յինից՝ աշխատելու և ստեղծագործելու հնարավորությունից: Այսօր միայն
Ամերիկայի Միացյալ Նահանգներում աննպատակ թափառում են 5,5 միլիոն



գործազուրկներ: Երբ Սովետական Միությունում հյուրընկալվող ԱՄՆ-ի
Արևմտյան ծովափի նավահանգստային բեռնակիրների ու պահեստային բան-
վորների արհմիության դելեգացիայի ղեկավար Լ. Հոլդբլատին հարցրին, թե
ինչպես է աշխատանքի մեքենայացման գործը ԱՄՆ-ի նավահանգիստներում,
նա պատասխանեց.

— Շատ բարդ է, մենք պայքար ենք մղում մեքենայացման և ավտոմա-
տացման դեմ ոչ թե նրա համար, որ մեզ դուր չեն գալիս մեքենաները: Դոկեր-
ները նոր մեքենաների մեջ տեսնում են իրենց թշնամիներին ոչ թե նրա համար,
որ սիրում են ծանր աշխատանքը, բայց ավելի լավ է ունենալ ծանր աշխա-
տանք, քան բոլորովին չունենալ և կանգնել գործազրկության նպաստի
հերթում:

Իսկ ի՞նչ է տեղի ունենում մեզ մոտ՝ Սովետական Միությունում՝ նույնպես
պայքար: Պայքար մեքենայացման և ավտոմատացման յոթնամյա առաջա-
դրանքները ժամկետից շուտ կատարելու համար, որի բովում ամեն օր, ամեն
ժամ ծնվում են նորարարական շարժման նոր, հիանալի առաջամարտիկներ:
Միայն անցած տարի նրանց ստեղծագործական ջանքերով արտադրության մեջ
ներդրվեցին ավելի քան 2 միլիոն 500 հազար գյուտեր ու ռացիոնալիզատորա-
կան առաջարկություններ:

Տեխնիկական զարգացման համարյա միևնույն մակարդակի վրա կանգ-
նած երկու աշխարհ՝ երկու իրարամերժ պատկեր:

Այս համեմատությունները մեզ բերում են այն համոզման, որ տեխնի-
կան որքան էլ զորեղ լինի, ամենակարող չէ: Տեխնիկան միայն հնարավո-
րություն է, որը իրականություն դառնալու համար սպասում է մարդու վճռա-
կան խոսքին: Ահա թե ինչու աշխատանքն առաջին կենսական պահանջի
վերածվելու օբյեկտիվ պայմանների հետ միասին պետք է գոյություն ունե-
նան նաև սուբյեկտիվ նախադրյալներ: Այս հարցում որոշիչ նշանակություն
ունի, թե մարդն ո՞ւմ շահերից ելնելով է կատարել այս կամ այն արարքը,
հանուն ինչի՞ է կատարել այն, և ինչպիսի՞ նպատակի է հասել:

Սովետական մարդկանց բարձրագույն նպատակը կոմունիզմն է, հետևա-
բար նրա կառուցման սուբյեկտիվ նախադրյալը կարող է լինել հասարակու-
թյան բոլոր անդամների մոտ աշխատանքի կոմունիստական շարժառիթների
արմատավորումն ու զարգացումը: Ի՞նչ է նշանակում այս: Դա առաջին հեր-
թին մարդկանց կողմից հասարակության օգտին աշխատելու անհրաժեշտու-
թյան գիտակցումն է: Սովետական մարդիկ անցել են սոցիալիզմի կառուցման
մեծ և փառավոր ուղի, մեր իրականության մեջ քիչ չեն այնպիսիները, որոնց
մեջ այսօր արդեն մենք կարող ենք տեսնել ապագայի մարդու ձևավորված
հոգեբանությունը:

Մի անգամ Սոցիալիստական Աշխատանքի կրկնակի Հերոս, էլեկտրազո-
դող Ալեքսեյ Ուլեսովը ստացավ այսպիսի մի նամակ:

«Իմանալով ձեր մասին թերթերից,— գրում էր անծանոթը,— ես վեր-
ջերս կարդացի ձեր «Ուղիներ-ճամփաներ» գիրքը: Ինձ համար աչքի ընկավ
այն, որ դուք շատ-շատ եք աշխատում: Հիմա, ինչպես իմացա, դեռ երեկոներն
էլ սովորում եք: Ամեն ինչ ձեզ մոտ գործեր են, գործեր, հոգսեր ու հոգսեր:
Ասացեք ազնվորեն և ուղղակի՝ երջանի՞կ եք դուք իսկապես»:

— Տարօրինակ զգացում առաջացրեց այդ նամակն իմ մեջ,— գրում է

Ալեքսեյ Ուլեսովը,— երջանի՞կ եմ ես արդյոք։ Կպատասխանեմ այնպես, ինչպես պահանջում է նամակի հեղինակը—ազնվորեն և ուղղակի։

Այո՛, ես երջանիկ եմ, խորապես երջանիկ։ Ճիշտ է, ինձ համար դժվար է երբեմն որոշել, թե որտեղ է վերջանում այն անձնականը, որի մասին խոսվում է նամակում, և որտեղ է սկսվում հասարակականը, մերը, կոլեկտիվը։ Համենայն դեպս ես երբեք չեմ փնտրել երջանկության իմ ինչ-որ հատուկ, անձնական կածանը։ Այն ժամանակներից, երբ ես հիշում եմ ինձ, ես միշտ էլ եղել եմ ժողովրդի հետ, նրա հետ՝ աշխատանքում և պայքարում եմ ես նվաճել իմ երջանկությունը։

— Ազնվորեն և ուղղակի ասած,— գրում է Ալեքսեյ Ուլեսովը,— իմ լավագույն երազանքները կապված են եղել աշխատանքի հետ, երկրի, իմ ժողովրդի համար ինչ-որ մեծ, նշանակալից բան անելու ցանկության հետ։ Ահա թե էլի ես ինչ պետք է նշեմ՝ այդ ցանկությունը բխում է սրտից։ ...Եվ, եթե դու քո փոքրիկ գործի հետևում տեսնես մեծ նպատակը, նրա մեջ զգաս մեծ իմաստ, այն ժամանակ ամենահասարակ թվացող աշխատանքը ընդունակ կլինի քո մեջ վառելու ստեղծագործական կրակ։ Աշխատանքը կդառնա ցանկալի և սիրելի, այն կհամակի և՛ մտքերը, և՛ հոգին։ Դա էլ հենց իսկական բերկրանքն է՝ ստեղծագործության բերկրանքը» («Պրավդա», 4 նոյեմբերի, 1959 թ.)։

Թերևս Ալեքսեյ Ուլեսովի նամակից մեջբերումը բավականին ընդարձակ ստացվեց, բայց դժվար թե հաջողվի որևէ հոդվածագրի այդքան սեղմ, այդքան ազդեցիկ պատկերացում տալ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, նրա շարժառիթների մասին։

Մեծ նպատակը մեծ եռանդ է ծնում... Հենց դրանում է մեր ժամանակի իմաստը։ Արդիականությունը սովետական մարդուն ներքաշում է այնտեղ, ուր ամենից վառ կերպով է դրսևորվում կոմունիստական գալիքի մշտական ձգտումը՝ միևնույնն է այդ կլինի կոլտնտեսային ֆերմա, թե տիեզերքը։ Հենց այդ ձգտումն էլ թույլ չի տալիս, որ մարդը մանրանա, ամփոփվի իր պատյանում։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը շարժման մեջ դրեց նոր ուժեր, խթանեց աշխատանքի բարոյական, կոմունիստական ազդակները, ծնեց աշխատանքի նոր, կոմունիստական ձևեր։

Այսօր սովետական ժողովրդի պարծանքն է կոմունիստական աշխատանքի բրիգադաների, տեղամասերի, ֆաբրիկաների ու գործարանների համար ծավալված շարժումը։ Այս շարժման առաջին պայմանն այն է, որ մարդիկ այն աստիճան յուրացնեն ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումները, որ հնարավորություն ունենան անընդհատ կատարելագործելու իրենց աշխատանքը, անշեղորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։ Չէ՞ որ աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումը նոր հասարակարգի հաղթանակի ամենավճռական պայմանն է։ Այստեղ նորը այն է, որ տեխնիկայի և գիտության նվաճումների հիման վրա աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարը զուգակցվում է նոր մարդու՝ մտածող, ստեղծագործող, բարձր ձգտումների մարդու դաստիարակության հետ։ Ի մի ձուլելով աշխատանքը, կրթությունն ու կենցաղը, կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժումը հսկայական ներգործություն է ունենում կյանքի և մարդու գործունեության բոլոր կողմերի վրա։

Մեր հասարակության մեջ գնալով հինն իրեն ավելի քիչ է զգացնել տալիս, գնալով ավելի փարթամորեն է ծավալվում կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների շարժումը։ Այն այսօր իր մեջ ընդգրկում է 8 միլիոն աշխատավորներ։ Մեր ժողովուրդը կոմունիստական աշխատանքի շարժման մասնակիցներին արժանացրել է «Ապագայի պիոներներ» պատվավոր կոչմանը։ Նրանք այն մարդիկ են, որոնք «այսօրվա» մեջ հաստատում են մեր «վաղվա» աշխատանքի նորմաները, բարոյականության ու կենցաղի նորմաները։ Անհրաժեշտ է հարաճուն ուշադրության արժանացնել, ջերմ հոգատարությամբ ողողել կոմունիստական աշխատանքի բրիգադաներն ու հարվածայիններին, որպեսզի ավելի սրընթաց մոտենա կոմունիստական գալիքը։

***

Սակայն սովետական ժողովուրդը լավ գիտակցում է, որ անցյալի փոշին դեռևս կա մեր կյանքում։ Խոսքն այստեղ նրանց մասին է, ովքեր չեն աշխատում, բայց ուտում են և նրանց մասին, ովքեր սիրում են քիչ աշխատել, բայց լավ ապրել։ Թերևս նրանք քիչ են, բայց նրանց պատճառած վնասը մեծ է։

Դեռևս իր ժամանակին ֆրանսիական փիլիսոփա Ռուսսոն դիպուկ նկատել է. «Ամեն մի պարապ քաղաքացին գող է»։ Պորտաբույծը կողոպտում է հասարակությանը, որովհետև ոչինչ չստեղծելով տզրուկի նման ծծում է ուրիշների կամ հենց իր մերձավորների ստեղծած բարիքները։ Նա հասարակությունից գողանում է նաև մի այլ առումով։ Նա խեղդամահ է անում այն լավագույնը, մարդկայինը, որ կա իր մեջ, որպես մարդու, որ կարող էր օգուտ բերել մարդկանց, հասարակությանը։ Բայց դա դեռ բոլորը չէ։ Չէ՞ որ միայն անբանության հոտած մթնոլորտում կարող են բազմանալ սրիկայության ու այլասերվածության մանրէները։

Մեր երկրում շահագործող դասակարգերի վերացման հետ միասին, ոչնչացվել է պորտաբուծության սոցիալական հողը։ Բայց որոշ մարդկանց գիտակցության մեջ դեռևս կենդանի է հին աշխարհի «Ամեն մեկն իր համար, աստված բոլորի համար» անիծյալ կանոնը։ Այստեղից է, որ մեր իրականության մեջ ծնվում են մարդկային բոլոր այլանդակություններն ու արատները։ Նրանք կենսունակ են, ոչնչացման ամենօրյա վտանգի տակ նրանք հարմարվում են, ձևափոխվում, քողարկվում։ Պորտաբույծներն իրենց որջից դուրս են սողում միայն այն ժամանակ, երբ հույս ունեն, որ անվտանգ կմնան։ Նշանակում է՝ գործն այնպես պետք է կազմակերպել, որ նրանք ընդմիշտ կորցնեն իրենց հանգիստը, տեղ չգտնեն մեր հասարակության մեջ։ Նրանց դեմ պայքարը մեր ողջ հասարակության, մեզնից յուրաքանչյուրի պարտքն է։

Երբ խոսք է լինում պորտաբույծների մասին, մարդիկ սովորաբար պատկերացնում են փողոցներն աննպատակ չափչփող դիպլոմավոր կամ անդիպլոմ անբան երիտասարդների, կամ խանութների ու շուկաների շեմերը մաշող սպեկուլյանտների, սակայն մոռանում են նրանց, ովքեր իրենց գրպանում կրում են աշխատանքային գրքույկ, բայց ապրում են իրենց աշխատանքային ընկերների հաշվին, կամ չեն խորշում ձեռք մեկնելու համաժողովրդական ունեցվածքին։

Երևանի բրդյա նուրբ գործվածքեղենի կոմբինատի մի խումբ աշխատողներ անցած տարի կոչ արեցին ռեսպուբլիկայի արդյունաբերության ձեռնարկությունների աշխատողներին՝ բոլոր միջոցներով ու միասնական ջանքերով

պայքարել կոլեկտիվներում դեռևս գոյություն ունեցող լոդրերի, սիմուլյանտների, պորտաբույծների դեմ։ Նրանք իրենց նամակում գրում են պորտաբույծների նաև մի այլ կատեգորիայի մասին, «...որոնք, չնայած իրենց անվան դիմաց բացակա չունեն, բայց առավոտյան ուշ են գալիս աշխատանքի և շատ շուտ էլ գնում են։ Բայց չէ՞ որ մենք պայքարում ենք լիարժեք վայրկյանի համար, իսկ նրանք օգնելու փոխարեն խանգարում են, գցում կոլեկտիվի պատիվը»։

Սովետական հասարակայնությունը այդպիսիների առաջ կտրուկ է դնում հարցը։

— Ուզո՞ւմ եք լավ ապրել, ուրեմն, պետք է լավ աշխատել, իսկ ով լավ չի աշխատում, բայց մտածում է լավ ապրել, գոփել ժողովրդին, նա պորտաբույծ է, խորթ տարր։

Ընկեր Խրուշչովը մի առիթով սովետական աշխատավոր մարդկանց համեմատում է ժրաջան մեղուների հետ։ Իսկ գիտե՞ն արդյոք պորտաբույծները, թե ինչպես են վարվում մեղուները բոռերի՝ իրենց ընտանիքի այն անդամների հետ, որոնք նեկտար չեն բերում, բայց խժռում են կուտակածը։ Սոցիալիստական հասարակությունը այդպես չի դնում հարցը, որովհետև մարդը որքան էլ վատ լինի բոռից, նա զգացող, դատող, բանական արարած է, նա ենթակա է վերափոխման։ Իսկ եթե նա շարունակում է արհամարհել աշխատանքը, խուլ ու համր մնալով շրջապատի, կոլեկտիվի, հասարակության ձայնին, նա մեկուսացնում է իրեն, դատապարտում բարոյական կործանման, որն ավելի ողբերգական է, քան ֆիզիկական մահը։

— Ընդհանուրից դուրս մի՛ փնտրիր ոչինչ... Դու կարող ես երջանիկ լինել, երբ երջանիկ են բոլորը,— այս է մեր հասարակության պատվիրանը։

Մեր ձեռքերով, բնությունը հնազանդեցնող մեր բանականության ուժով մենք կառուցում ենք կոմունիզմ՝ ազատ, գիտակից, բազմակողմանիորեն զարգացած մարդկանց լուսավոր աշխարհը։ Մենք ստեղծում ենք առատության աշխարհը, որտեղ աշխատանքն է մեր կյանքի տիրակալը։

Փա՜ռք աշխատանքին։

---

# ԿՈՐԾԱՆՎՈՂ ԳԱՂՈՒԹԱԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ

## Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին։ «Արդի դարաշրջանում մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, գլխավոր ուղղությունը և գլխավոր առանձնահատկությունները,— ասված է Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարության մեջ,— որոշվում են համաշխարհային սոցիալիստական սիստեմով, իմպերիալիզմի դեմ, հասարակության սոցիալիստական վերակառուցման համար պայքարող ուժերով»։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ կապիտալիզմի փոխարինումը սոցիալիզմով մի ամբողջ պատմական դարաշրջան է, որը ռևոլյուցիոն այլ պրոցեսների հետ մեկտեղ իր մեջ ընդգրկում է մի ամբողջ շարք դեմոկրատական ու ռևոլյուցիոն, այդ թվում ազգային-ազատագրական շարժումներ չզարգացած, հետամնաց և ճնշված ազգերի մեջ (Երկեր, հ. 23, էջ 67)։ Այժմ հենց տեղի է ունենում այն, ինչի մասին գրել է Լենինը։ Սոցիալիզմը հաղթանակել է Եվրոպայի և Ասիայի մեկ միլիարդ բնակչություն ունեցող մի շարք երկրներում, հզոր ազգային-ազատագրական շարժում է ծավալվել Արևելքում։ Այդ շարժումը պատմական հաղթանակներ է տարել։ Արդեն մոտ մեկ ու կես միլիարդ մարդ թոթափել է գաղութային ստրկության լուծը։ 1945 թվականից հետո Ասիայում և Աֆրիկայում առաջ են եկել մոտավորապես 40 նոր սուվերեն պետություններ։ Մարդկության համար սկսվել է պատմական մի ժամանակաշրջան, երբ Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ազատագրված ժողովուրդները ելել են ինքնուրույն ստեղծագործության, ակտիվորեն մասնակցում են համաշխարհային քաղաքականությանը։ «Ազգային-ազատագրական շարժման գրոհի տակ գաղութային ստրկության սիստեմի կործանումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումից հետո իր պատմական նշանակությամբ երկրորդ երևույթն է»։

Կապիտալիզմը ցավագար գալարումների մեջ փորձում է գաղութային շահագործման նոր մեթոդներ կիրառել, վերանայել իրենց սպառած շատ դոգմաներ, ելք գտնել ստեղծված ծանր կացությունից։ Կապիտալիզմի ոչ անհայտ ստրատեգներից Չեստեր Բոուլզը, որը Քեննեդիի կառավարության մեջ գրավում է Պետական քարտուղարի տեղակալի պաշտոնը, և որը Արևելքի երկրների նկատմամբ ավելի ճկուն քաղաքականության կոչ է անում, խոստովանել է. «այն ժամանակները, երբ արևմտյան տերությունները կարող

էին ստիպել Ասիայի ճնշված ժողովուրդներին ենթարկվել իրենց դիկտատին, անցել են անցյալի գիրկը, անհետացել են ամբողջ աշխարհամասն ընդգրկած ռևոլյուցիայի կրակի ու ծխի մեջ»։

Հիրավի, պատմությունն արդեն կայացրել է իր դատավճիռը գաղութակալության նկատմամբ։ Գաղութարարների ոչ մի խորամանկում, ոչ մի փորձ չի կարող կանգնեցնել գաղութային շահագործման խայտառակ սիստեմի վերջնական վերացման և բոլոր ժողովուրդների ազատագրության պրոցեսը։ Գաղութակալության կործանումն անխուսափելի է։

## ԳԱՂՈՒԹԱԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԻՔ Է

Գաղութակալությունը կապիտալիզմի ծնունդն է, նրա անբաժան ուղեկիցը։ «Ոսկու և արծաթի հանքավայրերի հայտնագործումն Ամերիկայում, բնիկների բնաջնջումը, ստրկացումն ու ողջ-ողջ թաղումը հանքերում, Արևելյան Հնդկաստանը նվաճելու ու կողոպտելու առաջին քայլերը, Աֆրիկան սևամորթներին որսալու արգելադաշտ դարձնելը — ահա արտադրության կապիտալիստական դարաշրջանի արշալույսը։ Այդ իդիլիական պրոցեսները նախասկզբնական կուտակման գլխավոր մոմենտներն են կազմում... Այդ մեթոդներն զգալի չափով խարսխվում են ամենակոպիտ բռնության վրա, ինչպես, օրինակ, գաղութային սիստեմը» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 783—784)։

Ահա կապիտալիզմի արշալույսին Մարքսի տված գնահատականը, ահա գաղութարարների անդրանիկ չարագործությունների սեղմ պատկերը։

Դարերի ընթացքում բազմազան ձևեր է ընդունել գաղութակալությունը, տարբեր մեթոդներ կիրառել աշխարհի տարբեր մասերում, հանդես եկել ամենատարբեր երանգներով։ Բայց էությունը միշտ եղել է նույնը. գաղութների ժողովուրդների ամենավայրենի շահագործում, նյութական հսկայական արժեքների կողոպուտ և արտահանում մայր երկիր։ Գաղութատիրության ուղին՝ բռնությամբ ստրկացված երկրների հետադիմության ուղի է, դանդաղ մահացության, ավերման ու դեգրադացիայի ուղի։ Այն ժամանակ, երբ տնտեսապես զարգացած մետրոպոլիաները ձեռք էին բերում բարձր մակարդակ, Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդները դատապարտվում էին սովի ու աղքատության։ 1770-ից մինչև 1947 թվականը Հնդկաստանում 55 անգամ սով է եղել։ Անցյալ դարի սկզբից մինչև 1947 թվականը ներառյալ Հնդկաստանում սովից մեռել է 50 միլիոն մարդ։ Իսկ նույն, սովի մատնված Հնդկաստանը Անգլիային տարեկան բերում էր 40 միլիոն ֆունտ ստեռլինգ (մինչև առաջին համաշխարհային պատերազմը) և 150 միլիոն ֆունտ ստեռլինգ շահույթ այդ պատերազմից հետո յուրաքանչյուր տարի։

1960 թվականին Աֆրիկան վերջին տեղերում էր բոլոր այն ցուցանիշներով, որ ընդունված է կիրառել երկրների տնտեսական և կուլտուրական զարգացումը համեմատելու համար։ Աֆրիկան անգրագիտության, բժշկական սպասարկման բացակայության, հիվանդությունների ու թշվառության աշխարհամաս է։ Օրինակ, 34 միլիոն բնակչություն ունեցող Նիգերիայում անգրագետ է բնակչության 95 տոկոսը, իսկ յուրաքանչյուր 55 հազար մարդուն սպասարկում է մեկ բժիշկ։



Իմպերիալիզմի գաղութային քաղաքականության, Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների անխնա շահագործման ու ճնշման հետևանքն է, որ այդ ժողովուրդները գտնվում են տնտեսական զարգացման ցածր մակարդակի վրա։ Չնայած գաղութակալության լուծը թոթափած երկրներում տեղի ունեցած զգալի տեղաշարժերին, նրանց տեսակարար կշիռը կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի մեջ չնչին տոկոս է կազմում։ Համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ Աֆրիկայի բաժինը կազմում է մեկ տոկոս։

Մարդկությանը պատճառած իր վնասներով ու չարագործություններով գաղութակալությունը վերջնականապես վարկաբեկված է։ Գաղութակալությունը և պատերազմները երկվորյակներ են։ Չգնալով պատմության խորքերը, ապացուցելու համար պատերազմի և գաղութակալության սերտ կապը, ասենք միայն, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, մարդկությունը մոտ քսան պատերազմ և զինված կոնֆլիկտ է տեսել։ Համարյա դրանք բոլորը տեղի են ունեցել իմպերիալիզմի գաղութային քաղաքականության հետևանքով։

«Գաղութային ռեժիմի լրիվ ու վերջնական վերացումը նրա բոլոր ձևերով ու դրսևորումներով հանդերձ թելադրում է համաշխարհային պատմության վերջին տասնամյակների ամբողջ ընթացքը,— ասում է ընկ. Խրուշչովը։ — Այդ ռեժիմը դատապարտված է, և նրա կործանումը ժամանակի գործ է»։ Ելնելով դրանից, Սովետական կառավարությունը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 15-րդ սեսիայում առաջարկեց. անհապաղ բոլոր գաղութային երկրներին, խնամարկյալ և մյուս ոչ ինքնավար տերիտորիաներին տալ լիակատար անկախություն և ազատություն սեփական ազգային պետությունների կառուցման գործում՝ նրանց ժողովուրդների ազատորեն արտահայտված կամքի ու ցանկության համաձայն։ Գաղութային ռեժիմը, գաղութային ադմինիստրացիան իրենց բոլոր ձևերով պետք է լրովին վերացվեն, որպեսզի այդպիսի տերիտորիաների ժողովուրդներին հնարավորություն տրվի անձամբ վճռելու իրենց բախտը և պետական կառավարման ձևերը։ Թույլ չտալ գաղութատիրության ոչ մի դրսևորում, ոչ մի բացառիկ իրավունք կամ առավելություն մի խումբ պետությունների համար՝ ի վնաս ուրիշ պետությունների։

Ինչպես ցույց են տալիս Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում վերջերս տեղի ունեցող իրադարձությունները, իմպերիալիստները դավադրություն դավադրության հետևից են կազմակերպում ազգային-ազատագրական շարժման դեմ։ Այն փաստը, որ գաղութային տերությունները ձեռնպահ մնացին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայում գաղութային ժողովուրդներին և երկրներին անկախություն տալու մասին Դեկլարացիայի քվեարկության ժամանակ, ավելորդ անգամ ցույց է տալիս, որ նրանք ձգտում են պահպանել գաղութային փտած կարգերը։

## ԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՊԱՏՎԱՐԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄՆ Է

Գաղութարարները ԱՄՆ-ի գլխավորությամբ կատաղի ճիգ ու ջանք են թափում, որպեսզի նոր մեթոդներով և նոր ձևերով պահպանեն գաղութային շահագործումը, իրենց ձեռքում պահեն տնտեսական վերահսկողության և

*քաղաքական ազդեցության լծակները Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրներում։ «Իմպերիալիստները ձգտում են ամլացնել, քայքայել ազատագրված երկրների ազգային սուվերենությունը, խեղաթյուրել ազգերի ինքնորոշման իմաստը, այսպես կոչված, «փոխկապվածության» դրոշով պարտադրել գաղութային տիրապետության նոր ձևեր, այդ երկրներում իշխանության գլուխ դնել իրենց մարիոնետներին, կաշառել բուրժուազիայի մի մասին, օգտագործում են ազգային գժտության թունավոր զենքը երիտասարդ, չամրապնդված պետությունների ուժերը թուլացնելու համար։ Այդ նպատակով օգտագործվում են ագրեսիվ ռազմական բլոկները և երկկողմանի ագրեսիվ ռազմական դաշինքները» (Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարություն)։*

*Ամերիկյան իմպերիալիզմն ամեն կերպ ձգտում է ամրանալ Աֆրիկայում։ 1957 թվականին Աֆրիկա կատարած այցելությունից հետո ԱՄՆ-ի նախկին փոխ-պրեզիդենտ Նիքսոնը իր գաղտնի զեկուցագրում նշում էր. «Գաղութային քաղաքականության ճգնաժամն Աֆրիկայում միաժամանակ առիթ է Միացյալ Նահանգների ուղղակի ազդեցությունն ընդլայնելու համար...»* (Проблемы мира и социализма, № 2, 1961, стр. 45)։ *Աֆրիկայում այժմ գործում են ամերիկյան երկու հարյուր ընկերություն։ Ամերիկյան կապիտալը ուժեղ թափով ներդրվում է աֆրիկական երկրների տնտեսության մեջ։ Վերջին երկու տասնամյակում այդ կապիտալներն Աֆրիկայում աճել են քսան անգամ։*

*Ալժիրի հարցում ԱՄՆ-ը օժանդակում են Ֆրանսիային։ Ալժիրի վրա ռումբերը նետում են հենց ամերիկյան ինքնաթիռները, որոնց սպասարկում են ամերիկյան տեխնիկները։ Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակվանից ԱՄՆ-ի կառավարությունը ավելի քան 11 միլիարդ դոլար է տրամադրել Ֆրանսիային՝ Եվրոպայում ֆրանսիական ռազմական հզորության ամրապնդման, Հնդկաչինում պատերազմը վարելու, Հյուսիսային Աֆրիկայում ռազմական կարիքները հոգալու և գաղութակալական այլ նպատակներով։* (Журнал Международная жизнь, № 2, 1961, стр. 19)։ *Փաստորեն ամերիկյան իմպերիալիզմը դառնում է Աֆրիկայում նեոգաղութակալության գլխավոր ուժը, աֆրիկական պետությունների գլխավոր վտանգը։*

*Ամերիկյան իմպերիալիստները մեկ օգտագործում են իրենց անգլիական, ֆրանսիական կամ բելգիական գաղութատեր պարտնյորների պարտությունները՝ նրանց տեղը գրավելու համար, մեկ հանդես են գալիս նրանց հետ միասնական ճակատով ընդդեմ անկախության համար պայքարող ժողովուրդների։ Ամերիկյան մոնոպոլիաները պահանջում են «ինտերնացիոնալացնել» գաղութները և ազդեցության ոլորտները, այսինքն ամրապնդել ԱՄՆ-ի դիրքերը գաղութային և կիսագաղութային երկրներում, իմպերիալիստական ուժերը միավորել ազգային-ազատագրական շարժման դեմ պայքարելու համար։ Համատեղ մասնակցությունը ագրեսիվ բլոկներին (ՆԱՏՕ, ՍԵՆՏՕ, ՍԵԱՏՕ և այլն), որոնք փաստորեն գաղութակալությանն են ծառայում և գաղութարարների դիրքերը զենքի ուժով պահպանելու խնդիր են հետապնդում, համատեղ գաղութակալական քաղաքականության իրականացումը հենց կոլեկտիվ գաղութակալության էությունն է։ Դա իմպերիալիզմի ընդհանուր ճգնաժամի և գաղութային սիստեմի փլուզման հետևանք է, երբ իմպերիալիստական մոնոպոլիաներն իրենց դիրքերը պահպանելու համար հանդես են գալիս միասնա-*



*կան ճակատով։ Այստեղ արտահայտվում է մոնոպոլիաների միջազգային դասակարգային համերաշխությունը։*

*Գաղութակալության այդ նոր արտահայտությունը դառնում է Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների իմպերիալիստական ստրկացման վտանգավոր ձևը։ Այն էքսպանսիայի «խաղաղ» մեթոդները զուգակցում է բացահայտ ագրեսիվ, ինտերվենցիոնիստական քաղաքականության հետ։*

*Իմպերիալիզմն ամենուրեք օգտագործում է ռազմական բազաները որպես հենակետեր՝ ազգային-ազատագրական շարժման հետ հաշիվ տեսնելու, իր իշխանությունը պահպանելու համար։ Բացի սոցիալիզմի լագերի երկրների դեմ ուղղված լինելուց, ամերիկյան բազաները Ճապոնիայում, Տայվանում, Օկինավայում, Հարավային Կորեայում, Հարավային Վիետնամում, Տաիլանդում, Լատինական Ամերիկայում, Սաուդական Արաբիայում, Թուրքիայում, Իրանում, Մարոկկոյում, Պակիստանում, Եթովպիայում, Լիբերիայում, անգլիականը՝ Մալայայում, Կիպրոսում, Նիգերիայում, Սինգապուրում, Ադենում, Քենիայում, ֆրանսիականը՝ Աֆրիկայի տարբեր մասերում, ուղղված են Արևելքի երկրների ազատագրական պայքարի դեմ։ Ռազմական բազաների այդ ոստայնը խոչընդոտում է Արևելքի երկրների տնտեսական զարգացումը, ոտնահարում նրանց սուվերենությունը, մշտական սպառնալիք ստեղծում նրանց ազգային անկախության և անվտանգության համար։*

*Նոր պայմաններին համապատասխան գաղութարարները հսկայական ուշադրություն են նվիրում, ահռելի միջոցներ են տրամադրում Արևելքի ժողովուրդների գաղափարական մշակման, ռեակցիոն կազմակերպությունների գործունեության աշխուժացման, պրոիմպերիալիստական գրականության հրատարակման, ռադիո-հաղորդումների ընդլայնման համար։ Հատկապես աշխուժացրել է իր տրադիցիոն ռեակցիոն գործունեությունը կաթոլիկ եկեղեցին՝ Վատիկանը, իր ճիզվիտական օրդենով ու մյուս մասնաճյուղերով հանդերձ։ 1960 թվականին Հռոմի պապը կաթոլիկության պատմության մեջ առաջին անգամ կարդինալ օծեց նեգրի, ճապոնացու և ֆիլիպինցու։ Եկեղեցական-հիերարխիան արդեն իր կազմում ունի 68 ասիացի և 25 աֆրիկացի եպիսկոպոս։*

*Վատիկանի հավատի պրոպագանդայի կոնգրեգացիան, որի գլուխ կանգնած է ոչ անհայտ կարդինալ Աղաջանյանը, այժմ իր միջոցների երկու հինգերորդը ծախսում է Աֆրիկայում, որտեղ նրա փողերով արդեն հրատարակվում են ավելի քան 200 կաթոլիկական թերթ և ամսագիր։ 1959 թվականին նույն այդ 65-ամյա կարդինալը չորս ուղևորություն կատարեց դեպի Արևելք։ Լիբանանում նա փորձում էր համաձայնության գալ մահմեդական աջ շրջանների հետ, Հարավային Վիետնամում խորհրդակցեց Նգո Դին-Դյեմի՝ ամերիկյան գործակալի և կաթոլիկ եկեղեցու դրածոյի հետ։ Տայվանում հանդիպեց Չան Կայ-շիի, իսկ Սեուլում՝ Լի Սին Մանի հետ։ Սայգոնում գաղութակալության նվիրված ծառան ղեկավարեց Հարավ-Արևելյան Ասիայի երկրների եպիսկոպոսների խորհրդակցությունը և այնուհետև իր գործը շարունակեց Ճապոնիայում։ Կարդինալին քիչ է հետաքրքրում կրոնը, նա զբաղվում է քաղաքականությամբ։*

*Ակցիաների վերածած Վատիկանի կապիտալը հասնում է 12 միլիարդ դոլարի։ Սա ավելի է, քան Ռոքֆելլերների, Մելոնի և Դյուպոնի ընտանիքների ամբողջ ունեցվածքը միասին վերցրած։ Ճիզվիտների օրդենի կապիտալը (արժեթղթերով) գնահատվում է ևս հինգ միլիարդ դոլար։ Այս հսկա-*

յական գումարների զգալի մասը ներդրվում է գաղութային երկրներում, որտեղ հատկապես բարձր է շահույթի նորման։

Վատիկանի և գաղութարարների սերտ կապերը ակնհայտ են։ Կաթոլիկ եկեղեցին նեոգաղութակալության «իդեոլոգիական» գլխավոր ղեկավարներից մեկն է։

Սակայն ինչպիսի մեթոդների էլ դիմեն գաղութարարները՝ լինեն դրանք զինված ինտերվենցիա, ճիզվիտների դավադրություններ, թե կաթոլիկ եկեղեցու քարոզներ ու պրոպագանդա, գաղութակալության կործանման ժամը հասել է։ Արևելքի ժողովուրդները աչալրջորեն հետևում են իմպերիալիզմի գործողություններին, ձախողում նրա պլանները։ Հենց վերջերս, ս. թ. հունվարի 23-ին, Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների համերաշխության խորհրդի արտակարգ սեսիան 29 երկրների ներկայացուցիչների մասնակցությամբ միահամուռ բանաձևեր ընդունեց, որոնք դատապարտում են ԱՄՆ-ի կողմից գլխավորվող իմպերիալիստական տերությունների միջամտությունը Կոնգոյի, Ալժիրի և Լաոսի ներքին գործերին։

## ԱՖՐԻԿԱՆ ՓՇՐՈՒՄ Է ԳԱՂՈՒԹԱԿԱԼՈՒԹՅԱՆ ՇՂԹԱՆԵՐԸ

«Դեպի լավագույն ապագա աֆրիկյան ժողովուրդների շարժման ընդհանուր զարգացումն այսուհետև անկասելի է»,— խորին համոզվածությամբ հայտարարում է Աֆրիկայի ազգային-ազատագրական շարժման ականավոր ղեկավար, Գվինեայի ռեսպուբլիկայի պրեզիդենտ Սեկու Տուրեն։

Հիրավի, Աֆրիկան արթնացել է։ Ազատության և անկախության համար պայքարը սև աշխարհամասում այսօր անընդգրկելի չափեր է ընդունել։ Իմպերիալիզմը պարտություն պարտության հետևից է կրում։ Տասնհինգ տարի առաջ, երկրորդ համաշխարհային պատերազմի վերջին Աֆրիկայում կար ընդամենը չորս ձևականորեն անկախ պետություն՝ Եգիպտոս, Լիբերիա, Հարավ-աֆրիկական Միություն, Եթովպիա։ Աշխարհամասի մնացած մասը տքնում էր գաղութային դաժան ճնշման տակ։ Գաղութարարները շատ ինքնավստահ էին, համոզված, որ դեռ երկար կշարունակվի այդ վիճակը։

Դեռ վերջերս իրենք՝ աֆրիկացիք պահանջում էին «Անկախություն ներկա սերնդի կյանքի օրոք»։ Սակայն հակաիմպերիալիստական շարժումն այնքան բուռն զարգացավ, որ նույնիսկ Աֆրիկայի չափավոր լիդերները ստիպված էին որդեգրել նոր լոզունգ՝ «Անկախություն անմիջապես»։

Աֆրիկայում 1951-ից 1960 թվականը ստեղծվել է քսաներկու նոր անկախ պետություն՝ 118 միլիոն բնակչությամբ։ Այդ պրոցեսը հատկապես արագ տեղի ունեցավ 1960 թվականին։ Անկախ զարգացման ուղին են բռնել և համաշխարհային ասպարեզում այժմ զգալի դեր են խաղում Միացյալ Արաբական ռեսպուբլիկան, Գվինեայի ռեսպուբլիկան, Գանայի ռեսպուբլիկան, Թունիսը, Մարոկկոն, Մալին և աֆրիկական այլ պետություններ։

Աֆրիկան այսօր դարձել է երկու հակադիր տենդենցների՝ ազատության և անկախության համար պայքարող աֆրիկյան ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի և միջազգային իմպերիալիզմի, կոլեկտիվ գաղութակալության սուր բախման ասպարեզ։ Կոնգոյի ռեսպուբլիկայի դեմ համաշխարհային ռեակցիայի շղթայազերծած ամենալկտի դավադրությունը, գաղութարարների մեղքով այնտեղ կատարվող ողբերգական իրադարձու-



թյունները, Պատրիս Լումումբայի ու նրա զինակիցների նողկալի սպանությունը շատ ակնառու վկայում են այդ բախման սրության մասին։ Կոնգոյի և Ալժիրի փորձը մի ավելորդ անգամ հաստատում է այն պարզ ճշմարտությունը, որ գաղութակալությունը դեռ մեռած չէ, որ այն նման է այն գիշատիչ գազանին, որը ծանր վերք է ստացել, բայց դեռ ի վիճակի է շատ զոհեր խլել։

Դեռևս 65 միլիոն աֆրիկացի ապրում են ուղղակի գաղութակալության պայմաններում։ Ֆաշիստ Սալազարի գլխավորած պորտուգալական գաղութարարների կառավարությունը միջնադարյան-ինկվիզիտորական մեթոդներով շարունակում է ճնշել ու կողոպտել Անգոլայի ժողովրդին։ Ավելի լավ չէ վիճակը անգլիական ու ֆրանսիական գաղութային և խնամարկյալ տերիտորիաներում։

Իմպերիալիստների «կոլեկտիվ գաղութակալությանը» աֆրիկական ժողովուրդները պատասխանում են իրենց շարքերի համախմբումով ու համերաշխությամբ։ 1958 թվականից սկսած Աֆրիկայում տեղի են ունենում ժողովուրդների և անկախ պետությունների կոնֆերանսներ՝ Ակրայում, Կոնակրիում, Թունիսում, Ադդիս-Աբեբայում, Լեոպոլդվիլում, Կասաբլանկայում, որտեղ աստիճանաբար զոդվում են գաղութակալության դեմ աֆրիկական միասնական ճակատի հիմքերը, քննվում են Աֆրիկայի երկրների տնտեսական և քաղաքական զարգացման կոնկրետ խնդիրները։ Կասաբլանկայում հունվարի առաջին կեսին տեղի ունեցած աֆրիկական պետությունների ղեկավարների կոնֆերանսը հսկայական նշանակություն ունեցավ ընդդեմ գաղութակալության աֆրիկական երկրների ջանքերի միավորման համար։ Կոնֆերանսը դատապարտեց Կոնգոյի դեմ իմպերիալիստական ագրեսիան, գաղութային պատերազմը Ալժիրում և կոնկրետ ծրագիր մշակեց այդ ժողովուրդներին հակաիմպերիալիստական պայքարում օգնելու համար։

Բազմազան են պայքարող Աֆրիկայի առջև այսօր ծառացած խնդիրները։ Տնտեսական հետամնացությունը, աֆրիկական երկրների արդյունաբերության ծայրահեղ թուլությունը, տոհմատիրության մնացուկների առկայությունը առանձնահատուկ կնիք են դնում աֆրիկական ժողովուրդների ազգային-ազատագրական ռևոլյուցիաների վրա։ Աշխարհամասում ազատագրական շարժման գլխավոր առանձնահատկությունը ոչ միայն տեղական պրոլետարիատի սակավաթվությունը, անբավարար կազմակերպվածությունն է, այլև ազգային բուրժուազիայի թուլությունը։

Աֆրիկայում ազգային-ազատագրական շարժման հետագա վերելքը կախված կլինի գլխավորապես աշխատավոր լայն զանգվածների ակտիվության աճումից, նրանց քաղաքական գիտակցականության և կազմակերպվածության բարձրացումից, բոլոր դեմոկրատական ուժերի հակագաղութային ազգային ճակատի ստեղծումից, և նրա՝ հակաիմպերիալիստական հետևողական քաղաքականության վարումից։

## ՊԱՅՔԱՐ ԼԻԱԿԱՏԱՐ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Գաղութակալության իսպառ վերացման համար մղվող պայքարը բարդ պրոցես է։ Միայն քաղաքական անկախության նվաճումը դեռևս չի ապահովում գաղութային լուծը տապալած այս կամ այն երկրի ինքնուրույն, բազմակողմանի զարգացումը։ Հակաիմպերիալիստական ռևոլյուցիան քաղա-

քական անկախության նվաճումով չի ավարտվում: Դա առաջին քայլն է դեպի իսկական ազատություն, դեմոկրատիա և սոցիալական առաջադիմություն:

Պետական անկախությունը ժողովուրդների ինքնուրույն զարգացման գլխավոր, բայց ոչ միակ պայմանն է: Վ. Ի. Լենինը ընդգծել է, որ «տնտեսական» «անեքսիան» միանգամայն «իրագործելի է» առանց քաղաքականի և մշտապես պատահում է» (Երկեր, հ. 23, էջ 45): Ժամանակակից պայմաններում իմպերիալիզմը հատկապես ձգտում է լայնորեն իրագործել տնտեսական «անեքսիան», որովհետև նա արդեն ի վիճակի չէ խանգարելու Արևելքի ժողովուրդների կողմից քաղաքական անկախություն նվաճելուն:

Ինչպես «Կոմունիստ» ամսագրում գրում է (№ 2, 1961 թ.) Կ. Իվանովը, քաղաքական ազդեցության ձգտումը գաղութարարների համար միշտ էլ տնտեսական դրդապատճառ է ունեցել: Գաղութակալությունը, նշում է նա, կարելի է համեմատել այսբերգի հետ, որի ինը տասներորդը թաքնված է ջրի տակ, և միայն մեկ տասներորդն է տեսանելի: Գաղութային ադմինիստրացիան, բանակը, ոստիկանությունը, այսինքն այն ամենը, ինչը կազմում է քաղաքական իշխանությունը՝ դա վերջրյա մասն է: Բայց գոյություն ունի և այլ, այսբերգի ստորջրյա մաս: Դա նրա տնտեսական դիրքերն են ստրկացված պետություններում: Երբ հակաիմպերիալիստական ռևոլյուցիան ջարդում է քաղաքական վերնաշենքը և իշխանության է կոչում ազգային կառավարությանը, ստորջրյա մասը դեռևս պահպանվում է:

Փաստ է, որ էական փոփոխություններ են տեղի ունեցել Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Բիրմայի, Միացյալ Արաբական ռեսպուբլիկայի , Իրաքի, Ցեյլոնի, Գանայի, Գվինեայի և այլ երկրների ներքին դրության մեջ: Այնտեղ լուրջ ջանքեր են գործադրվում ազգային էկոնոմիկայի զարգացման և իմպերիալիստական տերություններից իրենց կախումը թուլացնելու համար: Այդ նպատակն էին հետապնդում Սուեզի ջրանցքի ազգայնացումը, Ինդոնեզիայի կողմից Հոլանդիային «պարտքեր» վճարելուց հրաժարվելը, մի շարք երկրներում օտարերկրյա կապիտալի գործունեության սահմանափակումը, էկոնոմիկայում, հատկապես, ծանր արդյունաբերության ասպարեզում պետական սեկտորի ուժեղացումը և այլն: Այս և այլ միջոցառումների շնորհիվ վերջին տարիներս այդ երկրներում նկատելիորեն ավելացել է արդյունաբերական արտադրանքի թողարկումը, կառուցվել են ծանր ինդուստրիայի առաջնեկները, խրացվել է այնպիսի ապրանքների արտադրությունը, որոնք առաջներում թանկ գներով ներմուծվում էին արտասահմանից:

Այս ամենը կատարվում է իմպերիալիզմի դեմ սուր պայքարի պայմաններում: Իմպերիալիզմը հեշտությամբ չի զիջում իր դիրքերը: Նա մանևրում է, փոխում գործելակերպը, մեթոդները, հարմարվում նոր կացությանը: Նախկին գաղութարարների և մետրոպոլիաների փոխհարաբերություններում աչքի են զարնում երկու տենդենց. ազատագրված երկրների բուրժուական որոշակի շրջաններ ձգտում են տնտեսապես համագործակցել իմպերիալիզմի հետ: Մյուս կողմից, ակտիվանում է պայքարը հանուն տնտեսական անկախության՝ ընդդեմ իմպերիալիզմի ճնշման: Այս երկրորդ տենդենցի հաջողությունը կախված է նրանից, թե քաղաքական անկախություն նվաճած երկրների բանվոր դասակարգը ինչ չափով կգլխավորի ազգային շարժումը: Դա, իհարկե, առաջին հերթին պայմանավորված է տվյալ երկրում ստեղծված կոնկրետ իրադրությամբ:



Ընդհանուր առմամբ իմպերիալիզմի տնտեսական դիրքերը Արևելքի նոր
պետություններում դեռևս շատ ուժեղ են: Քիչ չեն այն երկրները, որոնք ձևա-
կանորեն, քաղաքականապես ինքնուրույն են, բայց իրականում ֆինանսական,
տնտեսական, դիվանագիտական տեսակետից խճճված են իմպերիալիստական
մոնոպոլիաների ոստայնում և նրանց կողմից կողոպտվում են այնպես, ինչպես
գաղութները: Թեև Մերձավոր-արևելյան ոչ մի երկիր չի մտնում Բրիտանական
գաղութային սիստեմի մեջ, բայց այնտեղ արդյունահանվող նավթը ավելի շատ
շահույթ է բերում անգլիական բուրժուազիային, քան գաղութները:
«Որևէ ժողովրդի ձևական անկախության շնորհում, իսկ իրականում այս
կամ այն ձևով նրա վրա իր տիրապետության պահպանում — ահա այն պրիզմը,
որին այժմ ավելի հաճախ է դիմում գաղութակալությունը»,— «Ժամանակակից
գաղութակալությունը» գրքում գրում է ճապոնական պրոֆ. Ցուձիմա Կանեսա-
բուրան: Իհարկե, նախկին գաղութների և մետրոպոլիաների միջև փոխհարաբե-
րություններն այժմ հիմնված են այլ հիմքերի վրա, քան նախկինում: Բայց քա-
նի դեռ այդ երկրները մնում են համաշխարհային կապիտալիստական սիստե-
մի մեջ, իմպերիալիզմը լայն հնարավորություններ ունի թույլ զարգացած
երկրների բնական և մարդկային ռեսուրսները շահագործելու համար:
Դեռևս խորն են օտարերկրյա կապիտալի գցած արմատները Հնդկաստա-
նում, Ինդոնեզիայում, աֆրիկական և այլ երկրներում: Անկախություն ստա-
նալուց հետո Հնդկաստանում արդյունաբերության զարգացման միջին տա-
րեկան աճը կազմել է ընդամենը 5 տոկոս, իսկ Չինական Ժողովրդական
Ռեսպուբլիկայում՝ 29 տոկոս: Հենց այս փաստը պերճախոս կերպով վկա-
յում է սոցիալիզմի ուղին թևակոխած երկրի և կապիտալիստական տնտե-
սության սիստեմում գտնվող երկրի զարգացման էական և խոր տարբերու-
թյունը: «Գաղութային լուծը թոթափած երկրներում ազգային վերածննդի
կենսական խնդիրները հաջողությամբ լուծվել կարող են միայն իմպերիա-
լիզմի դեմ ու ֆեոդալիզմի մնացուկների դեմ վճռական պայքար մղելու
պայմանով, ազգի բոլոր հայրենասիրական ուժերը միասնական ազգային
դեմոկրատական ճակատի մեջ միավորելու միջոցով»,— ասված է Կոմունիս-
տական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության
Հայտարարության մեջ:
Ագրարային հարցի լուծումը ունի առաջնակարգ նշանակություն քաղաքա-
կան անկախություն նվաճած յուրաքանչյուր երկրի հետագա զարգացման
համար: Ազգային բուրժուազիայի կողմից ղեկավարվող պետություններում
առաջին երկչոտ քայլերն են արվել ագրարային հարաբերությունների ռե-
ֆորմի ասպարեզում, թեև ֆեոդալիզմի հետևանքների և վերապրուկների
լիկվիդացումը ընդհանուր առմամբ դանդաղ է ընթանում: Իսկ «առանց ագ-
րարային խոր վերափոխումների չի կարելի լուծել պարենային պրոբլեմը,
սրբել տանել միջնադարի բոլոր մնացուկները, որոնք կաշկանդում են ար-
տադրողական ուժերի զարգացումը գյուղատնտեսության և արդյունաբերու-
թյան մեջ» (Հայտարարությունից):
Գաղութային լուծը թոթափած երկրների հետագա առաջընթաց զարգա-
ցումը հարթ պրոցես չէ: Նրանց առջև այժմ ծառացած են վիթխարի խնդիր-
ներ: Հայտարարության մեջ մենք կարդում ենք.
«Արդի պատմական իրադրության մեջ շատ երկրներում միջազգային ու
ներքին բարենպաստ պայմաններ են ստեղծվում ազգային դեմոկրատիայի

անկախ պետություն կազմելու համար, այսինքն այնպիսի մի պետություն, որը հետևողականորեն պաշտպանում է իր քաղաքական ու տնտեսական անկախությունը, պայքարում է իմպերիալիզմի և նրա ռազմական բլոկների դեմ, իր տերիտորիայում եղած ռազմական բազաների դեմ, պետություն, որը պայքարում է գաղութատիրության և իմպերիալիստական կապիտալի ներթափանցման նոր ձևերի դեմ, պետություն, որը մերժում է կառավարման դիկտատորական ու բռնակալական մեթոդները, մի պետություն, որտեղ ժողովրդի համար ապահովված են դեմոկրատական լայն իրավունքներ և ազատություններ (խոսքի, մամուլի, ժողովների, ցույցերի, քաղաքական պարտիաներ ու հասարակական կազմակերպություններ ստեղծելու ազատություն), հնարավորություն՝ հասնելու ագրարային ռեֆորմի կիրառմանը և դեմոկրատական ու սոցիալական վերափոխումների բնագավառում մյուս պահանջների իրականացմանը, մասնակցելու պետական քաղաքականությունը որոշելուն։ Ազգային դեմոկրատիայի պետությունների կազմվելն ու ամրապնդումը նրանց համար ապահովում են հնարավորություն արագ զարգանալու սոցիալական առաջադիմության ուղիով, ակտիվ դեր խաղալու խաղաղության համար, իմպերիալիստական լագերի ագրեսիվ քաղաքականության դեմ, գաղութային լծի լիակատար վերացման համար ժողովուրդների պայքարում»։

Այս ձևակերպումը ազգային-ազատագրական ռևոլյուցիայի հիմնական նվաճումների ամրապնդման ու զարգացման ծավալուն ծրագիր է։ Այն հետամնաց երկրներում ազատագրական ռևոլյուցիաների բացառիկ յուրօրինակության մասին Լենինի ցուցումների ստեղծագործական զարգացումն է։ «Մեր եվրոպական քաղքենիները երազում էլ չեն տեսնում,— գրել է Վլադիմիր Իլյիչը,— որ հետագա ռևոլյուցիաները բնակչությամբ անչափ ավելի հարուստ և սոցիալական պայմանների զանազանակերպությամբ անչափ ավելի աչքի ընկնող Արևելքի երկրներում նրանց մատուցանելու են, անկասկած, ավելի շատ յուրատեսակություն, քան ռուսական ռևոլյուցիան» (Երկեր, հ. 33, էջ 570—571)։

Ազգային դեմոկրատիայի պետությունը՝ նոր տիպի պետություն է։ Նա գաղութային ստրկությունից ազատված ժողովուրդների համար կարող է ապահովել սոցիալական արագ առաջադիմություն, հետամնացության վերացում, խաղաղություն և կարող է անցումնային ձև ծառայել դեպի ոչ կապիտալիստական զարգացման ուղին։ Այդպիսի պետությունը կարող է մինչև վերջ հասցնել հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական, դեմոկրատական ռևոլյուցիան։

Այդ նպատակին հասնելու պայքարի ամենահետևողական և անձնազոհ մարտիկները կոմունիստներն են։ Կոմունիստական պարտիաները բոլոր գծերով մարտնչում են հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական, դեմոկրատական ռևոլյուցիան հետևողականորեն մինչև վերջ հասցնելու, ազգային դեմոկրատիայի պետություն ստեղծելու, երկրի բոլոր առաջադիմական ուժերը համախմբելու, խաղաղության և խաղաղ գոյակցության սկզբունքների հաղթանակի համար։

Առանց կոմունիստների մասնակցության, այժմ աներևակայելի է ազգային ազատագրության և ազգային վերածնության հաջողությունը որևէ երկրում։ Այդ է պատճառը, որ իմպերիալիզմը, ներքին ռեակցիան իրենց



գլխավոր հարվածն ուղղում են կոմունիստական և բանվորական պարտիաների դեմ, ամեն կերպ ձգտում են օգտագործել ազգային-ազատագրական շարժման մասնակիցների գաղափարական և քաղաքական տարաձայնությունները, որպեսզի խարխլեն հակաիմպերիալիստական միասնական ճակատը։

Աշխարհի բոլոր կոմունիստների անունից Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունը պրոլետարական համերաշխություն հայտնեց այն երկրների բանվոր դասակարգի փառապանծ որդիներին ու դուստրերին, որոնք տառապում են զնդաններում։ Խորհրդակցությունը կոչ արեց միջազգային հզոր կամպանիա ծավալել հանուն խաղաղության, ազգային անկախության ու դեմոկրատիայի մարտիկների ազատագրման։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԼԱԳԵՐԸ ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ ՀՈՒՍԱԼԻ ՊԱՏՎԱՐՆ Է

Ասիայում, Աֆրիկայում ու Լատինական Ամերիկայում ազգային-ազատագրական շարժման հսկայական հաջողություններն անբաժանելի են սոցիալիզմի լագերի հարաճուն զարգացումից, գաղութատիրությանը վերջ դնելու նրա անսասան դիրքից։ Այստեղ դրսևորվում է Արևելքի ճնշված զանգվածների և սոցիալիստական երկրների ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարի ու շահերի ընդհանրությունը։ Սոցիալիստական ամբողջ սիստեմին և արթնացած Արևելքի երկրներին միավորում են հանուն խաղաղության, ընդդեմ իմպերիալիզմի և գաղութակալության պայքարի ընդհանուր պլատֆորմը, խաղաղ գոյակցության և բոլոր պետությունների համագործակցության հասնելու նրանց ձգտումը։

Համաշխարհային սոցիալիզմի ուժերը վճռականորեն նպաստել են և այժմ էլ նպաստում են գաղութների և կախյալ երկրների ժողովուրդների՝ իմպերիալիզմի ճնշումից ազատագրվելու պայքարին։ Սոցիալիստական սիստեմը դարձել է ազատագրված ժողովուրդների ազգային անկախ զարգացման հուսալի վահանը։ Եվ եթե այսօր բարբարոսության և վայրենության այդ ռեժիմը դատապարտված է վերջնական կործանման, ապա դա հետևանք է սոցիալիզմի պատմական հաղթանակների, սոցիալիստական սիստեմի ստեղծման ու զարգացման, համաշխարհային ասպարեզում նրա ազդեցության անընդհատ մեծացման։ Հենց սրանով են պայմանավորված այն բացառիկ բարենպաստ պայմանները, որ ստեղծվել են ճնշված ժողովուրդների հակաիմպերիալիստական հաջող պայքարի զարգացման համար։

Թույլ զարգացած երկրների շահագործումից իմպերիալիստները տարեկան ստանում են 7—8,5 միլիարդ դոլար, որը երկու անգամ գերազանցում է այդ երկրներում նրանց տարեկան կապիտալ ներդրումները։ Այդ շահագործմանը վերջ դնելու, տնտեսության հետամնացությունը վերացնելու համար անհրաժեշտ են խաղաղություն, միջազգային լարվածության մեղմացում, ընդհանուր զինաթափում։ Աֆրո-ասիական տնտեսագետները հաշվել են, որ մեծ տերությունների կողմից ռազմական նպատակներով կատարվող տարեկան ծախսերի տասը տոկոսը բավական է, որպեսզի 20 տարվա ընթացքում վերջ դրվի աղքատությանը, հիվանդություններին և անգրագիտությանն ամբողջ Արևելքում։ Իմպերիալիստական շրջանների կողմից ռազմական խմբավորումների կազմակերպումը,

լարված իրադրություն է ստեղծում Արևելքում, տանում է դեպի ռազմական ծախսերի ավելացում, դանդաղեցնում այդ շրջանի երկրների տնտեսական զարգացումը։

Մինչդեռ սոցիալիստական սիստեմն իր քաղաքականությամբ ռեալ հեռանկարներ է բացում թույլ զարգացած երկրների ինդուստրացման, ժողովուրդների կենսամակարդակի բարձրացման, նրանց անկախության ամրապնդման համար։ Սոցիալիզմի երկրներն անկեղծ համակրանքով ու խոր ըմբռնումով են վերաբերվում Արևելքի երկրների այդ ջանքերին և նրանց բազմակողմանի տնտեսական ու տեխնիկական օգնություն են ցույց տալիս։

Այն տարիներին, երբ Սովետական Միությունը հնարավորություն չուներ շոշափելի նյութական օգնություն ցույց տալ արդյունաբերությամբ թույլ զարգացած երկրներին, իմպերիալիստական տերությունները նրանց թելադրում էին իրենց պայմանները, պարտադրում վաճառվող ապրանքների գները, իրենց վարկերի տոկոսներն ու նպատակադրումը։ Սոցիալիստական պետությունների օգնությունն այժմ զգալի չափով սահմանափակում է մոնոպոլիստական կապիտալի այդ ձգտումը, նեղացնում նրա գործունեության ոլորտը, սահմանափակում մանևրելու նրա հնարավորությունները։

Սովետական Միությունն աշխարհում առաջին տեղն է գրավում Արևելքի երկրների նոր ստեղծվող ինդուստրիայի համար կոմպլեքսային բազմազան սարքավորումներ մատակարարելու գործում։ Սովետական Միության տեխնիկական և տնտեսական օգնությամբ Ասիայի ու Աֆրիկայի երկրներում կառուցվում են 300 արդյունաբերական և այլ օբյեկտներ։

Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների անխոնջ պայքարը հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության, հանուն խաղաղ գոյակցության սկզբունքների հաղթանակի, գտնում է Արևելքի երկրների ժողովուրդների հարաճուն աջակցությունը։ Սոցիալիզմի սիստեմի քաղաքական ու տնտեսական հզոր աճը, որը պաշտպանում է ճնշված ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարը, նրա անշահախնդիր օգնությունը տնտեսապես թույլ զարգացած երկրներին ամենամեծ խոչընդոտն է իմպերիալիստական տերությունների գաղութային քաղաքականության համար։ Այժմ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդները, ի դեմս սոցիալիզմի լագերի, տեսնում են իրենց ազատության և անկախության հուսալի երաշխիքը, խաղաղության հզոր գործոնը, որը այդ երկրներին օգնում է անկախության նվաճման և համակողմանի զարգացման գործում։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի նվաճումները, գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հաջողությունները օրեցօր խարխլում են իմպերիալիզմի ամբողջ սիստեմը, մոտեցնում նրա վերջնական կործանման ժամը։

---





# ԱՅԴՊԵՍ ՉՊԵՏՔ Է ՇԱՐՈՒՆԱԿԵԼ

Լենինականը ռեսպուբլիկայի արդյունաբերական խոշորագույն կենտրոններից մեկն է։ Միայն 1960 թվականին արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքը այստեղ հասավ 980 միլիոն ռուբլու (հին դրամով), կատարվեց 53 միլիոն ռուբլու շինարարական մոնտաժային աշխատանք։ Քաղաքի 38 արդյունաբերական և երկաթուղային հանգույցի բոլոր ձեռնարկությունները կատարեցին ու գերակատարեցին 1960 թվականի պետական առաջադրանքները։ Անցյալ տարի քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում տեղադրվեցին ավելի քան 600 նոր մեքենաներ ու սարքավորումներ։

Բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական ակտիվության բարձրացման շնորհիվ անցյալ տարի քաղաքի ձեռնարկություններում ներդրվեցին 1400 ռացիոնալիզատորական առաջարկություններ, որոնցից ստացված տնտեսական օգուտը կազմում է 6,5 միլիոն ռուբլի (հին դրամով)։

Արտադրության ղեկավարման լավ օրինակ է ցույց տալիս գուլպայի ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը։ Այստեղ կոմունիստներն աշխատում են արտադրության վճռական տեղամասերում և իրենց հիանալի գործերով օրինակ ծառայում անպարտիականներին։ Ֆաբրիկայի պարտիական կոմիտեն, ցեխային սկզբնական կազմակերպությունները սերտորեն կապված են բանվորների հետ, լավ են ճանաչում նրանց և գիտեն իրերի իսկական վիճակը։ Գուլպայի ֆաբրիկան մեր ռեսպուբլիկայի այն ձեռնարկություններից է, որը պետական առաջադրանքները սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում է ոչ միայն համախառն արտադրանքով, այլև տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով։

Անցած տնտեսական տարին հաջողությամբ փակեց Չկալովի անվան կարի ֆաբրիկայի կոլեկտիվը։ Այստեղ տարեկան պլանը կատարվեց 102,4 տոկոսով։ Պարտիական կազմակերպությունը և ֆաբրիկայի դիրեկցիան խրախուսելի աշխատանք կատարեցին արտադրության մեքենայացման ու հագուստների նոր մոդելների ներդրման ուղղությամբ։ Ֆաբրիկան տվել է դպրոցական և նախադպրոցական հասակի երեխաների արտահագուստի 19 նոր մոդել, որոնցից 17-ը հանձնված են մասսայական արտադրության։

Արտադրական լուրջ հաջողությունների հասավ էլեկտրատեխնիկական գործարանի կոլեկտիվը, տարվա պլանը կատարելով 108,3 տոկոսով։ Գործարանի երիտասարդ կոլեկտիվը յուրացրեց ալյումինի փաթեթներով զոդման տրանսֆորմատորների արտադրությունը և անցավ նրանց մասսայական թողարկմանը։

Սարքաշինական գործարանի կոլեկտիվը կարճ ժամանակամիջոցում յու-
րացրեց և մասսայական արտադրության հանձնեց նոր տիպի բարձր ճշգրտու-
թյան 7 սարքեր։ Արտադրական բարձր ցուցանիշների են հասել նաև հեծանվի,
դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանները, կահույքի, կոշկե-
ղենի ֆաբրիկաները։

Այս առաջավոր ձեռնարկությունների պարտիական, արհմիութենական և
կոմերիտական կազմակերպությունները լավագույն ձևով են կազմակերպում
սոցիալիստական մրցությունը, լայնորեն ծավալում են կոմունիստական աշ-
խատանքի բրիգադների կոչման համար պայքարողների շարժումը։ Քաղաքի
ձեռնարկություններում այժմ կան 179 բրիգադներ և վեց կոլեկտիվներ, որոնք
պայքարում են կոմունիստական աշխատանքի բրիգադայի և կոլեկտիվի կոչ-
ման համար։ Նրանցից 37-ը արդեն արժանացել են այդ բարձր կոչման։

Վերը նշված հաջողությունների կողքին դեռևս կան լուրջ թերություններ
ու բացեր, որոնց մասին խոսվեց քաղաքային պարտիական կոնֆերանսում։
Այսպես. քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները 1960 թվականի
համախառն արտադրանքի պլանը կատարեցին 98,6 տոկոսով, այդ թվում
ժողտնտխորհին ենթակա ձեռնարկությունները՝ 97,5 տոկոսով։ Նրանք երկրին
պարտք մնացին 14 միլիոն ռուբլու (հին գներով) արտադրանք։ Տարեկան պլանը
չկատարեցին 8 ձեռնարկություն։ Դրանցից տեքստիլ կոմբինատը տարեկան
պլանը կատարեց 95,4, մսի-պահածոների կոմբինատը՝ 97,1, հղկող հաստոց-
ների գործարանը՝ 65,6, շինարարական դետալների գործարանը՝ 73 տոկոսով։

Անբավարար է արդյունաբերական արտադրանքի աճը։ Բավական է նշել,
որ 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, արդյունաբերական
արտադրանքի աճը կազմել է 0,5 տոկոս, երբ ռեսպուբլիկայում այն կազմել
է 12 տոկոս։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները անցած տնտե-
սական տարում արտադրանքի նախատեսված 88 գլխավոր տեսակներից
(ասորտիմենտից) չեն կատարել 40 տեսակի թողարկման պլանը։ 11 ձեռնար-
կություն չեն կատարել նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը
(տեքստիլ կոմբինատը, մանարան ֆաբրիկան, մսի-պահածոների կոմբինատը
և այլն)։

Տեքստիլ կոմբինատի, հղկող հաստոցների, միկրոէլեկտրաշարժիչների
գործարաններում և տրիկոտաժի ֆաբրիկայում գործարքով աշխատող 4331
բանվորներից 662-ը 1960 թվականին չեն կատարել իրենց արտադրական
պլանները։ Այլ կերպ ասած, յուրաքանչյուր ութ բանվորից մեկը չի կատա-
րում տարեկան պլանը։ Այս հանգամանքը պետք է խիստ անհանգստացնի հիշ-
յալ ձեռնարկությունների պարտիական, արհմիութենական կազմակերպու-
թյուններին և տնտեսական ղեկավարներին։

Ձեռնարկության ետ մնալու պատճառը գործիմաց ղեկավարության բա-
ցակայությունն է։ Ահա, օրինակ, տեքստիլ կոմբինատը։ Անցյալ տարի այն
երկրին պակաս տվեց 491 տոննա մանվածք, 5 միլիոն 284 մետր գործվածք։
Պետական առաջադրանքները չկատարելու հիմնական պատճառը սարքավո-
րումների ցածր արտադրողականությունն է։ Այս գործում կոմբինատը ոչ
միայն 15—20 տոկոսով ետ է մնացել Միության առաջավոր ձեռնարկություն-
ներից, այլև իր արտադրողականությամբ իջել է անգամ 1958 թվականի մա-
կարդակից։ Այսպես, մանվածքային ֆաբրիկայում սարքավորումների արտա-
դրողականությունը 1960 թվականին կազմեց 1958 թվականի փաստացի մա-



կարդակի 99 տոկոսը, իսկ գործվածքային ֆաբրիկայում՝ 99,9 տոկոսը։

Նման վիճակը բացատրվում է նաև նրանով, որ անհրաժեշտ ուշադրու-
թյուն չի հատկացվում մեքենաների և սարքավորումների հիմնական և նախա-
զգուշական նորոգումների որակի բարձրացմանը։ Տեխնոլոգիական որոշ
պրոցեսների խախտման և ցածրորակ թելի պատճառով մեծ չափերի են հաս-
նում կտրվածքները։ Աշխատանքի վատ կազմակերպման հետևանքով սարքա-
վորումների պարապուրդները 2—3 անգամ գերազանցում են նախատեսված
նորմաները, որն, անշուշտ, իջեցնում է նրանց արտադրողականությունը։

Կոմբինատի մանարան ֆաբրիկայի շատ առաջավոր ենթավարպետներ,
որոնք աշխատում են միևնույն պայմաններում և սպասարկում ավելի շատ մե-
քենաների, հասել են բարձր արտադրողականության։ Այսպես, օրինակ՝ 4-րդ
ցեխի ենթավարպետ Վ. Մուրադյանը սպասարկում է 72 մեքենայի. նրա
սպասարկած յուրաքանչյուր մեքենայի արտադրողականությունը հասել է
8960 միջնաթելի, իսկ նույն ցեխի ենթավարպետ Մ. Գրիգորյանը (որն սպա-
սարկում է 54 մեքենայի) ամեն մի մեքենայի արտադրողականությունը հասցը-
րել է միայն 5890 միջնաթելի։ 2-րդ ցեխի ենթավարպետ Մ. Դեմիրճյանը սպա-
սարկում է 64 հաստոցի և դրանցից յուրաքանչյուրի արտադրողականությունը
հասցրել է 8897 միջնաթելի. իսկ նույն ցեխից Վ. Տերյանը (սպասարկում է 40
մեքենայի)՝ ընդամենը 6244-ի։

Վերոհիշյալ փաստերը վկայում են, որ ֆաբրիկայի տնտեսական ու տեխ-
նիկական ղեկավարները, պարտիական, արհմիութենական և կոմերիտական
կազմակերպություններն անհրաժեշտ աշխատանք չեն կատարում ենթավար-
պետների ու ջուլհակների հետ, չեն հետևում առաջավորների փորձի տարած-
մանն ու արմատավորմանը, անուշադրության են մատնել բանվորների տեխ-
նիկական ուսուցման կազմակերպումը։

Արտադրական պլանները չկատարելու պատճառներից մեկն էլ այն է, որ
ղեկավարության անճարության հետևանքով, հատկապես վերջին շրջանում,
կոմբինատն ապահովված չէ բանվորական ուժով։ Ահա թե ինչու մանարան
ֆաբրիկան օրական 3 տոննայով պակաս թել է արտադրում, իսկ գործվածքա-
յին ֆաբրիկան՝ 20—25 հազար մետրով պակաս գործվածք. մեծ չափերի են
հասնում արտապլանային պարապուրդները, նորմալ աշխատանքային պայ-
մաններ չեն ստեղծվում բանվորների, հատկապես կանանց համար, որը բա-
ցասաբար է անդրադառնում աշխատանքային կարգապահության և բանվորա-
կան ուժի պակասը լրացնելու վրա։

Նշված թերությունները հետևանք են այն բանի, որ կոմբինատի պարտիա-
կան բյուրոն, դիրեկցիան (դիրեկտոր Գ. Կարապյան), ցեխի պետերը, վար-
պետները և ենթավարպետները ինչպես հարկն է չեն կազմակերպում արտա-
դրությունը և անհրաժեշտ պատասխանատվություն չեն ցուցաբերում հանձնա-
րարված գործի նկատմամբ։

Կոմբինատի համաչափ աշխատանքի ապահովման և պլանների կատար-
ման վրա խիստ բացասաբար է անդրադառնում նաև հումքի վատ մատակա-
րարումը։ Կոմբինատը չի ստանում պլանով նախատեսված համապատասխան
որակի բամբակ, որը դժվարացնում է տեխնոլոգիայով սահմանված կանոնների
պահպանումը և իջեցնում է աշխատանքի արտադրողականությունը։ Լենինա-
կանի տեքստիլ կոմբինատի նման աննորմալ վիճակը անթույլատրելի կերպով

հանդուրժում է Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի Թեթև արդյունաբերության վարչությունը (վարչության պետ Գ. Դարբինյան)։

Կոմբինատում մեծ չափերի են հասնում հափշտակումները, իսկ պարտիական, արհմիութենական կազմակերպությունները համապատասխան միջոցներ ձեռք չեն առնում այն անձանց նկատմամբ, որոնք ձեռք են մեկնում դեպի պետական ունեցվածքը։

Լուրջ թերություններ կան սոցիալիստական մրցության կազմակերպման ու ղեկավարման գործում։ Ինչպես տեքստիլ կոմբինատի, այնպես էլ քաղաքի մյուս ետ մնացող ձեռնարկությունների պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններն անբավարար են զբաղվում կոմունիստական աշխատանքի բրիգադների ու հարվածայինների շարժման ծավալմամբ։ Քաղաքի 19 ձեռնարկություններում, այդ թվում՝ կաշույքի ֆաբրիկայում, «Կարմիր Նոյեմբեր» փայտամշակման կոմբինատում մինչև օրս էլ միանգամայն անբավարար պայքար է տարվում կոմունիստական աշխատանքի բրիգադայի և հարվածայինի կոչման արժանանալու համար։



Պարտիայի քաղաքային կոմիտեն և պարտիական սկզբնական կազմակերպությունները ամենօրյա ուշադրություն չեն նվիրել նաև շինարարական կազմակերպությունների աշխատանքին։

Քաղաքի շինարարական տրեստը չկատարեց 1959 թվականի պլանները, իսկ շինարարական մոնտաժային աշխատանքի 1960 թվականի պլանը կատարեց 86,1, բնակարանային շինարարությանը՝ 76,3 տոկոսով, որի հետևանքով 1960 թվականին 271 ընտանիքներ չկարողացան նոր բնակարաններ ստանալ։

Դանդաղ է ընթանում կուլտուրական, առողջապահական և առևտրական օբյեկտների շինարարությունը։

Լենինականցիները դեռ շատ վաղուց հայտնի են որպես լավ շինարարներ, բայց այժմ մեծ չափերով ետ են մնում։ Մի՞թե պատվաբեր է, որ 8 տարուց ավելի ձգձգվում և չի ավարտվում ունիվերմագի շենքի կառուցումը։ Մինչև ե՞րբ պետք է ձգձգվի հեծանվի գործարանի նոր ցեխի կորպուսների, շինարարական մեքենաների (Ստրոմմաշինա) և դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանների, Նորավանում կառուցվող մանկական հիվանդանոցի, տեքստիլ կոմբինատի բանվորական ակումբի շինարարությունը և այլն։

Մի շարք օբյեկտների կառուցման ժամանակ թույլ է տրվել անորակ աշխատանք։ Այսպես, օրինակ, քաղաքի «Երևան» կինոթատրոնի նորակառույց շենքի (ճարտարապետներ Ս. Շահնազարյան և Ս. Ստեփանյան) շինարարությունը կատարել է «Լենշին» տրեստի № 1 վարչությունը՝ աշղեկ Գ. Նազարյանի ղեկավարությամբ։ Շենքի վրա ծախսվել է ավելի քան 900 հազար ռուբլի (հին դրամով)։ Բայց, մի քանի ամիս չանցած, թափվեց շենքի ծեփվածքը, պատերի վրա առաջացան ճեղքվածքներ։ Լուրջ թերություններ ունեն ջեռուցման սիստեմը և կոյուղին։ Անտեսելով հակահրդեհային պաշտպանության կանոնները, շենքը երկաթբետոնի փոխարեն ծածկվել է փայտով, տանիքի երկու կողմերը և եզրերը բաց են, օդափոխության երկու լուսամուտները ապակեպատ չեն, իսկ պարկետն անորակ է։ Ջրերը, անձրևաջրերը թափվում են ներս և քայքայում նորակառույց շենքը։ Շենքի մուտքը չունի կրկնակի դռներ։ Նա-



խատեսված էր էլեկտրականության կաբելային երկու գիծ, բայց գցված է մեկը։
ճիշտ չի կատարված նաև էլեկտրականության խմբավորումը, որի պատճառով
շռայլվում է էլեկտրաէներգիան։
Նախագծային խախտումների և անորակ կառուցումների մասին ժամա-
նակին բողոքներ եղել են, բայց դրանք մնացել են անհետևանք։ Զարմանալին
այն է, որ շենքը այս վիճակում ընդունել է պետական հանձնաժողովը։
Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները և շինարարական կազ-
մակերպությունները 1960 թվականին ավելի վատ աշխատեցին, քան 1959
թվականին։ Ի՞նչն էր դրա պատճառը—ոչ գործիմաց ղեկավարությունը, այն,
որ քաղաքի պարտիական կազմակերպությունները հանգստացել են ձեռք բե-
րած հաջողություններով և թուլացրել են կազմակերպական և դաստիարակչա-
կան աշխատանքը։
Անհրաժեշտ է բարձրացնել տնտեսության նկատմամբ պարտիական ղե-
կավարության մակարդակը, բարձրացնել պարտիական և սովետական յուրա-
քանչյուր աշխատողի պատասխանատվությունը հանձնարարված գործի և վերց-
րած պարտավորությունների նկատմամբ։ Այդ բանում մյուսներին օրինակ
պետք է տա ինքը՝ պարտիայի քաղաքային կոմիտեն։ Մինչդեռ նրա աշխա-
տանքը չի բավարարում ներկա պահանջներին։

Ա. Շ. ՍԱՐԳՍՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պատասխանատու
կազմակերպիչ

## ԻՆՉՈՒ ԱՉԱՋՐԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՀԵՏ Է ՄՆՈՒՄ

Թերթելով ՀԿՊ Իջևանի պարտիական կազմակերպության XXVIII կոնֆե-
րանսի (1957 թ.) արձանագրությունը՝ կհանդիպեք այսպիսի տողերի. «Հա-
ցահատիկային կուլտուրաների բարձր բերքատվության են հասել Ն. Աղդան,
Բնադլու, Աչաջուր գյուղերի կոլտնտեսությունները, որոնք ցորենի ու գարու
յուրաքանչյուր հեկտարից 1956 թ. նախատեսված 10,5-ի
փոխարեն ստացել են 12—15 ցենտներ բերք... Աչաջրի կոլտնտեսության
չորրորդ և իններորդ բրիգադներն իրենց մշակած ցանքատարածու-
թյան ամեն մի հեկտարից ստացել են 16—18 ցենտներ հացահատիկ։ Այդ
տարի Աչաջրի կոլտնտեսությունը եգիպտացորենի ցանքատարածության
յուրաքանչյուր հեկտարից ստացել է 180—250 ցենտներ կանաչ մասսա և 27
ցենտներ հատիկ. 1957 թ. խաղողի և պտղատու այգիների յուրաքանչյուր հեկ-
տարից միջին հաշվով ստացել է 33,8 ցենտներ խաղող, 40 ցենտներ պտուղ,
յուրաքանչյուր ֆուրաժային կովից՝ 1173 կիլոգրամ կաթ, յուրաքանչյուր
ոչխարից՝ 3,75 կիլոգրամ բուրդ»։
Իհարկե, ռեսպուբլիկայի առաջավոր կոլտնտեսությունների համեմա-
տությամբ, Աչաջրի կոլտնտեսության գյուղատնտեսական մթերքների ար-
տադրության ցուցանիշները գովելի չեն, մանավանդ որ այն ունի մեծ հնա-
րավորություններ՝ 3091 հեկտար հողատարածություն, որից վարելահող՝
938 հեկտար, խոտհարք՝ 470, այգիներ՝ 152 հեկտար և այլն։ Սակայն գյու-

ղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքների կատարմամբ այն դասվել է շրջանի լավագույն կոլտնտեսությունների շարքը։

Երկու տարի առաջ, 1959 թվականի փետրվարին, Իջևանի շրջանի գյուղատնտեսության առաջավորները մի դիմում ընդունեցին՝ ուղղված ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողներին։ Այդ դիմումով նրանք կոչ արեցին՝ ջանասիրաբար գործել յոթնամյա պլանը պատվով կատարելու և ետ մնացող կոլտնտեսություններն առաջավորներին հասցնելու համար։

Յոթնամյա պլանի հաջողությունը կլուծվի անմիջականորեն ձեռնարկություններում, ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, կառույցներում, սովխոզներում ու կոլտնտեսություններում։ Այս տեսակետից ավելի է բարձրանում սկզբնական պարտիական կազմակերպությունների դերը։ Նրանք պարտավոր են հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում, կոլտրնտեսությունում ստեղծագործական աշխատանքի մթնոլորտ ստեղծվի։

Դրա համար միայն ընդհանուր խոսքերը, ընդհանուր կոչերը բավական չեն, անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները. բոլոր կոմունիստներն ու կոմերիտականները մոբիլիզացնեն աշխատավորության ամբողջ եռանդն ու կարողությունը և դրանք ուղղեն պարտիայի ու կառավարության կողմից առաջադրված խնդիրները լուծելու համար։

Իջևանի շրջանի Գյուղատնտեսության առաջավորների դիմումի տակ ստորագրել են Աչաջրի կոլտնտեսության վարչության, պարտիական ու կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչները։ Թվում էր, թե նրանք իրենց խոսքի տերը կլինեին։

Ստացվեց հակառակը։ Վերոհիշյալ աննշան հաջողություններից մեծամտանալով՝ Աչաջրի պարտիական ու կոմերիտական կազմակերպությունները թուլացրին իրենց պայքարը կոլտնտեսության հետագա վերելքն ապահովելու համար։ Ավելին, կոլտնտեսության վարչությունը, պարտիական ու կոմերիտական կազմակերպությունները սկսեցին հաշտվողական վերաբերմունք ցույց տալ գյուղատնտեսական արտելի կանոնադրությունը, աշխատանքային կարգապահությունը խախտողների նկատմամբ։

Հետևանքը եղավ այն, որ Աչաջրի կոլտնտեսությունը ո՛չ միայն չկատարեց գյուղատնտեսական մթերքների արտադրության վերաբերյալ իր վերցրած սոցիալիստական պարտավորությունը, այլև նույնիսկ թերակատարեց յոթնամյա պլանի առաջին երկու տարվա առաջադրանքները, իջեցնելով գյուղատնտեսական արտադրության որոշ ճյուղերի զարգացման նախկին մակարդակը։

Մեր ասածը հիմնավորելու համար բերենք մի քանի փաստեր։ Կոլտնտեսությունը 1957 թվականին կատարել է ցորենի՝ 416, գարու՝ 85 հեկտար ցանք, յուրաքանչյուր հեկտարից ստացել է 12 ցենտներ ցորեն, 11,2 ցենտներ գարի։ Կոլտնտեսությունը պլանավորել էր 1959 թվականին կատարել 404 հեկտար ցորենի ցանք (միջին բերքատվությունը հեկտարից 12,8 ցենտներ)։ Փաստորեն ցանվել է 445 հեկտար ցորեն, որից հնձվել է 117 հեկտար (միջին բերքատվությունը՝ 2,8 ցենտներ)։ Անցյալ տարի պլանավորված է եղել կատարել 360 հեկտար ցորենի (միջին բերքատվությունը՝ 13 ցենտներ), 100 հեկտար գարու ցանք (միջին բերքատվությունը՝ 14,7 ց.)։



Փաստորեն ցանվել է ցորեն՝ 269 (միջին բերքատվությունը 9,7 ցենտներ), գարի՝ 45 հեկտար (միջին բերքատվությունը 13,3 ցենտներ)։

Գուցե Աչաջրի ընկերները ցորենի, գարու ցանքերի կրճատումը և բեր-
քատվության իջեցումը բացատրեն եգիպտացորենի ու խոտաբույսերի ցան-
քատարածությունների ընդարձակմամբ՝ անասնաբուծության զարգացման
բազան ամրապնդելու նպատակով։ Փաստերն այդ չեն վկայում։ Յոթնամյա
պլանով նախատեսված է եղել 1959 թվականին ցանել 50, 1960 թվականին՝
100 հեկտար եգիպտացորեն, յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով
ստանալ առաջին տարում 25, երկրորդ տարում՝ 26 ցենտներ չոր հատիկ։
Փաստորեն 1959 թվականին կատարվել է 33 (10,7 ցենտներ միջին բերքա-
տվությամբ), 1960 թվականին՝ 45 հեկտար ցանք (19,6 ցենտներ միջին բեր-
քատվությամբ)։ Թերակատարվել են նաև սիլոսի ու խոտի կուտակման առա-
ջադրանքները։ 1958 թվականին կոլտնտեսությունը պատրաստել է 1330,
1959 թվականին՝ 650 տոննա սիլոս։

Աչաջուրցիները բուսաբուծության բնագավառի իրենց անհաջողության
պատճառը համարում են կարկուտը։ Այստեղ տեղին է հիշել ժողովրդական՝
«արտը խախուտ, մհանեն կարկուտ» ասացվածքը։ Իհարկե, մենք հեռու ենք
այն մտքից, որ բնական աղետները չեն կարող ազդել բերքատվության վրա։
Բայց չէ՞ որ կոլտնտեսային, համայնական աշխատանքի ուժն ու հզորությունը
նրանումն է, որ կարկտից հետո մոբիլիզացվեն ողջ կարող ուժերը, անվնաս
մնացած և թույլ կարկտահարված տարածությունների ցանքերը լավ խնամեն,
հնձեն ժամանակին, կալսեն ու ամբարեն, դրանով իսկ նվազեցնեն վնասի
չափը։ Այստեղ աչքաթող են արել անվնաս մնացած ցանքատարածություն-
ների խնամքը, ձգձգել են հունձը, կալսումն ու ամբարումը, որը տեղիք է տվել
բերքի զգալի կորուստների։

Փորձը ցույց է տալիս, որ կոլտնտեսության այն բրիգադներում, որտեղ
աշխատանքն ավելի լավ է կազմակերպված և հասկավոր կուլտուրաների ցան-
քը, մշակումն ու բերքահավաքը կատարվում են ագրոկանոններին համապա-
տասխան, ավելի լավ արդյունքի են հասնում։ Այսպես՝ անցյալ տարի չորրորդ
բրիգադն յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացավ մոտ 12 ցենտ-
ներ ցորեն, 30,5 ցենտներ եգիպտացորենի հատիկ։ Հիշենք, որ կոլտնտեսու-
թյունում միջին հաշվով ստացել են յուրաքանչյուր հեկտարից 9,7 ցենտներ
ցորեն, 19,6 ցենտներ եգիպտացորեն։

Ինչի՞ շնորհիվ է, որ չորրորդ բրիգադն թե՛ ցորենի, թե՛ եգիպտացորենի
ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ավելի
շատ բերք է ստացել, քան կոլտնտեսությունը։ Այդ,— ասում է կոլտնտե-
սության գյուղատնտես ընկ. Ա. Վարդանյանը,— արդյունք է այն բանի, որ
չորրորդ բրիգադայում լավ են մշակել ցանքերն ու կարճ ժամկետում կատա-
րել բերքահավաքը։ Այս բրիգադայում չափահաս կոլտնտեսականների հետ
եգիպտացորենի մշակմանը ակտիվ մասնակցել են նաև մեծահասակ դպրոցա-
կանները, որոնք հոգատար կերպով փխրեցրել ու քաղհանել են յուրաքան-
չյուր մետր ցանքատարածություն և գուրգուրանքով աճեցրել ամեն մի բույս։

Եթե կոլտնտեսության բոլոր բրիգադները աճեցնեին այնպիսի բերք,
ինչպիսին աճեցրել են չորրորդ բրիգադայի դաշտերը մշակողները, անցյալ
տարի կոլտնտեսությունը լրացուցիչ կպահեստավորեր՝ ավելի քան 600 ցենտ-

ներ ցորեն, 500 ցենտներ եգիպտացորենի չոր հատիկ։ Բայց կան դաշտավարական բրիգադներ, որոնք յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ավելի ցածր բերք են ստացել, քան կոլտնտեսությունը։ Այսպես, օրինակ, դաշտավարական յոթերորդ բրիգադան, որի բրիգադավարը կոմունիստ Գ. Ավթանդիլյանն է, յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 6,7 ցենտներ ցորեն, 17,6 ցենտներ եգիպտացորեն։ Կոմունիստ Ա. Աթարբեկյանի ղեկավարած բրիգադան եգիպտացորենի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 7,6 ցենտներ չոր հատիկ։

Հատիկային տնտեսության վատ վիճակի և խոտհարքներից ցածր բերք ստանալու հետևանքով կոլտնտեսությունը չի կարողացել ձմեռային շրջանում կերով լիովին ապահովել հանրային նախիրն ու հոտը, որի պատճառով մեծ գումարներ են ծախսել ո՛չ միայն խտացրած, այլև կոշտ կեր ձեռք բերելու համար։ Միայն 1959—1960 թվականների ձմեռը կեր գնելու վրա ծախսվել է 17620 ռուբլի (նոր դրամով)։

Կերի, մանավանդ խտացրած ու հյութալի կերի պակասը, անասունների անբավարար խնամքը բացասաբար են անդրադարձել անասնաբուծության զարգացման վրա։ Կոլտնտեսությունը թերակատարել է խոշոր եղջերավոր անասունների, այդ թվում կովերի գլխաքանակի ավելացման, կաթի, մսի, բրդի արտադրության 1959 և 1960 թվականների պլանները։ Եթե 1957 թվականին յուրաքանչյուր կովից ստացվել է 1173 կիլոգրամ կաթ, ապա հետագա տարիներին հետզհետե նվազելով, անցյալ տարի իջել է մինչև 853,5 կիլոգրամի։ Վերջին տարիներս ավելացել են անկումները, անասունների մայրական կազմում զգալի տոկոս է կազմում ստերջությունը։ Եթե 1958 թվականին եղել է 32 գլուխ խոշոր եղջերավոր, 129 մանր եղջերավոր անասունի և 67 խոզի կորուստ, ապա 1960 թվականին համապատասխանաբար՝ 138, 339, 111 գլուխ։ Անասունների մայրական կազմի ստերջության բարձր տոկոսի, մատղաշի նկատմամբ անհրաժեշտ հոգատարություն չցուցաբերելու հետևանքով անցյալ տարի 100 կովից ստացվել է 71 հորթ, 100 մաքիից 92 գառ, 1 մերուից՝ 10,4 խոճկոր։

Անասնապահության վիճակը թերևս ավելի լավ լիներ և յոթնամյակի առաջադրանքներն ավելի հաջող կատարվեին, եթե պարտիական ու կոմերիտական կազմակերպությունները սիստեմատիկաբար և հետևողականորեն, ինչպես հարկն է զբաղվեին այդ կարևոր ճյուղով և կոմունիստների ու կոմերիտականների կարող ուժերը կենտրոնացնեին այդ բնագավառում։

Ճիշտ է, պարտիական կազմակերպության ժողովներում բազմիցս քննարկվել են հանրային տնտեսության ամրապնդման, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու հարցեր։ Շատ ընկերներ իրենց ելույթներում խոսել են ցանքերը վատ մշակելու, մեքենայական պարկի կարողությունը լրիվ չօգտագործելու, անասուններն անբավարար խնամելու, աշխատանքային կարգապահությունը թուլանալու, բրիգադավարների ու ֆերմաների վարիչների անպատասխանատվության մասին։

Բայց դրանք եղել են միայն ընդհանուր խոսակցություններ. գործարարությունը բացակայել է կոմունիստների մոտ, պարտիական կազմակերպությունը ամենայն սրությամբ չի զբաղվել այն բրիգադավարների ու ֆերմաների վարիչների հարցերով, որոնք չենք կատարել իրենց առաջադրանքները։



Աններելի է. երբ առանձին կոմունիստներ՝ աշխատանքի եռուն ժամանակ բացակայում են հանրային գործից, խախտում կոմունիստական էտիկան. շատ կոմերիտականներ չեն աշխատում հանրային արտադրությունում։ Կոմունիստներ ու կոմերիտականներ կան, որոնք իրենց արժանապատվությունից ցածր են համարում աշխատել անասնապահության բնագավառում որպես անասնապահներ, կթվորներ, անմիջականորեն կաթ, միս արտադրողներ։ Պարտիական կազմակերպությունում հաշվի առնված պարտիայի 86 անդամներից ու անդամության թեկնածուներից անասնաբուծության բնագավառում աշխատում են միայն 12-ը, որոնց մեծ մասը ֆերմաների վարիչներ, կաթ մշակողներ ու չափողներ են։ 150 կոմերիտականներից միայն 7-ն են աշխատում կովաբուծական ֆերմայում։

Պարտիական ու կոմերիտական կազմակերպությունները պատասխան չեն պահանջել յուրաքանչյուր կոմունիստից ու կոմերիտականից, թե նրանք ինչ են արել կոլտնտեսությունում աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։

Այժմ, երբ պարտիան գյուղատնտեսության զարգացման, հատկապես անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը համարում է համաժողովրդական գործ, Աշաքրի կոմունիստները պետք է ավելի ակտիվորեն մասնակցեն անասնաբուծության զարգացման համար ծավալված պայքարին։

Անդրկովկասյան ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում արտասանած իր ճառում ընկեր Ն. Ս. Խրուշչովը հիացմունքով խոսեց երիտասարդ կթվորուհի Մերի Կվանճանտիրաձեի մասին, որն ավարտելով տասնամյակը, սիրով դարձել է կթվորուհի։

Աշաքրի կոլտնտեսությունում երիտասարդության որոշ մասը, միջնակարգ կրթություն ստանալուց հետո, չի ցանկանում զբաղվել անասնապահությամբ։ Գյուղի միջնակարգ դպրոցն անցյալ տարի ավարտած երիտասարդներից 20 կոմերիտականներ գերադասում են թրև գալ, քան հանրային դաշտում հանրօգուտ աշխատանք կատարել։

Անմխիթար է նաև այգեգործության վիճակը։ Չնայած տարեցտարի ընդարձակվում է բերքատու այգիների տարածությունը, բայց պակասում է խաղողի ու մրգի համախառն բերքը։ 1957 թվականին 9 հեկտար բերքատու խաղողի այգիներից ստացվել է 304 ցենտներ, 1959 թվականին 26 հեկտար բերքատու այգիներից՝ 110 ցենտներ բերք։ Դրա հիմնական պատճառը այգիների վատ մշակությունն է։ Ժամանակին չեն փխրեցնում միջշարային տարածությունները, անհրաժեշտ քանակի պարարտանյութ չի տրվում, հիվանդությունների ու վնասատուների դեմ պայքար չի կազմակերպվում։ Իսկ «կարկտահարությունից» հետո բոլորովին աչքաթող է արվում այգիների մշակումը։ Հետևանքը լինում է այն, որ ոչ միայն չեն վերականգնվում կարկտից վնասված շիվերը, այլև մոլախոտերը բարձրանում են, խեղդում վազի դալար շիվերը, որոնք հաջորդ տարվա բերքի հիմքն են հանդիսանում։ Խաղողը պահանջում է սիստեմատիկ խնամք, մանավանդ կարկտահարությունից հետո՝ լրացուցիչ սնուցում և հոգատարություն։

Ո՞րն է Աշաքրի կոլտնտեսության այսպիսի վիճակի պատճառը։

— Բրիգադավարների ու ֆերմաների վարիչների անպատասխանատվությունը, կոլտնտեսությունում գոյություն ունեցող աշխատանքային

Թույլ կարգապահությունը,— ասում են բարեխիղճ կոլտնտեսականները։

Իրոք որ այդպես է. 1959 թվականին կոլտնտեսությունում հաշվի առնված 982 աշխատող ձեռքերից աշխօրերի պարտադիր մինիմումը չեն կատարել 332, 1960 թվականին՝ մոտ 200 մարդ, որոնց թվում բազմաթիվ կոմերիտականներ և առանձին կոմունիստների ընտանիքների անդամներ։

Կոլտնտեսությունում կան չվողներ, անբաններ, ծրիակերներ, որոնք առանց աշխատելու օգտվում են հանրային բարիքներից, խժռում իրենց հարազատների վաստակը։ Կոմերիտական Ժ. Քոբելյանը մեկ տարում վաստակել է ընդամենը 58, Հ. Գասպարյանը՝ 72 աշխօր։ Երիտասարդ, ֆիզիկապես առողջ Ժ. Մելիքբեկյանը տարվա ընթացքում հանրային տնտեսության մեջ աշխատել է ընդամենը երկու օր։ Ժ. Փիրումյանը ավելի շատ մասնավոր գործերով է զբաղվում, քան կոլտնտեսությունում հանրային աշխատանքով։

Կոլտնտեսություններում որոշ չափով աշխատանքային կարգապահության խախտման տեղիք են տալիս Իջևանի հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, որոնք առանց կոլտնտեսությունների վարչությունների թույլտվության կոլտնտեսականներին ընդունում են աշխատանքի։

Աչաջրի կոլտնտեսությունում արտադրության բոլոր ճյուղերում էլ շատ ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Եգիպտացորենի մշակության (բացի վարից ու հողի նախապատրաստումից) բոլոր աշխատանքները տարվում են ձեռքով, 1960 թվականին 2200 տոննա սիլոսի պատրաստման համար աննշան չափով է օգտագործվել մեքենայական ուժը։ Այստեղ դեռևս ձեռք չեն քաշել պապենական սովորությունից. խոտը հնձում են գերանդիով, հավաքում ու դիզում ձեռքով։ Անհրաժեշտ է հարթեցնել, բարելավել կոլտնտեսության խոտհարքները (ինչպես կատարում են ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններ), և հնարավոր կլինի օգտագործել խոտ հնձող մեքենան։ Եղած տեխնիկան էլ լրիվ բեռնվածությամբ չի օգտագործվում։ Յուրաքանչյուր կոմբայն 1959 թվականին հավաքել է 40, 1960 թվականին՝ 80 հեկտար հասկավոր կուլտուրաների բերք։ Աննշան կարողությամբ են աշխատում խոտհնձիչ և սիլոսահատ մեքենաները։

Մեքենայացման մակարդակը խիստ ցածր է անասնապահական ֆերմաներում։ Չկան ինքնախմոցներ. կերը մատուցում են մարդիկ, չկան կեր մանրացնելու, թրջելու սարքավորումներ։

Արտադրանքի մեկ միավորի վրա ավելի շատ մարդկային աշխատանք և սահմանվածից ավելի նյութական միջոցներ ծախսելու հետևանքով չափազանց բարձր է արտադրված մթերքների ինքնարժեքը։ 1959 թվականին մեկ ցենտներ եգիպտացորենի ինքնարժեքը եղել է 215, կաթինը՝ 215, խոզի մսինը՝ 1464, խաղողինը՝ 1417 ռուբլի (հին դրամով)։

Այդպիսի ինքնարժեքով մթերքների արտադրությունը, արտադրական պլանների թերակատարումը բացասաբար են անդրադառնում կոլտնտեսության եկամտի ու կոլտնտեսականների վաստակի վրա։ Միայն 1959 թվականին հացահատիկի, կաթի ու մսի արտադրության պլանները թերակատարելու հետևանքով կոլտնտեսությունը ավելի քան 150 հազար ռուբլով (հին դրամով) պակաս եկամուտ է ստացել։



Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելուն խթանում է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։ Աչաջրում արտադրական առաջադրանքների գերակատարման համար պարգև վարձատրություն է տրվում ծխախոտագործության, մասամբ էլ անասնաբուծության բնագավառում աշխատողներին։ Իհարկե, այդ լավ է։ Սակայն կոլտնտեսության վարչությունն ու պարտիական կազմակերպությունը վարձատրության պարգև հավելման ձևը պետք է կիրառեն նաև տնտեսության մյուս ճյուղերում, հատկապես անասնապահության մեջ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումը պարտավորեցրեց սկզբնական պարտիական կազմակերպություններին ավելի բարձրացնել մասսաների մեջ կատարվող քաղաքական-կազմակերպական աշխատանքի մակարդակը, կոմունիստների, կոմերիտականների, գյուղատնտեսության ֆրոնտում աշխատողների ջանքերն ուղղել յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու, գյուղատնտեսական մթերքներ արտադրելու և պետությանը վաճառելու ստանձնած պարտավորությունները կատարելու նպատակին։

Պարտիական կազմակերպության ժողովներում, բյուրոյի նիստերում բազմիցս քննվել է մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքի ծավալման հարցը։ Սակայն կոմունիստներն այդ որոշումները անբավարար են կենսագործում։ Պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի հիմնական թերությունն այն է, որ ագիտացիան չի շաղկապվել կոլտնտեսության առջև ծառացած խնդիրների լուծման, հանրային տնտեսության զարգացումն արգելակող դժվարությունները հաղթահարելու հետ։ Բրիգադաներին և օղակներին սոցիալիստական մրցության մեջ ընդգրկելուց հետո, կոլտնտեսության վարչությունն ու պարտկազմակերպությունն այլևս չեն ստուգել թե ով ինչպես է կատարում իր ստանձնած պարտավորությունը։ Անբավարար է արտադրության առաջավորների փորձի մասսայականացումն ու դրա արմատավորումը արտադրության մեջ։

Պարտիական կազմակերպությունը չի ուսումնասիրել հասկավոր կուլտուրաների ցանքատարածություններից բարձր բերք ստացած դաշտավարական բրիգադաների, առաջավոր կթվորուհի Ա. Փիրումյանի, լավագույն խոզապահ Գ. Աղինյանի, ծխախոտի բարձր բերք աճեցնող Լ. Ալիխանյանի և մյուս առաջավորների փորձը, դրանք չի ընդհանրացրել ու ներդրել արտադրության մեջ։ Այդ առաջավորներն Աչաջրի փարոսներն են, որոնց հասնելուն և անցնելուն պետք է ձգտի ամեն մի կոլտնտեսական ու կոլտնտեսուհի։

Գյուղատնտեսական գիտության և առաջավորների փորձի գործադրումը արտադրության մեջ հնարավորություն կստեղծի մեծ չափով ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Կոլտնտեսությունում ըստ արժանվույն չեն խրախուսվում իրենց արտադրության առաջավորներն ու սոցիալիստական պարտավորությունները կատարողները։ Իհարկե, խրախուսանքի համար չպետք է չափանիշ ընդունել երկրի առաջավորների բերքատվության կամ կաթնատվության նորմաները, այլ հիմք ընդունել, թե ովքեր են իրենց կոլտնտեսությունում պլանային առաջադրանքից բարձր արտադրանք տալիս։

Աշաջրի կոլտնտեսության այս վիճակը քիչ է անհանգստացրել Իջևանի շրջանի ղեկավար օրգաններին՝ պարտիայի շրջանային կոմիտեին, Աշխատավորների Դեպուտատների շրջանային Սովետի գործադիր կոմիտեին ու նրա գյուղատնտեսական տեսչությանը։ Վերջին երեք-չորս տարին փոփոխելով կոլտնտեսության վարչության նախագահներին, նրանք աչքաթող են արել հիմնականը, կոլտնտեսության մի շարք ճյուղերի ետ մնալու պատճառների խոր ուսումնասիրությունը։ Մեր կարծիքով, այդ արդյունք է նրա, որ ծխախոտագործության բնագավառում աշաջուրցիների որոշակի հաջողությունները հանգստացրել է շրջանի ղեկավարությանը, որոնք ընդհանրապես Աշաջրի կոլտնտեսությունը համարում են առաջավոր։ Իսկ այդ ապակողմնորոշել է պարտիական ու կոմերիտական կազմակերպություններին։

Աշաջրի կոլտնտեսությունում կան ազնիվ, բարեխիղճ աշխատողներ, որոնք իրենց ջանքերը գործի են դնում հանրային տնտեսությունն ամրապնդելու, յոթնամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Գյուղում հիացմունքով են խոսում կոմերիտական Մ. Մնացականյանի մասին։ Նա անցյալ տարի իր խնամած 150 խոշոր եղջերավոր անասունը անկորուստ պահպանել է և միջակից բարձր գիրությամբ վաճառել է պետությանը։ Կոլտնտեսուհի Ա. Փիրումյանն իր խնամած յուրաքանչյուր կովից ստացել է 1258 կիլոգրամ կաթ, որը 400 կիլոգրամով ավելի է կոլտնտեսության կովերի միջին կաթնատվությունից։

Հանրային տնտեսության մեջ ազնիվ աշխատանքի լավագույն օրինակ են ցույց տալիս կոլտնտեսականներ՝ Ա. Մխիթարյանը, Վ. Օհանյանը, Վ. Եգանյանը։

Անդրկովկասյան ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության մասնակիցները Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի գյուղատնտեսության բոլոր աշխատողներին ուղղված իրենց Դիմումով կոչ արեցին կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, սովխոզների բանվորներին ու բանվորուհիներին, մասնագետներին՝ «ակտիվորեն ներգրավվել համաժողովրդական արշավի մեջ բնակչության համար սննդամթերքներ և արդյունաբերության համար հումքի առատություն ստեղծելու նպատակով... Մեր խնդիրն է հասնել այնպիսի դրության, որպեսզի գյուղատնտեսության բոլոր ճյուղերում հանրային արտադրությունն առաջատար տեղ գրավի»։

Աշաջրի կոլտնտեսությունն ունի մեծ հնարավորություններ ու ռեզերվներ, որոնց խելացի օգտագործման շնորհիվ կարելի է բարձրացնել հացահատիկային կուլտուրաների ու կերաբույսերի բերքատվությունը, ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Այդ ռեզերվներն են՝ ջրհան կայանի միջոցով (որի կառուցման համար վճռական է նաև ռեսպուբլիկայի ջրային տնտեսության մինիստրության դերը) ընդարձակել ոռոգելի տարածությունը, բարելավել խոտհարքները, արտադրության մեջ լայնորեն ներդնել գյուղատնտեսական տեխնիկան, կիրառել կոմպլեքսային մեքենայացում, արմատավորել գյուղատնտեսական գիտությունն ու առաջավորների փորձը։

Աշաջրի կոլտնտեսության պարտիական կազմակերպության պարտքն է՝



բրիգադաներում, ֆերմաներում ու օղակներում լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, գլխավորել մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը՝ արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու ՍՄԿԿ XXII համագումարը։

Աշաջրի վայրէջքը պետք է կասեցնել։ Այն պետք է և կարող է դառնալ ռեսպուբլիկայի առաջավոր կոլտնտեսություն՝ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի գծով։

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

## ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՎԻՃԱԿԸ ԲԱՐԵԼԱՎՎՈՒՄ Է

Շահումյանը ռեսպուբլիկայի այն շրջաններից է, որ 1960 թվականին տնտեսական լուրջ հաջողությունների հասավ։ Այստեղ կարելի էր մեկ-մեկ թվել շրջանի աշխատավորների լավագույն գործերը, կոլտնտեսությունների, սովխոզների աշխատանքի արդյունքները. բայց դրանց մասին շատ է գրվել ու խոսվել։ Տվյալ դեպքում ցանկալի է խոսել ավելի շուտ գաղափարական-քաղաքական այն աշխատանքի մասին, որ կատարվում է շրջանում։

Քաղաքական պրոպագանդան մոտեցնել կյանքին, այն ուղղել հիմնական նպատակակետին, կատարելագործել քաղաքական խոսքի մատուցման ձևը, մեթոդը, այս հարցերը շատ էին մտահոգում շրջկոմին։ Դրանք ավելի սրությամբ ծառացան նրա առջև հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» 1960 թվականի հունվարյան հայտնի որոշումից հետո։

Այժմ նկատելի է, որ այս ուղղությամբ ձեռնարկված միջոցները զգալի չափով նպաստել են քաղաքական աշխատանքի աշխուժացմանը։

Ամենից առաջ շրջկոմին մտահոգում էր այն, թե ինչպես պրոպագանդիստական աշխատանքի ոլորտում ընդգրկել արտադրության մեջ զբաղված բոլոր աշխատավորներին։ Այս նկատառումով էլ ընդլայնվեց պարտիական լուսավորության ցանցը. քաղխմբակներում, քաղդպրոցներում, տեսական սեմինարներում ընդգրկվեցին ոչ միայն մեծ թվով պարտիական, այլև անպարտիական բանվորներ, կոլտնտեսականներ, ինժեներներ, բժիշկներ, ուսուցիչներ և այլն։ Եթե քաղաքական լուսավորության անցյալ ուսումնական տարում գործում էին 65, ապա ընթացիկ ուսումնական տարում կոմպլեկտավորվել և նորմալ աշխատում են մոտ 100 քաղխմբակներ, քաղդպրոցներ և սեմինարներ, որոնցում բացի կոմունիստներից և կոմերիտականներից ընդգրկված են հազարից ավելի անպարտիականներ։

Պարտիական պրոպագանդայի գաղափարական խոր բովանդակությունը և ներգործունությունը մեծապես կախված է պրոպագանդիստական կադրերի տեսական պատրաստականությունից և պրոպագանդիստական աշխատանքի վարպետությունից։

Պարտիայի շրջանային կոմիտեն հատուկ ուշադրություն է հատկացնում պրոպագանդիստների ընտրության վրա։ Շրջանի 75 քաղխմբակի և քաղդպրոցի պրոպագանդիստներից 69-ն ունեն բարձրագույն կրթություն և պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ։ Ընթացիկ ուսումնական

տարում պրոպագանդիստական աշխատանքի են առաջադրվել արդյունաբե-
րության և գյուղատնտեսության շատ մասնագետներ։
Պարտիայի շրջկոմը հետևողական աշխատանք է կատարում պրոպա-
գանդիստների հետ, նրանց համար սիստեմատիկաբար կազմակերպում է
սեմինարներ առանձին թեորիական հարցերի, լավագույն պրոպագանդիստ-
ների աշխատանքի փորձի և մեթոդական այլ հարցերի վերաբերյալ։ Շրջկոմի
քաղլուս կաբինետը ամիսը մեկ անգամ անց է կացնում պրոպագանդիստ-
ների ու ագիտատորների սեմինար պարապմունք, կազմակերպում կոնսուլ-
տացիաներ ու տեսական զրույցներ։
Պրոպագանդիստներին տեսական ու մեթոդական մեծ օգնություն է ցույց
տալիս քաղլուս կաբինետին կից գործող մեթոդ-խորհուրդը։ Մեթոդ-խորհրդի
անդամները հաճախ լսում են քաղխմբակների և սեմինարների պարապ-
մունքները, վերլուծում նրանց աշխատանքը, մեթոդական օգնություն ցույց
տալիս պրոպագանդիստներին։ Քաղլուս կաբինետում փակցված է հատուկ
ցուցափեղկ, որի նյութերը պատմում են շրջանի առաջավոր պրոպագան-
դիստների աշխատանքի մասին։ Դրանց թվում է, օրինակ, Սովետաշենի
տրիկոտաժի ֆաբրիկայի ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող քաղխմբակի
պրոպագանդիստ Զ. Տոնոյանը, որն իր բարեխիղճ աշխատանքով վայելում
է լավագույն պրոպագանդիստի համբավ։
Քաղաքական լուսավորության բնագավառում շրջկոմի և սկզբնական
պարտիական կազմակերպությունների ձեռնարկած միջոցառումները ուղղ-
ված են մի հիմնական նպատակի. ավելի կազմակերպված, ավելի խելացիո-
րեն պարտիական և անպարտիական մասսաներին դաստիարակել կոմու-
նիստական գաղափարախոսության ոգով, նպաստել նրանց ստեղծագործա-
կան մասնակցությանը կոմունիզմի հաղթական երթին։
Թե ինչպես քաղաքական աշխատանքի հաջող ընթացքը դրական ազ-
դեցություն է թողնում այս կամ այն կոլտնտեսության, գործարանի, ֆաբ-
րիկայի ողջ գործունեության վրա, կարելի է համոզվել հետևյալ օրինակ-
ներով.
Արդեն չորրորդ տարին է, որ Ն. Ջարբախի և Ստալինի անվան կոլ-
տնտեսություններում հաջողությամբ գործում են գյուղատնտեսության էկո-
նոմիկան ուսումնասիրող խմբակներ, որոնք ղեկավարում են այդ կոլ-
տնտեսությունների նախագահներ Ս. Մովսիսյանը և Ս. Մեժլումյանը։
Խմբակներում ընդգրկված են բրիգադավարներ, օղակավարներ, ֆերմաների
վարիչներ, առաջավոր այգեգործներ ու անասնապահներ։ Ուսումնասիրվող
թեմաները սերտորեն կապվում են իրենց կոլտնտեսությունների առջև
դրված կոնկրետ խնդիրների հետ։
Ստալինի անվան կոլտնտեսության գյուղատնտեսության էկոնոմիկան
ուսումնասիրող խմբակում տեսական թեմաների հետ միասին, ունկնդիր-
ները ծանոթանում են հանրային տնտեսության արտադրության զարգաց-
ման հեռանկարների հետ։ Տնտեսական գիտելիքներին տիրապետելը մե-
ծապես նպաստում է կոլտնտեսային արտադրության աշխատողների ակ-
տիվության բարձրացմանը, նրանց ավելի բանիմաց դառնալուն և տնտեսու-
թյունը լավ ղեկավարելուն։
Ստալինի անվան և Ն. Ջարբախի կոլտնտեսությունները ժամանակին
կատարեցին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնե-



քու ուղղությամբ վերցրած սոցիալիստական պարտավորությունները։ Այս-
պես, օրինակ, 100 հեկտար հողատարածության դիմաց Ստալինի անվան
կոլտնտեսությունը 1960 թվականին արտադրեց 154 ցենտներ միս, 940 ցեն-
տներ կաթ, 10,7 ցենտներ բուրդ և 293,200 հատ ձու (100 հեկտար հացահա-
տիկային ցանքատարածության դիմաց)։ Ջարբախի կոլտնտեսությունը յու-
րաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ստացավ 840 ցենտներ
կաթ, 117 ցենտներ միս, 800 կգ. բուրդ։
Էկոնոմիկայի կոնկրետ հարցերի վերաբերյալ արդեն տեղի է ունեցել 5
տեսական կոնֆերանս։ Հրազդանի սովխոզում կազմակերպված տեսական
կոնֆերանսին մասնակցեցին շուրջ 150 բանվոր։ Ընթացիկ ուսումնական
տարվա սկզբից շրջկոմին կից գործում է գյուղատնտեսության էկոնոմիկան
ուսումնասիրող սեմինար, որը ղեկավարում է պարտիայի շրջկոմի առաջին
քարտուղար Դ. Հովհաննիսյանը։ Սեմինարում ընդգրկված են շրջանի պար-
տիական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողները։
Որքան էլ որ քաղխմբակների և տեսական սեմինարների լայն ցանց
ստեղծվի, միևնույն է, այն չի կարող ընդգրկել բոլորին, նրա շրջանակները
նեղ են. ուստի շրջկոմը և սկզբնական պարտիական կազմակերպություն-
ները միշտ էլ մեծ նշանակություն են տալիս դասախոսական պրոպագան-
դային և քաղաքական աշխատանքի այլ մասսայական միջոցառումներին։
Կարդացված դասախոսությունները և զեկուցումները հիմնականում նվիր-
ված են միջազգային կոմունիստական և բանվորական շարժմանը, արդի
միջազգային դրությանը, Կոմունիստական և բանվորական պարտիաների
ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցության Հայտարարությանն ու
Դիմումին, կոմունիզմի կառուցման հարցերին և այլն։
Շրջկոմը և սկզբնական պարտկազմակերպությունները այս կամ այն
դասախոսության թեման ընտրելիս առաջնորդվում են նրանով, որ թեման հա-
մապատասխանի տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի առջև
դրված արտադրական խնդիրներին, աշխատավորների պահանջներին։ Այսպես,
օրինակ, Ստալինի անվան տրիկոտաժի ֆաբրիկայի պարտկազմակերպությու-
նը կազմակերպեց շրջկոմի դասախոսական խմբակի անդամ Ա. Ջանոյանի դա-
սախոսությունը «Կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ»
թեմայով, որը կենսական նշանակություն ուներ ֆաբրիկայի համար։ Զեկուցո-
ղը և ելույթ ունեցողները կոնկրետ փաստերով ցույց տվին, թե ինչպես ֆաբ-
րիկայի բանվորներն իրենց կոմունիստական վերաբերմունքով նպաստում են
աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Շատ օրինակներով
ցույց տվին, թե ինչպես բազմաթիվ բանվորներ գործով պայքարում են կոմու-
նիզմի կառուցման համար։
Շրջանի կոլտնտեսություններում, սովխոզներում, արդյունաբերական
ձեռնարկություններում, հիմնարկություններում ամենուրեք կիրառվում են
քաղաքական աշխատանքի տարբեր ձևերն ու մեթոդները։ Բացի դասախոսու-
թյուններից ու զեկուցումներից, հարց ու պատասխանի երեկոները, կենդանի
ամսագրերը, հանդիպումները հին բոլշևիկների, գիտության, արվեստի և գրա-
կանության գործիչների հետ, բարեկամության երեկոները և այլ միջոցառում-
ներ կազմում են պարտիական կազմակերպությունների քաղաքական-մաս-
սայական աշխատանքների անկապտելի մասը։ Շրջկոմի և սկզբնական պար-
տիական կազմակերպությունների տեսադաշտից չեն վրիպում նաև գիտա-

աթեիստական հարցերը. կոլտնտեսություններում և սովխոզներում հաճախակի կազմակերպվում են գիտա-աթեիստական երեկոներ։ Այդպիսի երեկոներ են անցկացվել, օրինակ՝ Թաղագյուղի, Գեղանիստի, Արգավանդի, Սպանդարյանի կոլտնտեսություններում, № 15 և Մասիս սովխոզներում երեկոներից մեկում «Գիտությունը և կրոնը» թեմայով հետաքրքրական դասախոսություն է կարդացել № 89 դպրոցի քիմիայի դասատու Բ. Հարությունյանը, որը փորձերի միջոցով հաստատում էր իր ասածները և համոզում ունկնդիրներին։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը հատուկ ուշադրություն նվիրեց գյուղատնտեսության բոլոր ռեզերվների բացահայտմանն ու օգտագործմանը, գիտության նվաճումների և առաջավորների փորձի տարածմանն ու արմատավորմանը։ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովն իր ելույթում նշեց, որ գյուղատնտեսական արտադրության առաջավորները մեր փարոսներն են, որոնք նշում են գյուղատնտեսությունը օրինակելի ձևով վարելու ուղին։

Գյուղատնտեսության մասնագետներից, կոլտնտեսությունների նախագահներից, գյուղատնտեսության գիտա-հետազոտական ինստիտուտի աշխատողներից կազմված է դասախոսական մի խումբ, որը պրոպագանդում է առաջավոր փորձը։

Դասախոսական խմբի անդամ, շրջսովետի գործկոմի գյուղատնտեսության գլխավոր զոոտեխնիկ Ս. Երիցյանը Ն. Արեշի կոլտնտեսության անասնապահներին հաղորդեց՝ Շահումյանի անվան կոլտնտեսության կթվորուհի Վ. Հարությունյանի աշխատանքի փորձը, XVIII պարտհամագումարի անվան կոլտնտեսության նախագահ Շ. Մկրտչյանը Սպանդարյանի կոլտնտեսության այգեգործների համար դասախոսություն կարդաց կոլտնտեսության բրիգադավար Գ. Երանոսյանի բրիգադայի փորձի մասին։ Դասախոսական խմբի անդամ, Գինեգործական ինստիտուտի գիտ. աշխատող, բիոլոգիական գիտությունների դոկտոր Ս. Պողոսյանն ուսումնասիրում է Նոր Կողբի կոլտնտեսության աշխատանքի փորձը. կոլտնտեսությունը սիստեմատիկաբար ստանում է խաղողի բարձր բերք։ Երկրագործության ինստիտուտի գիտական աշխատող Ս. Եղիկյանը պատրաստվում է դասախոսելու՝ Դավիթաշենի կոլտնտեսության բրիգադավար Զ. Կիրակոսյանի ղեկավարած բրիգադայի աշխատանքի մասին. բրիգադան յուրաքանչյուր հեկտարից ստացել է 1000 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա։

Սակայն պրոպագանդիստական, ագիտացիոն-մասսայական աշխատանքներում դեռևս կան լուրջ թերություններ։ Բավարար չի կարելի համարել պարտիական պրոպագանդայի շրջանակները ընդլայնելու ուղղությամբ շրջկոմի և պարտիական կազմակերպությունների ձեռնարկած միջոցները։ Անհրաժեշտ է նաև նշել, որ կազմակերպված դասախոսություններին, հարց ու պատասխանի երեկոներին, բանավոր ամսագրերին, տեսական կոնֆերանսներին և այլ միջոցառումների շատ աշխատողներ չեն մասնակցում։ Այդ տեսակետից բնորոշ են հատկապես արդյունաբերական ձեռնարկությունները, որտեղ քաղաքական-մասսայական միջոցառումներին երկրորդ և երրորդ հերթի աշխատողներին մասնակից չեն դարձնում։ Կոլտնտեսություններում և սովխոզներում ագիտացիոն-մասսայական աշխատանքներին անբավարար է մասնակցում գյուղական ինտելիգենցիան, հատկապես՝ ուսուցիչները, բժիշկները։



Աշխատավորության շրջանում տարվող պրոպագանդիստական, ագի-
տացիոն-մասսայական ու դաստիարակչական աշխատանքներով ինչպես
հարկն է չեն զբաղվում Գետափի, Աղատաշենի, Շորբուլաղի, Գեղանիստի
կոլտնտեսությունների, Ժդանովի անվան սովխոզի սկզբնական պարտիական
կազմակերպությունները։ Դաստիարակչական աշխատանքի վատ կազմա-
կերպմամբ պետք է բացատրել այն, որ Գետափի կոլտնտեսականների և Ժդա-
նովի անվան սովխոզի աշխատողների որոշ մասի գիտակցության մեջ մինչև
վերջ հաղթահարված չեն կապիտալիզմի մնացուկները. առանձին կոլտնտե-
սականներ ու բանվորներ իրենց անձնական շահերը գերադասում են պե-
տական ու հանրային շահերից, աշխատանքի եռուն պահին լքում են աշ-
խատանքը և զբաղվում անձնական գործերով։ Պարտկազմակերպություն-
ները վճռական միջոցներ չեն ձեռնարկում հանրային տնտեսությունը ամ-
րապնդելու, թաքնված ռեզերվները հայտաբերելու և օգտագործելու, աշխա-
տանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղղությամբ։ Դրա հետե-
վանքը եղավ այն, որ Գետափի կոլտնտեսությունը և Ժդանովի անվան սով-
խոզը 1960 թվականի տնտեսական տարում չկատարեցին կաթի, մսի և
գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության սոցիալիստական
պարտավորությունները։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը նշեց սոցիալիստական հողա-
գործության և անասնաբուծության զարգացման նոր ուղիներ, գյուղատնտե-
սական մթերքների արտադրությունն արագ և անընդհատ ավելացնելու մի-
ջոցներ։ Շահումյանի շրջանի պարտիական կազմակերպությունները պետք
է վճռականորեն բարելավեն աշխատավորների շրջանում տարվող քաղաքա-
կան-մասսայական աշխատանքը և ջանք չխնայեն մեր պարտիայի առաջա-
դրած խնդիրները պատվով կատարելու համար։

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Շահումյանի շրջկոմի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչ

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՇԻՎ ԵՆՔ ՏԱԼԻՍ

Բնակչության թվով մեծ, տերիտորիայով ընդարձակ է մայրաքաղաքի Սպանդարյանի անվան շրջանը, որը միավորում է քաղաքի կենտրոնական հատվածը։ Այստեղ է տեղադրված մայրաքաղաքում գործող խոշոր կինոթատրոնների, արվեստի և գրականության օջախների, կուլտուր-լուսավորական հիմնարկների, հասարակական սննդի, առևտրի ցանցի, բաղնիքների, լվացքատների, վարսավիրանոցների, զբոսայգիների, կոմունալ, կենցաղային սպասարկման և այլ հիմնարկների մեծ մասը։

Շրջանային Սովետը վերջին երկու տարիների ընթացքում զգալի աշխատանք կատարեց դպրոցների, հիվանդանոցների, բաղնիքների, մանկական հիմնարկների, ակումբների, գրադարանների, խանութների, ճաշարանների և բնակչությանն սպասարկող այլ ձեռնարկությունների և հիմնարկությունների աշխատանքը բարելավելու ուղղությամբ։ Շրջսովետը մշտական հոգատարություն է ցուցաբերում շրջանի բարեկարգման նկատմամբ։

Միայն 1959—60 թվականների ընթացքում վերանորոգվեցին և ասֆալտապատվեցին ավելի քան 250 հազար քառակուսի մետր փողոց, հրապարակ, անցկացվեցին 4500 գծամետր կոյուղու, 2700 գծամետր ջրմուղի նոր գծեր։ Ընդարձակվեց անձրևաջրերն ընդունող ցանցը, կարգավորվեց ոռոգման թաղամասային ցանցը, զգալի աշխատանք կատարվեց փողոցների և բակերի լուսավորման, բնակչությանը ջուր մատակարարելու ուղղությամբ։ Հիմնական վերակառուցման ենթարկվեց Ստալինյան և Լենինի պողոտաների մի զգալի մասը։ Բարեկարգվեցին և ասֆալտապատվեցին Մոսկովյան փողոցի անցուղիները, հիմնականում ավարտվեց Չարենցի փողոցի վերակառուցումը, ասֆալտապատվեցին Նալբանդյան, Մոսկովյան, Աբովյան, Շահումյան, Կարմիր Բանակի փողոցների մեծ մասը։ Կառուցվեցին Պիոներական, Նորքի № 5, 7, 9 փողոցները, Ամառանոցային փողոցի առանձին հատվածներ, Մռավյան և Թումանյան փողոցների մի մասը։ Սկսվեց Լերմոնտով փողոցի շինարարությունը։ Մեծ աշխատանք կատարվեց քաղաքի գլխավոր մատույցներում։

Այդ աշխատանքներին մասնակցում էին աշխատավորները, իրենք՝ բնակիչները։ Ստալինյան պողոտայի, Պիոներական, Նորքի մի շարք փողոցների վերակառուցման հողային և ոչ մասնագիտական համարյա բոլոր աշխատանքները կատարեցին բանվոր-ծառայողների կոլեկտիվները։

Մայրաքաղաքի ամենագեղեցիկ մայրուղու՝ Ստալինյան պողոտայի վերակառուցման ժամանակ, ամեն օր վաղ առավոտից մինչև ուշ երեկո բահ ու քլունգի ձայնը միացվում էր շինարար մարդու աշխատանքին։ Հարազատ քաղաքն էին բարեկարգում ուսանողներ ու գիտնականներ, ուսուցիչներ ու դպրոցականներ, բժիշկներ ու արտադրության մարդիկ, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողներ ու տնային տնտեսուհիներ, արվեստի և գրականության աշխատողներ։



Շրջանի բնակիչները և հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվները մեծ եռանդով մասնակցեցին քաղաքի ջրամատակարարման աշխատանքներին։ 1959 թվականին երրորդ ջրատարի շինարարության ժամանակ շրջանի աշխատավորության ուժերով կատարվեց շուրջ 7 կիլոմետր ջրագծի շինարարական աշխատանք։

Շրջանային Սովետին մեծ օգնություն են ցույց տալիս թաղային կոմիտեները։ Կոնդի թաղային կոմիտեի (նախագահ Պողոսյան) մասնակցությամբ բարեկարգման լուրջ աշխատանք կատարվեց այդ տերիտորիայում։ Բնակչությունը մասնակցել է ջրատար ուղիների և կոյուղու նոր գծերի անցկացմանը, խանութների, դեղատան, կապի բաժանմունքի, մասսայական գրադարանի և ամառային կինո-թատրոնի նոր շենքի կառուցմանը։

Ստալինյան պողոտայի և Մայիսյան ու Մյասնիկյան փողոցների միջև ընկած հատվածի թաղային կոմիտեի նախաձեռնությամբ (նախագահ Ազատյան) բնակիչները ակտիվ կերպով մասնակցում են կոմունիստական կենցաղի կազմակերպմանը, կուլտուրայի արմատավորմանը, սպասարկման օբյեկտներում հասարակական կարգ ու կանոնի պահպանմանը։

Բնակչության կենցաղի կազմակերպման տեսակետից Սովետի աշխատանքի շատ կարևոր բնագավառներից են բնակարանային ֆոնդի պահպանության, կոմունալ բնակարաններում բնակիչների համար նորմալ պայմաններ ստեղծելու հարցերը։ Շրջանային Սովետն իր սպասարկած տերիտորիայում տեղադրված մասնավոր տներից բացի, միավորում է 480 կոմունալ մեծ շենք՝ մոտ 400 հազար ք. մ. բնակելի տարածությամբ, չհաշված տնտեսական կազմակերպությունների և գերատեսչությունների իրավասության տակ գտնված և դեռ Սովետին չհանձնված բնակելի շենքերի քանակը։ Այդպիսի խոշոր տնտեսության առկայությունը որոշակի դժվարություններ է ստեղծում Սովետի համար՝ բնակչության արդարացի պահանջների բավարարման ասպարեզում։

Շրջսովետն ունկնդրելով քաղաքացիների դիտողություններին և ընդառաջելով նրանց պահանջներին՝ աշխատում է հնարավորությունների սահմաններում բարելավել բնակարանային ֆոնդի պահպանությունը։ Այդ նպատակով 1960 թվականի սկզբին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշմամբ Սովետում տեղի ունեցավ բնակարանային ֆոնդի պահպանության ու բնակչության սպասարկումը կազմակերպող ու իրականացնող օրգանների տնային կառավարչությունների վերակառուցում. խոշորացվեցին կառավարչությունները, նրանց տրվեց սպասարկման անհրաժեշտ վարչական և մասնագիտական ապարատ, նոր իրավունքներ ու ֆունկցիաներ։ Բացի այդ, կառավարչություններին կից ստեղծվեցին թաղային տնային կոմիտեներ, կոմունիստական կենցաղի կազմակերպմանն օժանդակող հանձնաժողովներ։

Հենվելով այդ կառավարման տնտեսական և հասարակական օղակների աշխատանքի վրա և նրանց գործուն մասնակցությամբ Սովետը որոշ դրական աշխատանք կատարեց բնակչության կոմունալ սպասարկման պայմանների բարելավման բնագավառում։ Այսպես. երեք, չորս տարի առաջ կոմունալ շենքերում բնակվողները բնակելի տարածության ամեն մի քառակուսի մետրի ջեռուցման համար վճարում էին 18—25 ռուբլի։ Շրջսովետի կենցաղային հանձ-

նաժողովների աջակցությամբ իրականացրած միջոցառումների շնորհիվ գանձվող այդ գումարը հասել է 7—17 ռուբլու։ Այժմ Սովետը մշակում և իրականացնում է միջոցառումներ՝ սպասարկման այս ծախքերը տարեցտարի պակասեցնելու ուղղությամբ։

Սպանդարյանի շրջանի առանձին հատվածներում կան շատ հողածածկ, հին տներ։ Սովետը մեծ հոգատարություն ցուցաբերեց այդպիսի տների բնակիչների նկատմամբ։ Սվաղվեցին 39 այդպիսի շենքերի տանիքներ, 23 տների տանիքները, մոտ 9 հազար քառ. մետր մակերեսով, ծածկվեցին ազբոշիֆերով։ Նման աշխատանքները շարունակվելու են առջիկայում ևս։ Այդ միջոցառումներն ավելի մեծ արդյունք կտային, եթե շրջսովետի կոմունալ բաժինը և նրա սպասարկման օրգանները, բնակարանային վարչությունը և տնային կառավարչությունները բնակելի շենքերը նորոգեին ամբողջությամբ, չմանրացնեին միջոցները։ Պատահական չէ, որ վերջերս, գործկոմի հաշվետվությունը Սովետում քննարկելու ժամանակ, արդարացի կերպով քննադատվեցին նրա ապարատի աշխատողները։ Գործադիր կոմիտեի ապարատում ուսումնասիրվում են այդ դիտողությունները և բացահայտված թերությունների վերացման համար միջոցներ են մշակվում։

Բնակչության, հատկապես երեխաների հանգիստը կազմակերպելու համար կարևոր նշանակություն ունեն բարեկարգ բակերը, պուրակները, այգիները, լայնարձակ փողոցները և այլն։ Սակայն այս ուղղությամբ դեռևս քիչ բան է արված։ Շատ նորակառույց շենքերի բակերը և նրանց շրջակայքն անբարեկարգ վիճակում են։ Լուրջ անելիքներ ունեն շինարարական կազմակերպությունները, որոնք շատ հաճախ շենքը շահագործման են հանձնում առանց նրա շրջապատի, հասարակական օգտագործման տարածությունների բարեկարգման։ Այդ է պատճառը, որ տասնյակ տարիներ առաջ շահագործման հանձնված շենքերի բակերում բնակչության, երեխաների հանգստի կազմակերպման համար տարրական պայմաններ չկան, բակերը ծածկված են շինարարական աղբակույտերով, խարխուլ շենքերով։

Շրջսովետը լուրջ, գործարար հսկողության տակ է առել շինարարական կազմակերպությունների գործունեությունը, մասնակցում է շենքերն ընդունող պետական հանձնաժողովի աշխատանքներին։ Ի դեպ, անհրաժեշտ է նշել, որ քաղաքային Սովետին կից այդ հանձնաժողովը միշտ չէ, որ դրսևորում է լուրջ վերաբերմունք, երբեմն շենքերն ընդունում են շինարարական լուրջ թերություններով։ Բացի դրանից շրջսովետը բարեկարգման աշխատանքներ է ծավալել բակերում։ Միայն 1960 թվականին բնակչության ակտիվ մասնակցությամբ բարեկարգվել են 34 բակ։ Բարեկարգվել, կանաչապատվել, ասֆալտապատվել են Ստալինյան պողոտայի № 65, Թամանյան փողոցի № 2, Տերյան փողոցի № 62, 91 և բազմաթիվ այլ շենքերի բակեր։

Տերյան փողոցի № 62 և 91 շենքերի բակերում երեխաների համար կառուցվեցին տաղավարներ, խաղադաշտեր, շատրվան։ Ընթացիկ տարվա համար կազմված է շենքերի բակերի բարեկարգման ավելի մեծ ծրագիր, որի իրականացմամբ լավագույն պայմաններ կստեղծվեն երեխաների հանգիստը կազմակերպելու համար։

Շրջսովետը հանգամանորեն զբաղվում է շինարարական կազմակերպությունների աշխատանքներով, խորամուխ է լինում դպրոցական, մանկական,



կուլտուր-լուսավորական հիմնարկների, հասարակական սննդի օբյեկտների և,
հատկապես, բնակարանային շինարարության և բնակարանային ֆոնդը ճիշտ
բաշխելու գործով։ Այժմ սահմանված կարգի համաձայն նոր կառուցվող և
ազատվող հին բնակարանների բաշխման ամբողջ պատասխանատվությունը
դրվում է Սովետի վրա։
Շրջսովետը բնակարանային հին և նոր ֆոնդեր բաշխելիս այժմ առավել
ուշադրություն է հատկացնում հաշվառման մեջ գտնվող Հայրենական պատե-
րազմի հաշմանդամներին, պատերազմում զոհված մարտիկների ընտանիքնե-
րին, բանակից զորացրված սպաներին, բժիշկներին, ուսուցիչներին բնակա-
րանով ապահովելուն։ Բնակարաններ տրվում են առաջին հերթին հաշվառման
մեջ գտնվող և նկուղային հարկերում ապրող քաղաքացիներին։
Նկուղներում ապրող հարյուրից ավելի ընտանիքներ անցյալ տարվա երկ-
րորդ կեսից ստացել են նոր, հարմարավետ բնակարաններ. ազատված նկուղ-
ները հատկացվում են նույն շենքերում ապրող քաղաքացիներին՝ բուն նպատա-
կով օգտագործելու համար։
Շրջսովետը, ճիշտ է, արդեն ձեռնարկել է, բայց դեռևս չի կարողացել հիմ-
նարկ-ձեռնարկություններում լրիվ ապահովել հասարակական հսկողությունը
բնակարանային ֆոնդի բաշխման գործի վրա։ Հաճախ տնտեսական կազմա-
կերպություններում և գերատեսչություններում բնակարան է հատկացվում այն-
պիսի աշխատողների, որոնք դեռևս կարող են սպասել։ Նման սխալներից
զերծ չեն նաև գործադիր կոմիտեն և նրա բնակարանային բաժինը։ Պատահել
է, որ նրանք հաշվառման մեջ գտնված քաղաքացիներին բնակարան են հատ-
կացրել առանց դեպուտատների բնակարանային հանձնաժողովի որոշման։
Գործկոմը ժամանակին այդ սխալը կանխեց և այժմ ինչպես հաշվառման,
այնպես էլ բաշխման գործը նախապատրաստված է դեպուտատների հանձնա-
ժողովում. Նրանց առաջարկությամբ գործը քննարկվում և հաստատվում է
գործադիր կոմիտեի նիստում, որից հետո միայն բաժնի միջոցով քաղաքացի-
ներին տրվում է միասնական օրդեր։ Գործադիր կոմիտեում են հաստատվում
նաև հիմնարկ-ձեռնարկությունների որոշումները բնակարանների բաշխման
վերաբերյալ։
Սպանդարյանի շրջանային Սովետն իր գործունեության մեջ մեծ տեղ է
հատկացնում ժողովրդական կրթության, առողջապահության և կուլտուր-լու-
սավորական հիմնարկների աշխատանքներին։
Սովետի լուսավորության և կուլտուրայի, սոցիալական ապահովության
և առողջապահության մշտական հանձնաժողովների և դեպուտատների ակտիվ
մասնակցությամբ, սիստեմատիկաբար ուսումնասիրվում և Սովետում, գոր-
ծադիր կոմիտեում քննության են առնվում բնակչության կուլտուր-կենցաղա-
յին սպասարկման հարցերը, մշակվում և իրականացվում են գործնական մի-
ջոցառումներ։ Սովետական դպրոցի վերաբերյալ նոր օրենքը կենսագործելու
նպատակով մշակված է դպրոցների վերակառուցման յոթնամյա պլան։ Ժո-
ղովրդական կրթության ֆրոնտի աշխատողների ջանքերով, միայն անցյալ
տարի դպրոցների ֆիզիկայի, քիմիայի, բնագիտության լաբորատորիաները
հարստացան մոտ 700 հազար ռուբլու սարքավորումներով։
Պռոշյանի, Սպանդարյանի, Հակոբյանի և Մռավյանի անվան դպրոցներում
կազմակերպվել են էլեկտրատեխնիկական լաբորատորիաներ, համալրվել և

հարստացվել են դպրոցների ուսումնական արհեստանոցները։ Այդ գործում մեծ չափով օգնել են շեֆական կազմակերպությունններն ու արտադրական ձեռնարկությունները։ Այսպես, Գյուղատնտեսության մինիստրության օգնությամբ Չարենցի անվան դպրոցում ստեղծվել են գծագրական և մետաղամշակման կաբինետներ, լաբորատորիաներ, դպրոցին հատկացվել է 3 ավտոմեքենա։ Շրջսովետի գործադիր կոմիտեի և ժողովրդական կրթության բաժնի նախաձեռնությամբ անցյալ տարի պլանից դուրս կառուցվեց և շահագործման հանձնըվեց մեկ կոմպլեկտանոց դպրոցական շենք, որով № 81 դպրոցը ուսումնական տարվա սկզբից հնարավորություն ունեցավ նորմալ աշխատանքի անցնելու։

Ձերժինսկու անվան դպրոցի ուսուցչության և աշակերտության ակտիվ մասնակցությամբ դպրոցին կից կառուցվեց երկհարկանի շենք։ Սովորողներն ստացան ընդարձակ, հարմարավետ արհեստանոց՝ 140—160 բանվորական տեղով, 250 տեղանոց օրինակելի ճաշարան, երաժշտական, խորեոգրաֆիկ և երկարօրյա խմբերի սենյակներ։

Բնակչությանը, հատկապես աշխատող մայրերին, օգնելու նպատակով համարյա բոլոր դպրոցներում կազմակերպված են երկարօրյա խմբեր։ Կան ծնողներ, որ հնարավորություն չունեն ամառային արձակուրդների ժամանակ երեխաներին քաղաքից դուրս բերելու։ Նրանց երեխաների հանգիստը կազմակերպելու նպատակով ամեն ամառ կազմակերպվում են բակային ճամբարներ և ակումբ-դպրոցներ։ Միայն անցյալ ամռանը բակային ճամբարներում և ակումբ-դպրոցներում ընդգրկվել են 5—9-րդ դասարանների ավելի քան 5000 դպրոցական։

Բնակչության կենցաղային սպասարկման տեսակետից կարևոր դեր է խաղում մանուկների դաստիարակության գործում ծնողներին ցույց տրվող օգնությունը։ Սովետը հետևողականորեն ընդլայնում է մանկական-նախադպրոցական հիմնարկների՝ մանկապարտեզների, մանկամսուրների ցանցը, անգնահատելի ծառայություն մատուցելով ծնողներին։ Շրջանում գործող 34 մանկապարտեզներում և մսուրներում ընդգրկված են 5000 երեխա։

1959—1960 թվականների ընթացքում միայն Սովետի գծով կազմակերպվել են 12 նոր մանկապարտեզային խմբեր, որոնք ընդգրկում են 400 երեխա։ Առաջիկա երկու ամիսների ընթացքում ծրագրվում է բաց անել 2 նոր մանկապարտեզ, իսկ մինչև այս տարվա վերջը՝ 3 մանկապարտեզ, որտեղ կընդգրըկվեն 500 երեխա։

Սովետների առաջ ոչ պակաս պատասխանատու խնդիրներ են ծառացած նաև պետական և կոոպերատիվ առևտրի, բնակչությանն առաջին անհրաժեշտության ապրանքներ մատակարարելու ասպարեզում։

Աշխատավորների դեպուտատների Սովետները պետք է մշտապես օգնեն յուրաքանչյուր խանութի, հասարակական սննդի ձեռնարկության աշխատանքի լավ կազմակերպմանը, ապահովեն սպառողների կուլտուրական սպասարկումը, վճռական պայքար մղեն բոլոր տեսակի չարաշահումների դեմ, կոնկրետ միջոցառումներ ձեռնարկեն այդ բնագավառի թերությունները վերացնելու ուղղությամբ։ Դեպուտատական հանձնաժողովների, առևտրի նկատմամբ հասարակական հսկողություն իրականացնող մյուս կազմակերպությունների օգնությամբ, սիստեմատիկորեն պետք է ուսումնասիրեն և քննարկեն բնակչության սպասարկման բարելավման հարցերը։



Սովետի և առևտրի կազմակերպությունների համագործակցված աշխատանքի շնորհիվ շրջանում ընդարձակվել է առևտրի ցանցը, շատացել են հասարակական սննդի օբյեկտները, բացվել են նոր խանութներ, ճաշարաններ, թեյարաններ։ Հատկապես քաղաքի կենտրոնական մասում կառուցվել և տեղադրվել են նորաձև, հարմար տաղավարներ, վերանորոգվել են կենտրոնական ունիվերմագը, Ստալինյան, Լենինի պողոտաների, Աբովյան, Նալբանդյան, Տերյան, Մոսկովյան, Շահումյան փողոցների վրա գտնվող արդյունաբերական ապրանքների և սննդամթերքների մի շարք խանութներ։

Բնակչության սպասարկման կուլտուրայի բարձրացման և կենցաղի բարելավման առումով մեծ նշանակություն ունեն հասարակական սննդի կազմակերպման մեջ կատարված փոփոխությունները։ Բոլոր խոշոր ճաշարաններն ու ռեստորանները հնարավորություն ունեն մատչելի գներով լավորակ ճաշեր տուն բաց թողնել։ Անցյալ տարի կառուցվեց և շահագործման հանձնվեց խոհանոցային մթերքների ֆաբրիկան, որը կիսաֆաբրիկատ վիճակում սննդամթերք է մատակարարում ինչպես հասարակական սննդի օբյեկտներին, խանութներին, այնպես էլ քաղաքացիներին, նրանց պատվերների համաձայն, անգամ նրանց տներն առաքելու պայմանով։

Սակայն շրջսովետի և առևտրական կազմակերպությունների աշխատանքը դեռ լիովին չի բավարարում բնակչության պահանջը։ Առևտրի և հասարակական սննդի օբյեկտների աշխատանքի հիմնական թերություններից մեկը բնակչության սպասարկման կուլտուրայի ցածր մակարդակն է։ Դեռևս տեղի են ունենում առևտրական կանոնների խախտումներ։

Ուսանողական ճաշարաններում և թեյարաններում ցածր է սննդի որակը։ Անբավարար են սպասարկվում դպրոցական բուֆետները։ Առևտրական կազմակերպությունները (Երհացտռ, Սննդտռ, Արդտռ), հատկապես շրջանի ծայրամասային թաղամասերում (Նորքի կառույցները, Կիլիկիա, Նորագյուղ) վատ են կազմակերպում բնակչության սպասարկումը։

Լուրջ թերություններ կան կենցաղային սպասարկման օբյեկտների աշխատանքներում։ Չնայած այժմ շրջանի տերիտորիայում գործում են կարի անհատական պատվերների 7 բաժին, կոշկի անհատական պատվերների 18, կոշկի վերանորոգման 37, ֆոտո-գեղարվեստական 16, այլ կենցաղային սպասարկման 62 կետեր (որոնցից 8-ը պավիլիոններ, քիմիական մաքրման 3, կոշկի վերանորոգման ներ են), այնուամենայնիվ դրանք չեն բավարարում բնակչության պահանջները, հատկապես ծայրամասային թաղամասերում։ Բնակչության սպասարկման մակարդակը ցածր է նաև շատ արհեստանոցներում և կետերում։ Ընդունված պատվերները կատարվում են մեծ ուշացումներով և անորակ։ Հաճախ տեղի են ունենում սպասարկման համար քաղաքացիներից գանձվող արժեքների գնացուցակի խախտումներ։

Մեր շրջանում կան ավելի քան 20 խոշոր բուժական և բուժական-գիտահետազոտական հիմնարկներ։ Անցած տարի բացվեց 2-րդ ծննդատունը՝ 75 մահճակալով, նախկին նյարդային բաժանմունքը խոշորացվեց և մահճակալների թիվը 45-ից հասավ 80-ի։ Քիթ-կոկորդի, ականջի բաժանմունքի մահճակալների թիվը 25-ից հասավ 60-ի։ Շուտով կբացվի ռեսպուբլիկայում առաջին անգամ նոր ուրոլոգիական բաժանմունք՝ 60 մահճակալով. առաջին պոլիկլինիկան խոշորացնելու նպատակով կառուցվեց շենքի վերնահարկը։

*Բժշկական պոլիկլինիկաները համալրվեցին բուժական ժամանակակից ապարատուրայով (էլեկտրոկարդեոգրաֆ, ֆիզիկական բուժման ֆլորագրաֆ), որոնք նպաստում են հիվանդների ախտորոշմանը, ֆլորագրաֆի միջոցով բուժական հիմնարկները կարողացան անցկացնել ազգաբնակչության մասսայական ռենտգեն-հետազոտում՝ առանձին հիվանդությունների վաղաժամ հայտնաբերման նպատակով։ Շահագործման հանձնվեց շտապ օգնության նոր կայանը։*

*Բուժական հիմնարկներում բնակչության սպասարկման գործում բժշկական պերսոնալի պատասխանատվության բարձրացման շնորհիվ շրջանում մանուկների մահացությունը զգալի նվազել է, իսկ առանձին բուժհիմնարկներում՝ (երկրորդ բուժմիավորման մանկական բաժին) իջեցվել է մինիմումի։ Զգալի չափով պակասել են ինֆեկցիոն հիվանդությունները (դիֆտերիա, դիզենտերիա, քութեշ), գրեթե կիսով չափ պակասել է ռախիտիկների և հիպոտրոֆիկների թիվը։*

*Բարելավվել է ազգաբնակչության դիսպանսերային հսկողությունը, կենտրոնական քաղաքների օրինակով բուժստացիոնարներն անցել են հիվանդների երկսիստեմ սպասարկման, հիվանդների խնամքը կրտսեր բուժ. պերսոնալից անցել է միջին բուժ. պերսոնալին. այդ նշանակալից չափով բարձրացնում է հիվանդի սպասարկման և բուժման որակը։*

*Բուժական հիմնարկների կողմից բնակչության սպասարկման բարելավման գործում խոշոր նշանակություն ունեցավ շրջսովետի կողմից խոշոր բուժ. հիմնարկներին կից կազմակերպված հասարակական խորհուրդների աշխատանքը։ Այդ խորհուրդները, որ կազմված են բնակչության ամենալայն խավերի ներկայացուցիչներից, իրենց գործուն մասնակցությամբ և հասարակական հսկողության իրականացմամբ խոշոր չափով օգնում են հիվանդանոցներին՝ սպասարկման տերիտորիայի սանիտարական դրության, հիվանդների սննդի բարելավման, հիվանդանոցների բուժական ծրագրերի իրականացման աշխատանքներում։*

*Այդ տեսակետից ուշագրավ է երկրորդ բուժմիավորմանը կից հասարակական խորհրդի աշխատանքը (նախագահ Հ. Խաչատուրով)։ Խորհուրդը սանակտիվի հետ միասին գործնական օգնություն է ցույց տալիս հիվանդանոցային տեղամասերում հիվանդների վաղաժամ հայտաբերման, սանիտարական վիճակի բարելավման, առաջին օգնության կազմակերպման գործին։ Բնակչության բուժսպասարկման կուլտուրան համեմատաբար բարձր է 2-րդ, 3-րդ հիվանդանոցներում, քաղաքային տուբ. դիսպանսերններում։*

*Բուժական գործի լավ կազմակերպման համար վերջին մի քանի տարիների ընթացքում երկրորդ բուժմիավորման (գլխ. բժիշկ, շրջանային Սովետի դեպուտատ Ա. Եսայան) կոլեկտիվն իր ձեռքում է պահում Հայկական ՍՍՌ Առողջապահության մինիստրության և պրոֆմիութենական ռեսպուբլիկական կոմիտեի փոխանցիկ դրոշը։ Միավորումը բուժման գործը լավ կազմակերպելու համար այս տարի ևս շահեց առաջնություն և ստացավ 8 հազար ռուբլու պարգև։*

*Չնայած կատարված դրական աշխատանքին, այնուամենայնիվ, աշխատավորության բուժսպասարկման գործում կան լուրջ թերություններ. առանձին*



*պոլիկլինիկաներում ու հիվանդանոցներում նկատվում են կոպիտ վերաբերմունքի դեպքեր, ցածր է սպասարկման կուլտուրան։ Անբավարար է կապը բուժ. և կոմունալ սպասարկման հիմնարկությունների միջև։ Շրջանի հասարակական և բուժական կազմակերպությունները այժմ ձեռնարկում են միջոցառումներ եղած այդ թերությունների վերացման ուղղությամբ։*

*Սովետի գործունեության մեջ առանձին տեղ է հատկացվում բնակչության շրջանում կուլտուր-դաստիարակչական աշխատանքի ծավալմանը, աշխատավորության հանգստի կազմակերպմանը։*

*Մեր շրջանի տերիտորիայում է գտնվում կուլտուրական օջախների մեծ մասը՝ օպերայի և բալետի, Ռուսական դրամատիկական, Երաժշտական կոմեդիայի, Պատանի հանդիսատեսի, տիկնիկային թատրոնները, 10-ից ավելի կինոթատրոններ, շուրջ երկու տասնյակ կուլտուրայի տներ և գրադարաններ, համարյա բոլոր թանգարաններն ու համերգային դահլիճները և բնակչության կուլտուրական սպասարկման այլ օբյեկտներ։ Հետևապես մեր Սովետը պետք է իր առաջնահերթ խնդիրներից մեկը դարձնի բնակչության կուլտուրական սպասարկման լավագույն ձևով կազմակերպումը։*

*Շրջանի ստեղծագործական և հասարակական-տնտեսական կազմակերպությունների համատեղ ջանքերի շնորհիվ որոշակի աշխատանք կատարվեց նաև բնակչության կուլտուրական սպասարկման ուղղությամբ։*

*Ստեղծագործական և արվեստի կազմակերպությունները զգալի չափով բարելավեցին թատրոնների ռեպերտուարը և հանդիսատեսի սպասարկման կուլտուրան։ Ընդլայնվեց ակումբների, կինո-թատրոնների ցանցը և այլն։ Այսպես, օրինակ, անցյալ տարի Կոնդում կազմակերպվեց կուլտուրայի տուն, ընդարձակվեց մասսայական գրադարանը։ Լերմոնտովի և Մոսկովյան փողոցներում բացվեցին 2 նոր գրադարաններ։ Կառուցվեցին և շահագործման հանձնվեցին Կիլիկիայի կինո-թատրոնի շենքը։ Կիրովի, Աբովյանի անվան մանկական այգիներում կառուցվեցին մեծ ատրակցիոն խաղերի հրապարակ, ջրային կարուսելներ, խաղասենյակներ։*

*Ընթացիկ տարում Աբովյանի անվան այգում կավարտվի փակ էստրադա-*
*յի, մանկական այգիներում՝ ծիծաղի սենյակների կառուցումը։*
*Բնակչության կուլտուրական սպասարկման լավագույն ձևերից մեկը ժո-*
*ղովրդական ինքնագործունեության կազմակերպումն է։*
*Սպանդարյանի շրջանում ամեն տարի հազարավոր բանվորներ, ծառայող-*
*ներ, ուսանողներ, տնային տնտեսուհիներ մասնակցում են ժողովրդական*
*ստեղծագործական օլիմպիադային, իրենց լուման մտցնում բնակչության գե-*
*ղարվեստական և էսթետիկական դաստիարակության գործում։ Անցյալ տար-*
*վա վերջին տեղի ունեցած օլիմպիադային մեր շրջանից մասնակցեցին 38*
*խումբ և մի քանի հազար մարդ։ Առաջինը մրցանակ շահեց Կիլիկիայի կուլ-*
*տուրայի տան էստրադային նվագախումբը՝ Ք. Եղիազարյանի ղեկավարու-*
*թյամբ։ Մեծ ուշադրության արժանացան և առաջնություն շահեցին Պետական*
*համալսարանի երգեցիկ խումբը, ուսուցչի տան ժողովրդական գործիքների*
*խումբը և այլ խմբեր ու կոլեկտիվներ։*
*Շրջանային Սովետը արվեստի և կուլտուրայի բնագավառի կազմակեր-*
*պությունների հետ միասին աշխատում է ամեն կերպ ընդլայնել կուլտուր-լու-*
*սավորական հիմնարկների, ակումբների, գրադարանների, կինո-թատրոնների*

*ցանցը, հատկապես շրջանի ծայրամասային թաղերում, ամենուրեք զարկ տալ ժողովրդական ինքնագործունեությանը, ջանք չխնայել բնակչության կուլտուրական սպասարկման հետագա բարելավման համար։*

*Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններին նախորդող շրջանում կազմակերպվեցին դեպուտատների և դեպուտատության թեկնածուների հանդիպումներ հարյուրավոր ընտրողների հետ։ Վերջիններս քննադատական դիտողություններ արեցին Սովետի անցյալ գործունեության ժամանակաշրջանի աշխատանքների մասին, բացահայտեցին նրանց աշխատանքում տեղ գտած թերություններն ու սխալները և արեցին արժեքավոր շատ առաջարկություններ Սովետի հետագա գործունեության, ինչպես նաև բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու ուղղությամբ։*

*Շրջանային Սովետի գործադիր կոմիտեն, հաշվի առնելով այդ դիտողությունները ու առաջարկությունները, ամենայն բարեխղճությամբ կմշակի գործնական միջոցառումներ իր ողջ գործունեությունը, ինչպես և բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման գործն ավելի լավ կազմակերպելու համար։*

Գ. ՍԱՀԱԿՅԱՆ
Աշխատավորների դեպուտատների Երևանի
Սպանդարյանի շրջսովետի գործկոմի նախագահ

## ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ ԳՈՐԾՈՒՄ ԵՆ

*Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի գործադիր կոմիտեն, հիմք ընդունելով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1957 թվականի հունվարի 22-ի՝ «Աշխատավորների դեպուտատների Սովետների գործունեությունը բարելավելու և մասսաների հետ նրանց կապն ուժեղացնելու մասին» որոշումը, մշակեց և իրականացրեց գործնական միջոցառումներ Սովետի կազմակերպական-մասսայական աշխատանքներն ավելի բարձր հիմքերի վրա դնելու համար։*

*Երևանի քաղաքային Սովետի գործադիր կոմիտեն հենվում է մշտական հանձնաժողովների, դեպուտատների և լայն ակտիվի վրա. դրանց միջոցով նա մասսայականացնում և կենսագործում է Սովետի, նրա գործադիր կոմիտեի և վերադաս օրգանների որոշումները։ Չի եղել Սովետի նեսիաներում կամ գործադիր կոմիտեում քննարկվող որևէ կարևոր հարց, որի նախապատրաստմանն ու քննարկմանը չմասնակցեն Սովետի մշտական հանձնաժողովները և բազմաթիվ դեպուտատներ։*

*Մշտական հանձնաժողովների և դեպուտատների միջոցով նախապատրաստվել, Սովետի կամ նրա գործադիր կոմիտեի քննարկմանն են ներկայացվել 25 հարց, որոնց մասին ընդունվել են համապատասխան որոշումներ, ստուգվել է 28 կարևոր որոշումների կատարման ընթացքը, արվել են բազմաթիվ առաջարկություններ, որոնք հաշվի են առնվել որոշումներ ընդունելիս։*

*Երևանի քաղաքային Սովետի գործադիր կոմիտեն միայն վերջին ընտրություններից հետո ստուգել և քննարկել է քաղաքի երկու շրջսովետներում կազմակերպական-մասսայական աշխատանքի դրվածքը, երկու շրջսովետների*



*գործկոմների հաշվետվությունները, ընկերական դատարանների և քաղաքացիների դիմում-բողոքների քննարկման վիճակը 26 կոմիսարների անվան շրջանում, քաղսովետի գործկոմի հինգ բաժինների և վարչությունների հաշվետվությունները, աշխատանքի օրենսդրության կենսագործումը քաղաքի հիմնարկ-ձեռնարկություններում, հասարակական սննդի կազմակերպման վիճակը, բնակարանային շինարարության ընթացքը քաղաքում, պարազիտային տարրերի դեմ մղվող պայքարի վիճակը և շատ այլ հարցեր։*

*Երևանի քաղաքային և շրջանային Սովետների գործադիր կոմիտեներն այժմ ավելի սերտորեն են կապված մշտական հանձնաժողովների հետ, կազմակերպվում են սեմինար-խորհրդակցություններ, աշխատանքային փորձի փոխանակում։ Մշտական հանձնաժողովները իրենց ստուգումների միջոցով և խելացի առաջարկություններով օգնում են գործադիր կոմիտեներին՝ իրենց առջև դրված խնդիրները պատվով կատարելու։*

*1959 թվականին անբավարար էին ընթանում դպրոցական շինարարության աշխատանքները. քաղսովետի ժողովրդական կրթության և լուսավորության մշտական հանձնաժողովը հանգամանորեն ստուգեց այդ հարցը և կոնկրետ առաջարկություններ մտցրեց դպրոցական շինարարության աշխատանքներում տեղ գտած թերությունները վերացնելու ուղղությամբ։*

*Այդ հանձնաժողովը 1960 թվականին ուսումնասիրեց դպրոցներում եռհերթ պարապմունքների վերացման հարցը և կոնկրետ միջոցներ առաջարկեց դրանք աստիճանաբար վերացնելու համար։*

*Տարիներ շարունակ խոսվում էր քաղաքի սանիտարական դրության բարելավման մասին։ Գյուղատնտեսական մշտական հանձնաժողովը (հանձնաժողովի անդամ Ի. Բաբաջանյանի նախաձեռնությամբ) քաղաքի համապատասխան մասնագետների հետ մի քանի ամսվա ընթացքում մանրամասն ուսումնասիրեց այդ հարցը։ Պարզվեց, որ քաղաքում տարեկան գոյացող մոտ 300000 տոննա աղբի վերամշակումից կստացվի 14600 տոննա պարարտանյութ, 20000 տոննա ուտիլ, որոնց դրամական արժեքը միլիոնների կհասնի։*

*Մշտական հանձնաժողովի առաջարկությամբ 1960 թվականի հուլիսին գործադիր կոմիտեն քննարկեց այդ հարցը և որոշեց 1961 թվականին սկսել աղբի տեսակավորման կայանի կառուցումը։*

*Աչք ծակող թերություններով լի էր քաղաքի մարդատար ավտոտրանսպորտի աշխատանքը։ Տրանսպորտի մշտական հանձնաժողովը հանգամանորեն ստուգեց այդ հարցը և արդյունքները ներկայացրեց գործկոմի քննարկմանը։ Մշակված միջոցառումների շնորհիվ զգալի չափով բարելավվեց այդ բնագավառի աշխատանքը, կարգավորվեց Սարի-Թաղի, Կիլիկիայի և Կոնդի թաղամասերի ավտոսերթևեկությունը։*

*Քաղաքի բարեկարգման, կանաչապատման և սանիտարական դրության բարելավման ուղղությամբ կոնկրետ առաջարկություններով հանդես են եկել բարեկարգման և ճանապարհաշինարարության, կանաչապատման մշտական հանձնաժողովները։ Հաշվի առնելով այդ հանձնաժողովների առաջարկությունները, գործադիր կոմիտեն ընդունել է համապատասխան որոշումներ, որոնք այժմ կենսագործվում են։*

*Օրինակելի աշխատանք են կատարում նաև առողջապահության և սոցիալական ապահովության (նախագահ Մ. Դալլաքյան), առևտրի (նախագահ Ս. Գևորգյան) և մյուս հանձնաժողովները։*

Սակայն գործկոմի առանձին բաժինների, վարչությունների և համապատասխան մշտական հանձնաժողովների միջև դեռևս թույլ է գործարար կապը։ Հանձնաժողովներն ինչպես հարկն է չեն հսկում, չեն ստուգում բաժինների և վարչությունների աշխատանքը և, պատահական չէ, որ այդպիսի հանձնաժողովները վատ են աշխատում։

Հասարակական կարգի պահպանման և հակահասարակական տարրերի դեմ պայքարելու գործում մեծ անելիքներ ունեն թե՛ միլիցիայի օրգանները և թե Սովետների հասարակական կարգի պահպանման մշտական հանձնաժողովները. բայց, ցավոք սրտի, այդ հանձնաժողովները դեռևս վատ են աշխատում, չափից դուրս թույլ է նրանց կապը միլիցիայի բաժինների հետ։

Ազգաբնակչության հետ դեպուտատների կապի ամրապնդման լավագույն միջոցը ընտրողների հետ դեպուտատների հաճախակի հանդիպումն է և ընտրողների առաջ հաշվետվություններով հանդես գալը։ Համաձայն գոյություն ունեցող օրենքի, գործադիր կոմիտեների նախագահները ևս պարտավոր են տարին առնվազն մեկ անգամ, իսկ դեպուտատները վեց ամիսը մեկ անգամ հաշվետվություններով հանդես գալ իրենց ընտրողների առաջ։

Երևանի քաղաքային Սովետի գործադիր կոմիտեն այժմ ժամանակին է կազմակերպում թե՛ իր և թե դեպուտատների հաշվետվությունները։

Քաղաքային Սովետի գործադիր կոմիտեն ընտրություններից անմիջապես հետո քաղաքային և շրջանային Սովետների դեպուտատների համար կազմակերպեց սեմինար պարապմունքներ, որտեղ դեպուտատները մանրամասն ծանոթացան իրենց պարտականությունների հետ։ Բացի այդ, նորընտիր դեպուտատների համար կազմակերպվել են առանձին զրույցներ, փորձի փոխանակում և այլն։

Դեպուտատների հետ տարվող աշխատանքը դրանով չի սահմանափակվում։ Սովետի դեպուտատական սենյակում դեպուտատներն ամեն օր ստանում են իրենց հետաքրքրող հարցերի պատասխանը, կազմ-հրահանգչական բաժնի աշխատողներն օգնում են դեպուտատներին՝ իրենց ընտրական օկրուգներում կազմակերպելու համապատասխան աշխատանք։ 1957 թվականից գործադիր կոմիտեն մշակում և հրապարակում է դեպուտատի «Հուշագիր» ձեռնարկը, որտեղ նշվում են այն բոլոր աշխատանքները, որոնք պետք է կատարվեն մեկ տարվա ընթացքում։ Հուշագիրն օգնում է դեպուտատին՝ մասսայականացնելու Սովետի որոշումները, կազմակերպելու մասսայական-բացատրական աշխատանք իր ընտրողների հետ և հետևելու, որպեսզի նախատեսված և պլանավորված աշխատանքները ժամանակին կատարվեն։

Ինչպե՞ս են կազմակերպվում դեպուտատների հաշվետվությունները ընտրողների առաջ։ Մինչև հաշվետվությունների կազմակերպումը գործադիր կոմիտեի կազմ-հրահանգչական բաժինը նախապատրաստում է դեպուտատի զեկուցման համար նյութեր՝ Սովետի ու նրա գործադիր կոմիտեի աշխատանքների մասին, կազմում է համապատասխան գրաֆիկ, նախապատրաստում շենքը, հաշվետվության օրվա և տեղի մասին տեղյակ է պահում ընտրողներին, օգնում դեպուտատներին զեկուցման թեզիսներ կազմելու գործում և այլն։ Վերջին ժամանակներս անհամեմատ բարելավվել է ընտրողների հետ դեպուտատների հանդիպումների և հաշվետվությունների կազմակերպման ու անցկացման գործը։ Վերջին ընտրություններից հետո քաղսովետի համարյա բոլոր դեպուտատները հանդիպում են ունեցել ընտրողների հետ, 349 դեպուտատ հանդի-



պումներ են կազմակերպել 3—5 անգամ, 383 դեպուտատ 2 անգամ հաշվետվություններով հանդես են եկել ընտրողների առաջ. բացի այդ, 218 դեպուտատ իրենց ընտրական օկրուգներում կազմակերպել են ընտրողների ընդունելություն և լուծել ընտրողներին հուզող բազմաթիվ հարցեր։ Այդպիսի ընդունելություններ են կազմակերպվել նաև քաղաքային ու շրջանային Սովետների գործադիր կոմիտեների դեպուտատական սենյակներում։

Սակայն կան նաև այնպիսի դեպուտատներ, որոնք խուսափում են իրենց դեպուտատական պարտականությունները կատարելուց, չեն հանդիպում իրենց ընտրողների հետ, ակտիվ կերպով չեն մասնակցում Սովետի աշխատանքներին, հրաժարվում են հանձնարարություններ կատարելուց. դրանցից են՝ Բ. Վիրաբյանը, Ա. Հակոբյանը, Ա. Զինչենկոն, Լ. Պողոսյանը և ուրիշներ։

Դեպուտատների հաշվետվություններից բացի կազմակերպվում են նաև գործադիր կոմիտեի, նրա բաժինների ու վարչությունների հաշվետվություններ հիմնարկ-ձեռնարկություններում, կազմակերպություններում և քաղաքի առանձին թաղամասերում։ Այդպիսի հաշվետվություններով հանդես են գալիս գործկոմի նախագահը, նրա տեղակալները, բաժինների վարիչները և վարչությունների պետերը։

Ընտրողների առաջ դեպուտատների հաշվետվությունները նախապատրաստելու և անցկացնելու գործին օգնում են այն հասարակական կազմակերպությունները, որոնք ընտրությունների ժամանակ աշխատել են ընտրական տեղամասերում։

Բացի այդ, կան հիմնարկ-ձեռնարկությունների այնպիսի ղեկավարներ, որոնք այս կամ այն կերպ արդելակում են իրենց կողմից առաջադրված և ընտրված դեպուտատին՝ կատարելու իր դեպուտատական պարտականությունները։ Ցանկալի կլիներ, որպեսզի հիմնարկ-ձեռնարկությունների և կազմակերպությունների պարտիական, կոմերիտական և արհմիութենական այն կազմակերպությունները, որոնք առաջադրել են այս կամ այն դեպուտատին, իրենց կոլեկտիվների ժողովներում լսեին, թե նրանք ինչպես են արդարացնում կոլեկտիվի վստահությունը և գործնականորեն օգնեին նրանց աշխատանքին։

Գործադիր կոմիտեները թե իրենց և թե դեպուտատների հաշվետվություններից հետո ամփոփում են ընտրողների նակազները, դեպուտատների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները և միջոցներ ձեռնարկում դրանց կատարման համար։

Այսպես, քաղսովետի գործկոմը նախապատրաստեց, քննարկեց և համապատասխան որոշումներ ընդունեց Ավանի, Կոնդի, Քանաքեռի թաղամասերի բարեկարգման, մարդատար տրանսպորտի աշխատանքների լավացման, բնակարանային, կուլտուր-կենցաղային և այլ օբյեկտների շինարարության, հասարակական սննդի բարելավման և բազմաթիվ այլ հարցերի մասին. այդ որոշումներն արդեն կենսագործվում են. Կոնդ թաղամասում դեպուտատների և թաղային կոմիտեի նախաձեռնությամբ անցկացվեց 120 գծամետր կոյուղի, որի ամբողջ հողային աշխատանքը ևս նախապես կատարեցին տեղի բնակիչները։ Պուշկինյան սարալանջում անցկացվեց արտաքին լուսավորություն, որի հողային աշխատանքը ևս նախապես կատարեցին բնակիչները։

Շատ հաճախ դեպուտատների նախաձեռնությամբ և ընտրողների անմիջական մասնակցությամբ բարեկարգվում են փողոցները, կանաչապատվում բակերը, մաքրվում առվակները և այլն։ Սակայն, ինչպես ցույց տվեցին վերջին

ստուգումները, առանձին հիմնարկ-ձեռնարկությունների կազմակերպություններ, քաղաքային և շրջանային Սովետների գործադիր կոմիտեների առանձին բաժիններ ու վարչություններ ժամանակին չեն քննարկում ընտրողների նակազները ու դեպուտատների առաջարկությունները, միջոցներ չեն ձեռնարկում դրանց կատարման համար։

Դեպուտատների և մշտական հանձնաժողովների աշխատանքները աշխուժացնելու, ավելի գործարար դարձնելու հիմնական ձևերից մեկը նրանց հանձնարարություններ տալն է։

1959 թվականի ընտրություններից հետո քաղսովետի 309 դեպուտատ կատարել են 613 հանձնարարություն, ստացել են մոտ 2000 քաղաքացիների դիմում-բողոքներ. 130 դեպուտատ ընդունել են ընտրողներին, աշխատել ընթացք տալ նրանց դիմումներին, բավարարել նրանց խնդիրները։

Տեղական Սովետների կազմակերպական-մասսայական աշխատանքները ավելի արդյունավետ կլինեին, եթե սիստեմատիկաբար ուսումնասիրվեր և կազմակերպվեր օրինակելի աշխատանքի փորձի փոխանակում։ Վատ չէր լինի, եթե Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության և Մինիստրների Սովետի համապատասխան բաժիններ ուսումնասիրեին ռեսպուբլիկայի մի շարք քաղաքային և շրջանային Սովետների կազմակերպական-մասսայական աշխատանքների դրվածքը և կազմակերպեին փորձի փոխանակում, մանավանդ, որ կազմ-հրահանգչական բաժինները նոր են, և շատ աշխատակիցներ չունեն համապատասխան փորձ։

Կյանքը առաջ է գնում, ընդլայնվում են տեղական Սովետների իրավունքները, ստեղծվում Սովետների աշխատանքների բազմապիսի ձևեր ու մեթոդներ, տարեցտարի ավելանում է մշտական հանձնաժողովների թիվը, բայց տեղական Սովետների մշտական հանձնաժողովները դեռևս աշխատում են հին, 1953 թվականին հաստատված կանոնադրությամբ, որի մեջ ոչ մի խոսք չկա հասարակական կարգի, բնակարանային շինարարության, բնակարանային ֆոնդի հաշվառման և բաշխման հանձնաժողովների իրավունքների և անելիքների մասին։

Բազմազան է դարձել նաև թաղային կոմիտեների աշխատանքը. դրանց կից կազմակերպվում են առանձին հասարակական հանձնաժողովներ։ Սակայն այդ կոմիտեները ևս աշխատում են հին կանոնադրությամբ։ Սովետական ղեկավար օրգանները և տեղական Սովետների գործադիր կոմիտեները լրջորեն պետք է զբաղվեն այդ հարցերով։

Ռ. ԳԵՎՈՐԳՅԱՆ
Երևանի քաղաքային Սովետի գործկոմի
կազմ-հրահանգչական բաժնի վարիչ

---

# Մ Ե Ր  Ի Ն Տ Ե Ր Վ Յ Ո Ւ Ն

## ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ռեսպուբլիկայում մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության հետագա զարգացման և բնակչության աճող պահանջմունքների բավարարման մասին՝ մեր ամսագրի աշխատակիցը զրույց ունեցավ Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության վարչության պետ ընկ. Վ. Ղազարյանի հետ։

1. Հարց. Ի՞նչ է արված մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության տեխնոլոգիան կատարելագործելու համար։

Պատասխան. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Հուլիսյան պլենումի ընդունած որոշումները խոշոր ազդակ հանդիսացան արդյունաբերության բոլոր ճյուղերի վերակառուցման գործում։ Զգալի աշխատանք կատարվեց նաև Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկություններում։

Ռեսպուբլիկայի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերությունը մինչև վերջին ժամանակներս չուներ իր գիտա-հետազոտական և կոնստրուկտորական կազմակերպությունը։ Նման վիճակը պահանջում էր ավելի արագացնել սեփական գիտա-հետազոտական կենտրոնի ստեղծումը, որը կոնկրետ օգնություն ցույց կտար արտադրական ձեռնարկություններին՝ արմատավորելու տեխնիկայի նորագույն նվաճումները, բարելավելու սննդամթերքի արտադրության տեխնոլոգիան, մշակելու ռեսպուբլիկայի արդյունաբերության առջև ծառացած հարցերը։ Եվ իրոք, վարչությանն առընթեր նորաստեղծ գիտա-հետազոտական կենտրոնական լաբորատորիան և կոնստրուկտորական բյուրոն, իրենց գոյության երկու տարվա ընթացքում, արտադրական ձեռնարկությունների հետ զգալի աշխատանք են կատարել ռեսպուբլիկայի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության արտադրական օբյեկտների վերակառուցման, նորագույն տեխնիկայի արմատավորման և տեխնոլոգիական առաջավոր մեթոդների մշակման ուղղությամբ։ Արդեն պատրաստ է միսը ոսկորից անջատելու, ջլերը նախապես զատելու կոնվեյեր գծի նախագիծը, մշակվել է կարբոնատների կիրառման միջոցով եփովի երշիկների արտադրման տեխնոլոգիան, որը հնարավորություն է տալիս օգտագործելու նախապես աղի մեջ չդրված միսը. դրանով արտադրությունը վեր է ածվում անընդհատ հոսքի։ Կարևոր են նաև ցելոֆանից արհեստական երշիկաթաղանթ պատրաստող մեքենայի նախագիծը, մածնի պատրաստման տեխնոլոգիայի կատարելագործումը, Եղեգնաձոր և Կանաչ պանիր տեղական պանիրների արդյունաբերական տեխ-

նոլոգիայի մշակումը, կաթի ընդունման և պահպանման տիպային շենքերի նախագծերը։

2.Հարց. Ռեսպուբլիկայի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերական ձեռնարկություններում ինչպիսի՞ նոր տեխնիկա է մտցված։

Պատասխան. Շատ ժամանակ չէ, որ շահագործման են հանձնվել Վեդու, Էջմիածնի, Մեղրիի, Շամշադինի կաթի գործարանները՝ մեկ հերթափոխում 5-ական տոննա կաթ վերամշակելու կարողությամբ։ Այս տարվա հունվարին շահագործման է հանձնվում Երևանի մսի կոմբինատի՝ մսի և ճարպերի մշակման կորպուսը։ Յոթ և կես տոննայով ավելացավ Երևանի մսի կոմբինատի երշիկեղենի թողարկման կարողությունը, 2,5 անգամ՝ Կիրովականի մսի կոմբինատի երշիկեղենի ցեխի կարողությունը։

Ձեռնարկություններում տեղադրված են ավելի քան 480 նորագույն տեխնիկական սարքավորումներ։ Երևանի կաթի կոմբինատում տեղադրվեցին շոռի պանրիկներ կշռող-փաթեթող, կաթի պաստերիզացման և մածնի լցման ավտոմատ գծեր, փոքրիկ տարաներում արաժան լցնող կիսաավտոմատ սարքավորումներ։

Թեփուկավոր սառույցի սառցագեներատոր արմատավորվեց Երևանի և Լենինականի մսի կոմբինատներում, կաթի ավտոմատ պաստերիզատոր և շշեր լցնող-ամրացնող մեքենա՝ Կիրովականի կաթի գործարանում, կաթի ընդունման և սառեցման սարքավորումներ՝ Սիսիանի պանրագործարանում, պելմենների արագ սառեցման ապարատ՝ Երևանի մսի կոմբինատում։

Այժմ ռեսպուբլիկայի մսի կոմբինատներում թողարկվում են մոտ 80 տեսակի երշիկեղեն, զգալի չափով ավելացել է պնդապխտած երշիկների թողարկումը։ Երևանի մսի կոմբինատը 1960 թվականին թողարկեց հինգ նոր տեսակի մսահաց, կարբոնատ, բուժենինա, սուջուխ և բաստուրմա։ Կիրովականի մսի կոմբինատը ևս արդեն թողարկում է բաստուրմա։ Մշակված նոր ռեցեպտուրայով եփելու և կիսապխտած երշիկների մեջ համեմունքների քանակը ավելացնելու շնորհիվ լավացել է դրանց համը։

Մանր եղջերավոր անասունների մսեղիքը կախովի ուղեգծերի վրա բարձրացնելու հարմարանք է տեղադրված Լենինականի մսի պահածոների կոմբինատում։ Գործող և նորակառույց ձեռնարկությունների սառեցման սիստեմներում առաջին անգամ լայնորեն կիրառվեցին խողովակները։ Տեղադրվեցին մսահաց թխելու ռոտացիոն վառարաններ Երևանի մսի կոմբինատում։

Այդ ամենը հնարավորություն տվեցին ինտենսիֆիկացնելու կաթնամթերքների արտադրությունը, զգալի չափով լավացնելու թողարկվող մթերքների որակը և ավելացնելու ասորտիմենտը։

Ժողտնտխորհի Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության վարչության սիստեմի ձեռնարկությունները, բացի Լենինականի պահածոների կոմբինատից, կատարեցին և գերակատարեցին 1960 թվականի առաջադրանքները։ 1960 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, 28,2 տոկոսով ավելացավ մսի ու կաթնամթերքների համախառն արտադրանքը։ Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկություններն ավելի արտադրեցին. միս՝ 3158 տոննա, երշիկեղեն՝ 557 տոննա, պանիրներ՝ 1086 տոննա, թարմ կաթնամթերքներ՝ (վերածած կաթի) 9354 տոննա։ Այժմ կաթնեղենի արդյունաբերությունը թողարկում է ավելի շատ պանիր, այդ թվում՝ խոշոր պանիրներ՝ շվեյցարական, դարակային, հոլանդական, յարոսլավլյան, կովի և ոչխարի



չանախ, աղաջրային պանիրներ, ոչխարի կաթից՝ ռոկֆոր, Արագած, բրինզա։

3. Հարց. Ի՞նչ է արված արտադրված կենսամթերքները լավ պահպանելու համար։

Պատասխան. Վերջին տարիների ընթացքում զգալի տեղաշարժ կատարվեց մսամթերքների և կաթնամթերքների արտադրության և պահպանման կարողությունների ավելացման, տեխնիկայի և առաջավոր փորձի ներդրման գործում։ Այդ ժամանակաշրջանում շահագործման հանձնվեցին Լենինականի մսի պահածոների կոմբինատի, Կիրովականի մսի կոմբինատի նորակառույց սառցարանները՝ 3700 տոննա կարողությամբ, որի շնորհիվ մսի կոմբինատների մսամթերքների սառեցման ընդհանուր կարողությունն այժմ կազմում է 9000 տոննա։

Շահագործման հանձնվեցին պանրի պահպանման պահեստ-նկուղներ, օրինակ՝ Երևանի յուղ-սառցարանի պանրի պահեստը՝ 1000 տոննա կարողությամբ, 30 տոննայով ավելացվեց Գորիսի պանրագործարանի կարողությունը, 40 տոննայով՝ Կալինինոյինը, 70 տոննայով՝ Սիսիանինը, որի շնորհիվ պանրի պահպանման միանվագ կարողությունը հասավ 3200 տոննայի։ Ավելացավ նաև յուղի միանվագ պահպանման կարողությունը, որն այժմ հասնում է 1200 տոննայի։

4. Հարց. Ի՞նչ չափով է կատարելագործվել արտադրանքի մատուցումը սպառողին։

Պատասխան. Ռեսպուբլիկայում կառուցվեցին բազմաթիվ նոր գործարաններ։ Նոր տեխնիկայի տեղադրումը հնարավորություն ստեղծեց ավելացնելու թողարկվող կշռված-փաթեթված կաթնամթերքների քանակը, որն այժմ հասնում է մինչև 64 տոկոսի։

Թողարկվում են մանր բաժիններով փաթեթավորված ու ձևավորված կաթնաշոռի պանրիկներ, արաժան և սեր։ Կեֆիրի և ացետոֆիլենի արտադրության համար Շահումյանում ստեղծված է հատուկ մասնագիտացված ցեխ։ Երևանի կաթի կոմբինատին կից Կոտայքի բաժանմունքը դպրոցականների համար թողարկում է 250 գրամանոց ամաններով մածուն և կաթ։ Ոչխարի կաթից մշակված ռոկֆոր և Արագած պանիրներ են արտադրվելու Ապարանի և Թալինի պանրագործարաններում։

Ռեսպուբլիկայի մսի և կաթի արդյունաբերական ձեռնարկությունների կողմից 1960 թվականին առևտրական կազմակերպություններին հանձնված հալած յուղի 90,1, կարագ յուղի՝ 78, աղաջրային պանրի՝ 70, խոշոր պանրի՝ 65 տոկոսն ունեցել են բարձր որակ։ Բարձրորակ է եղել նաև Լեհաստանին վաճառած մոտ 274 տոննա խոշոր պանրի ավելի քան 65 տոկոսը։ Ռեսպուբլիկայից դուրս ուղարկած 300 տոննա աղաջրային պանրի մասին ոչ մի բողոք չի ստացվել։

Այս հաջողությունները ձեռք են բերվել կաթնեղենի և մսեղենի արդյունաբերության սիստեմում աշխատող մարդկանց ջանքերով, որոնցից 197-ն ունեն միջնակարգ և բարձրագույն կրթություն։ Պանրագործարաններում աշխատող 50 պանրավարպետներ ավարտել են Կալինինոյի մասնագիտական դպրոցը։

5. Հարց. Որո՞նք են ձեր գլխավորած արդյունաբերության խոչընդոտները։

Պատասխան. Ռեսպուբլիկայի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկություններում դեռևս կան լուրջ թերություններ։ Տեխնոլոգիական ռե-

ժիմի խախտման, ինչպես նաև փոխադրման գործի անբավարար կազմակերպման հետևանքով 1960 թվականին ձեռնարկություններն արտադրել են ոչ ստանդարտ մթերքներ՝ կարագ յուղ 2—3 տոննա, մանր պանիրներ՝ 17 տոննա, բրինզա՝ 1,5 տոննա, խոշոր պանիրներ՝ 11,7 տոննա. այս բոլորը ենթարկվել է վերամշակման։ Իջևանի գլխավորող պանրագործարանի (դիրեկտոր Ծաղարյան, տեխնոլոգ Մխիթարյան) արտադրած պանիրը կորցրել է իր ապրանքային ձևն ու համը։

Երբեմն ձեռնարկությունները թողարկում են անորակ կաթնամթերքներ և մսամթերքներ՝ երշիկ, կարկանդակ, մածուն, կեֆիր, կաթնաշոռ և այլն, որը տեղին դժգոհություն է առաջացնում գնորդների մեջ։

Անորակ կաթնամթերքներ ստանալու պատճառներից մեկն այն է, որ արդյունաբերությանը կաթ մատակարարող բազաներում՝ կոլտնտեսություններում, սովխոզներում, կովերը կթում են դեռևս ոչ հիգիենիկ պայմաններում, կիթը մեքենայացված չէ, կաթի սկզբնական մշակումը կատարվում է ցածր մակարդակով կամ բոլորովին չեն մշակում։ Կոլտնտեսություններից ու սովխոզներից շատերը կաթի նախնական մշակման համար չունեն հատուկ սարքավորված շենքեր։ Կաթը կթելուց հետո չի սառեցվում, որի պատճառով մինչև պանրի և կաթի մշակման ձեռնարկություններ հասցնելը արտադրության համար մասամբ ոչ պիտանի է դառնում։

Պատահական չէ, որ Երևանի կաթի կոմբինատում մշակման պրոցեսում կաթից անհամեմատ մեծ քանակությամբ կեղտ է զատվում։ Միայն Երևանի կաթի կոմբինատը 1960 թվականին շրջաններից ստացել է 435,7 տոննա թթված կաթ, այդ թվում՝ Հոկտեմբերյանից՝ 47, Վեդիից՝ 29, Արտաշատից՝ 80, Կոտայքից՝ 78,9, Սևանից՝ 92, Հրազդանից՝ 29, Էջմիածնից՝ 39, Շահումյանից՝ 9,2 տոննա։ Պարզ է, որ այդ կաթն օգտագործվել է ոչ ստանդարտ մթերքների ստացման համար, որը պետությանն զգալի վնաս է հասցրել։

Ժամանակն է, որ բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում կաթի նախնական վերամշակման համար կառուցվեն հատուկ սարքավորված շենքեր՝ սառեցման հարմարանքներով։ Դրանց վրա կատարված ծախսերը կարդարացվեն մեկ տարում, իսկ աշխատավորությունը կստանա ավելի որակյալ կաթնամթերքներ։ Միաժամանակ կոլտնտեսություններն ու սովխոզները անասնապահական ֆերմաների աշխատողներին պետք է վարձատրեն ո՛չ միայն ստացվող կաթի քանակի, այլև որակի համար։ Պետք է հաշվի առնել կաթի մաքրությունը, խտությունը, անարատությունը, յուղայնությունն ու տեսակարար կշիռը։

Չնայած տեխնիկական պրոգրեսի խոշոր տեղաշարժին, մեզ մոտ՝ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մեջ արտադրական մի շարք կարևոր պրոցեսներ դեռևս կատարվում են պրիմիտիվ ձևով։ Կաթնամշակման ձեռնարկություններում դեռևս լրիվ մեքենայացված չեն կաթը շշերը լցնելու, մթերքների փոքր չափերով կշռման-փաթեթման պրոցեսները։

Սննդարդյունաբերության հայրենական մեքենաշինությունը դեռևս լրիվին չի ապահովում արտադրությունը տեխնոլոգիապես վերահսկող և կարգավորող սարքերով։ Չկան բարձր արտադրողականություն ունեցող (ժամում 10000 լիտր) սեպարատներ։ Հրամայական պահանջ է դարձել շշերի լվացման, լցման և խցանման բարձր արտադրողականության (ժամում 6000—18000 շիշ) ավտոմատ գծի ստեղծումը։ Մինչև այժմ մեզ մոտ չի յուրացված այնպիսի կատարյալ սարքավորման թողարկումը, ինչպիսին է «Տետրապակ» մարկայի կաթ լցնող ավտոմատը։



Արևմուտքում լայն տարածում են գտել 2—5 տոննա տարողության պարբերական գործողության մեքենայացված պանրապատրաստիչները, որոնք թանձրուկթը կտրատում, պանրախմորը խառնում և միաժամանակ հատուկ սարքավորումներով ձևավորում են պանիրը։ Մեզ մոտ դեռևս նման սարքավորումները մասսայաբար չեն թողարկում։

Կաթնամթերքների արտադրանքի որակը բարելավելու, լավ պահպանելու, ճաշակով ձևավորելու համար կարևոր նշանակություն ունեն փաթեթման նյութերը և ծածկաշերտերը պատրաստելու համար անհրաժեշտ այլ առարկաները։ Նման նյութերի մասսայական թողարկման բացակայությունը զրկում է սննդարդյունաբերության ձեռնարկություններին արտադրանքը սպառողին գեղեցիկ ու հարմար փաթեթներով մատակարարելու հնարավորությունից։ Մեքենաշինության, քիմիական արդյունաբերության աշխատողները պետք է յուրացնեն այդ բնագավառում եղած ողջ դրսևորումը։

6. Հարց. Ի՞նչ եք ծրագրել անելու առաջիկայում։

Պատասխան. Յոթնամյակի երրորդ տարվա պլանները կատարելու և աշխատավորության աճող պահանջմունքները բավարարելու ուղղությամբ 1961 թվականին շահագործման կհանձնվի Դիլիջանի կաթի գործարանը, որը պետք է կաթնամթերքներով ապահովի քաղաքի ազգաբնակչությանը, սանատորիաներում բուժվողներին ու հանգստացողներին։ Ավարտվելու է Ղուկասյանի, Աղինի, Հոկտեմբերյանի պանրագործարանների վերակառուցումը։ Առաջիկա ամիսներին շահագործման կհանձնվեն Գորիսի և Ղափանի պանրագործարանները, որոնք մեկ հերթափոխում կմշակեն 5 տոննա կաթ։

Ալավերդի քաղաքի և Հրազդանի ազգաբնակչությանը թարմ կաթնամթերքներով և դիետ սննդամթերքներով ապահովելու համար կառուցվում են կաթի գործարաններ, ժամանակակից տեխնիկայով հագեցված բոլոր ցեխերով։

Մի շարք շրջաններում եղած պանրագործարաններն այսօր պատշաճ ձևով չեն կարողանում մշակել կաթը, ուստի և անհրաժեշտ է վերակառուցել Կալինինոյի, Բազարչայի, Սիսիանի պանրի գործարանները, որոնց կարողությունը մեկ հերթափոխում հասցվելու է 25—45 տոննայի։

Նախատեսվում է նոր օբյեկտներ կառուցել Ստեփանավանում, Հարթաշենում (Ղուկասյանի շրջան), Լոռուտում (Ալավերդու շրջան), Ամասիայում, Իջևանում, Եղեգնաձորում, Գորիսում և մի շարք այլ շրջաններում։ Կառուցվելու են 28 նոր գործարաններ և վերակառուցվելու են 14 գործող ձեռնարկություններ։ Մինչև տարվա վերջը պետք է շահագործման հանձնվի Մարտունու շրջանի Յանըղի պանրագործարանը, որտեղ պատրաստվելու են գլխավորապես շվեյցարական ու սովետական պանիրներ. այդ գործարանը մեկ հերթափոխում՝ կմշակի 10 տոննա կաթ, Ազիզբեկովի պանրագործարանը մեկ հերթափոխում՝ 5 տոննա կաթ։

Պանրագործարանների կարողությունների ընդլայնումը չի սահմանափակվում նոր գործարանների կառուցմամբ։ Խոշոր գործ է կատարվելու նաև գործող օբյեկտներում նոր սարքավորումների և նոր տեխնիկայի տեղադրման ուղղությամբ։ Օրինակ, այս տարի պետք է տեղադրել 513 միավոր տեխնոլոգիական սարքավորում, որոնցից 59-ը՝ մսի կոմբինատներում, մնացած 464-ը՝ կաթնեղենի արդյունաբերության օբյեկտներում։

Երևանի կաթի կոմբինատում, Լենինականի և Կիրովականի կաթի գործարաններում 1961 թվականին տեղադրվելու են շշերի լվացման, լցման և խցանման կոնվեյեր գծեր։ Պաստերիզացման սարքավորումներ են դրվելու Լենինականի, Կիրովականի և Դիլիջանի կաթի գործարաններում, որոնք պետք է ունենան տեխնոլոգիական պրոցեսներին հսկող և դրանք կարգավորող նորագույն հարմարանքներ։ Ժամում 10 և 5 հազար լիտր կարողության սերզատներ և կաթնաքամիչներ են տեղադրվելու Երևանի, Լենինականի և Կիրովականի կաթի գործարաններում։ Ինտենսիֆիկացնող տեխնոլոգիական մեթոդներով արտադրվող դիետիկ թթվակաթնամթերքների (մածուն, կեֆիր և այլն) արտադրման հոսքային գծեր են ստեղծվելու Երևանի կաթի կոմբինատում՝ ժամում 2—3 հազար շիշ կարողությամբ։ Երևանի կաթի կոմբինատում դրվելու են շոռի կտրման ու փաթեթման և շոռի պանիրների արտադրության, ինչպես նաև արաժանի կտրման փաթեթման ավտոմատ գծեր՝ ժամում 300 կգ. արտադրական կարողությամբ, նույն տիպի կիսաավտոմատ է տեղադրվելու Լենինականի կաթի գործարանում։

Առաջիկայում ռեսպուբլիկայի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկությունների տեխնիկական զարգացումն ընթանալու է անասունների և թռչունների վերամշակման հանգուցային պրոցեսների կոնվեյերացման և ավտոմատացման, հումքի վերամշակման հիմնական տեխնոլոգիական պրոցեսները հոսքային գծերի փոխադրելու ճանապարհով։

Հատուկ ուշադրություն է հատկացվելու պատրաստի արտադրանքի ելքի ավելացմանը, կիսաֆաբրիկատների արտադրմանը, կորուստների կրճատմանը, անասունների և թռչունների վերամշակումից առաջացող բոլոր տեսակի հումքերը լրիվ օգտագործելուն, փաթեթավորված և ձևավորված ապրանքների թողարկումն ավելացնելուն։ Դրա համար մսի կոմբինատներում և թռչունների մշակման ցեխերում գործադրվելու են մի շարք միջոցառումներ. անասունների մորթի հոսքային գիծ պետք է տեղադրվի Երևանի մսի կոմբինատում, ուր մեքենայացված մաշկազերծումը, արնաքամումը և մսեղիքի հետագա մշակումը կատարվելու են կախովի կոնվեյերի գծերի օգնությամբ։ Թռչունների մորթման և վերամշակման գծեր են անցկացվելու Էջմիածնի և Լենինականի թռչնաբուծական ֆաբրիկաներում։

Երևանի և Լենինականի մսի կոմբինատներում տեղադրվելու են սառը վիճակում ոսկրայուղը զատող սարքավորումներ։ Մսի բոլոր կոմբինատներում կիրառվելու է միսը նախապես աղ չդնելու, կարբոնատների օգտագործման միջոցով երշիկեղենի արտադրությունն արագացնելու առաջավոր մեթոդը և այլն։

Այդ միջոցառումների կենսագործումը հնարավորություն կտա բարձրացնելու արտադրանքի կուլտուրան, մինիմումի հասցնելու արտադրության մեջ եղած կորուստների քանակը, թեթևացնելու բանվորի աշխատանքը, բարձրացնելու նրա աշխատանքի արտադրողականությունը։

Ընթացիկ տարում թողարկվող կաթնամթերքների ավելի քան 72 տոկոսը ենթարկվելու է մանր կշռման-փաթեթման։ Կես լիտրանոց շշերով թողարկվելու է 6500 տոննա կաթ, 250 գրամանոց շշերում դպրոցականների համար թողարկվելու են կաթ և կաթնամթերքներ։ Նույն չափսի ամաններում թողարկվելու է 20 տոննա հում սեր՝ վերածած կաթի, ինչպես նաև 150 տոննա արաժան՝ 200 գրամանոց շշերով. կես լիտրանոց շշերով թողարկվելու են 950 տոննա մածուն, կեֆիր և ացիդոֆիլին։ Կաթնաշոռը, պանիրները թողարկվելու են 25—50 և 100 գրամանոց մանր փաթեթներով։

Անցյալ տարվա համեմատությամբ, ընթացիկ տարում ավելանալու է ոչ միայն երշիկեղենի քանակը, այլև փոփոխվելու են նրա տեսակները։ Ավելանալու են պնդապխտած երշիկները, բաստուրման, սուջուխը։ Թողարկվելու են երշիկի բոլորովին նոր տեսակներ։ Արտադրվելու է հայկական մզլած և կանաչ պանիր։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը համակողմանիորեն քննարկելով գյուղատնտեսության վիճակը, մշակեց գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի հետագա զարգացման կոնկրետ ծրագիր։ Պլենումը ըստ ռեսպուբլիկաների սահմանեց գյուղատնտեսական մթերքների արտադրության և այդ արտադրանքից պետությանը վաճառելիք մթերքների չափը։ Մեր ռեսպուբլիկայում առաջիկա տարիներին պետությանը պետք է վաճառվի 4 միլիոն փութ հացահատիկ, 43 հազար տոննա միս, 200 հազար տոննա կաթ։ Այդ կարևոր խնդիրը պատվով կատարելու համար մեծ անելիքներ ունեն նաև մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության աշխատողները։ Նրանք ևս այդ առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար մղվող պայքարի առաջամարտիկներից են և ջանք չեն խնայի՝ պատվով դիմավորելու մեր փառապանծ պարտիայի XXII համագումարը։

---

# ԱՌԱՋԻՆ ՓԱՐՈՍԸ

## ՓԱՐԻԶՅԱՆ ԿՈՄՈՒՆԱՅԻ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Իննսուն տարի է անցել այն օրից, երբ Փարիզի բանվորները մարդկության պատմության մեջ առաջին անգամ կատարեցին պրոլետարական ռևոլյուցիա և հաստատեցին բանվորների իշխանություն՝ Փարիզի Կոմունան:

Փարիզի Կոմունան համաշխարհային պատմության, իր ազատագրության համար բանվոր դասակարգի մղած պայքարի պատմության ամենանշանավոր երևույթներից մեկն է: Փարիզյան Կոմունայով սկսվեց կապիտալիզմի անկման շրջանը. այն պրոլետարիատի առաջին հարվածն էր բուրժուական կարգերին, իր իշխանությունը հաստատելու առաջին փորձը:

Փարիզի Կոմունան նախապատրաստվել էր Ֆրանսիայի սոցիալ-տնտեսական կարգացման ամբողջ ընթացքով, ֆրանսիական պրոլետարիատի մինչև այդ մղած դասակարգային ամբողջ պայքարով: Երկրորդ կայսրության շրջանի Ֆրանսիայում կապիտալիզմն իր հետագա կարգացումն էր ապրում: Արագ թափով աճում էր բանվորական և դեմոկրատական շարժումը, աննախընթաց չափով խորանում էին դասակարգային հակասությունները: Արտաքին քաղաքականության ասպարեզում Նապոլեոն III-ի կրած անհաջողությունները, կայսերական արքունիքի բաքոսային խրախճանքները, բանկային ֆիրմաների և ամեն տեսակի գործամոլների մեծ չափերի հասած սպեկուլյացիան խոր դժգոհություն էին առաջացնում ամբողջ երկրում:

Նապոլեոն III-ի, ինչպես Մարքսն է ասում, այդ «մեծ քեռու փոքրիկ քեռորդու» գլխավորած փտած սիստեմն արտաքին փայլ ստեղծելու մեծ կարիք էր զգում և հույս ուներ հաղթական պատերազմի միջոցով ելք գտնել ստեղծված ծանր իրադրությունից: 1870 թվականի հուլիսի 19-ին, իրեն հատուկ անձնապաստանությամբ նա պատերազմ հայտարարեց Պրուսիային: Այդ պատերազմն ավանտյուրիստի վերջին խաղաթուղթն էր: Այն ժամանակ, երբ Պրուսիան լրջորեն նախապատրաստվել էր պատերազմին, կայսերական Ֆրանսիան պատրաստ չէր կռվելու ո՛չ դիվանագիտական, ո՛չ քաղաքական և ո՛չ էլ ռազմական տեսակետից: Կարճ ժամանակում պրուսական զորքերը հեղեղեցին Ֆրանսիան: Պաշտոնյաների ու գեներալների ապաշնորհությունն ու ծախվածությունը, մինամթերք մատակարարողների խաբեբայությունները, ընդհանրապես ռազմական գործի վատ վիճակը, կայսրության փտածությունը շատ շուտով իրենց զգացնել տվին: Պատերազմի առաջին իսկ օրերից ֆրանսիական բանակը պարտություն պարտության հետևից էր կրում: Եվ ընդամենը հինգ շաբաթում Նապոլեոն III-ի փքուն կայսրությունը փուլ եկավ ինչպես թղթե տնակը:

1870 թվականի սեպտեմբերի 2-ին ֆրանսիական հարյուր հազարանոց բանակը, շրջապատվելով Սեդան քաղաքի մոտ, Նապոլեոն III-ի հետ միասին հանձնվեց պրուսացիներին: Սեդանի աղետը վերջին հարվածը հասցրեց բոնապարտյան ռեժիմին: Սա հենց առիթ ծառայեց, որպեսզի աշխատավոր Փարիզը ոտքի կանգներ՝ պաշտպանելու իր շահերը: Սեպտեմբերի 4-ի ռևոլյուցիան, որի մեջ վճռական դեր խաղացին Փարիզի բանվորները, տապալեց Երկրորդ կայսրությունը և հռչակեց Երրորդ ռեսպուբլիկան: Սակայն պրոլետարիատի թուլության և անկազմակերպության հետևանքով իշխանության գլուխ անցան բուրժուական լիբերալները և բուրժուական ռեսպուբլիկականները, որոնք կազմեցին «Ազգային պաշտպանության կառավարություն՝» գեներալ Տրոշյուի գլխավորությամբ:

Անցքերի հենց առաջին օրերին Մարքսը կանխագուշակում էր, որ պատերազմն անխուսափելիորեն կրախի կհասցնի Լուի Բոնապարտի կայսրությունը:

Ռեսպուբլիկայի հռչակումը հայրենասիրական վերելք առաջացրեց ֆրանսիական ժողովրդի լայն մասսաների շրջանում: Ո՛չ ցուրտը, ո՛չ սովն ու թնդանոթային գնդակոծումը չէին կարող սասանել Փարիզի բանվորների վճռականությունը, որոնք պատրաստ էին իրենց բոլոր ուժերը տալ հարազատ քաղաքի պաշտպանությանը: Սակայն իշխանության գլուխ էին կանգնած այնպիսի մարդիկ, որոնք իրենց ժողովրդից ավելի շատ էին վախենում, քան արտաքին թշնամուց: «Ազգային պաշտպանության կառավարությունը», վախենալով հայրենասիրական ու ռևոլյուցիոն տրամադրությունների հետագա աճից, գործադրում էր բոլոր միջոցները՝ արագորեն ավարտելու պատերազմը, Փարիզը հանձնելու զավթիչներին, որպեսզի պրուսացիների ուժերով ճնշեր ժողովրդական մասսաների աճող ակտիվությունը: Կառավարության լիդերներից մեկը՝ Ժյուլ Ֆավրը, ուղղակի հայտարարում էր, որ կառավարությունը պատրաստվում է պաշտպանվել ոչ թե պրուսացիներից, այլ Փարիզի բանվորներից:

Այսպիսով, օբյեկտիվորեն ստեղծվել էր այնպիսի իրադրություն, երբ ազգային անկախության իրական պաշտպանությունն անհնար էր դառնում, քանի դեռ իշխանության գլուխ էր կանգնած բուրժուազիան, այսինքն՝ ազգային պաշտպանության հարցը միաձուլվում էր կապիտալիստների դասակարգի վերացման խնդրի հետ: Սա այն տենդենցի առաջին վառ արտահայտությունն էր, երբ բուրժուազիան հանուն իր նեղ դասակարգային շահերի դավաճանում է ազգային շահերին, ոտնահարում հայրենասիրության ամենավսեմ սկզբունքները: Այդպես էր վարվում ֆրանսիական բուրժուազիան Փարիզի Կոմունայի օրերին, այդպես է նա վարվում այսօր՝ իր երկրի շահերը ենթարկելով ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ պլաններին:

Մտահոգվելով իրենց երկրի ճակատագրով՝ Ֆրանսիայի բանվորները կառավարությունից պահանջեցին, պրուսական զավթիչներին հակահարված տալու համար, զինել ժողովրդին: Զիջելով բանվորների վճռական պահանջին՝ կառավարությունը ստիպված էր կազմավորել Ազգային գվարդիայի 200 նոր գումարտակ: Ազգային գվարդիայի ստեղծումը և զինումը փաստորեն նշանակում էր զինել ժողովրդին, մի բան, որից այնպես խուսափում էր բուրժուազիան: Անհանգստանալով ժողովրդական մասսաների հայրենասիրական վերելքից, «Ազգային պաշտպանության կառավարությունը» հաշտության վերաբերյալ գաղտնի բանակցություններ սկսեց Բիսմարկի հետ և դրանով իսկ վերածվեց «ազգային դավաճանության կառավարության»: Կառավարության դավաճանության լուրն անմիջապես հասավ բնակչության լայն խավերին:

Պրոլետարական առաջավոր տարրերը, կառավարության դավաճանական քաղաքականության մերկացման հետ միասին պրոպագանդում էին Կոմունայի՝ որպես ռևոլյուցիոն իշխանության ստեղծման գաղափարը, որն իր վրա կվերցներ ֆրանսիական ժողովրդի ազգային շահերի պաշտպանության գործը, կիրականացներ երկրի ազատագրումը օտար զավթիչներից, կապիտալիստների ճնշումից և ճանապարհ կբացեր դեպի նոր սոցիալական կարգը: Արդեն 1870 թվականի հոկտեմբերի սկզբներից Փարիզում և երկրի մի շարք քաղաքներում տեղի էին ունենում ցույցեր Կոմունա ստեղծելու պահանջով:

1870 թվականի հոկտեմբերի 31-ին պաշարված Փարիզի աշխատավորները բլանկիստ Գ. Ֆլուրանսի գլխավորությամբ փորձեցին տապալել «ազգային դավաճանության կառավարությունը»: Դրա առիթը բուրժուազիայի՝ երկրի ազգային շահերին դավաճանելու նոր ակտն էր՝ մարշալ Բազենի կողմից Մեց ամրոցը 170 հազարանոց բանակով թշնամուն հանձնելը: Սակայն վատ նախապատրաստված ելույթը ճնշվեց կառավարության կողմից:

Դասակարգային հակասությունների հետագա սրման պայմաններում 1871 թվականի հունվարի 22-ին տեղի ունեցավ Փարիզի աշխատավորների երկրորդ ելույթը, սակայն դարձյալ անհաջող: Երկու ելույթներն էլ ղեկավարում էին բլանկիստները, որոնք թերագնահատում էին ապստամբության ժամանակ ժողովրդական մասսաների վճռական դերը և գործում էին որպես դավադիրներ:

Սարսափելով երկրում աճող ռևոլյուցիոն շարժումից, ֆրանսիական բուրժուազիան շտապեց հունվարի 28-ին Ֆրանսիայի համար ծանր ու ստորացուցիչ պայմաններով զինադադար կնքել գերմանական զավթիչների հետ: Գերմանական օկուպացիայի, ոստիկանական ռեպրեսիաների պայմաններում տեղի ունեցած Ազգային ժողովի ընտրությունները հաղթանակ բերին հետադիմական-միապետական ուժերին, որոնք կառավարության ղեկավար ընտրեցին դեմոկրատիայի կատաղի թշնամի, միապետական Թիերին:

1871 թվականի փետրվարի 26-ին Թիերը և արտաքին գործերի մինիստր Ժյուլ Ֆավրը Վերսալում Բիսմարկի հետ ստորագրեցին հաշտության պայմանագիր, որի համաձայն Ֆրանսիան Պրուսիային էր զիջում Էլզասն ու Լոթարինգիան և պարտավորվում էր վճարել 5 միլիարդ ֆրանկ ռազմատուգանք: Ժողովրդական մասսաների դժգոհությունը կառավարող շրջանների քաղաքականությունից ավելի ուժեղացավ, երբ ազգային ժողովը ընդունեց Փարիզի բնակչության լայն խավերի առանց այն էլ ծանր նյութական դրությունը ավելի վատթարացնող մի շարք որոշումներ: Այդպիսով խոշոր բուրժուազիան ոտնահարում էր սեպտեմբերի 4-ի ռևոլյուցիայի շնորհիվ աշխատավորների ձեռք բերած դեմոկրատական ազատությունները, որը դրդեց բանվոր դասակարգին և նրա հետ դաշինք կնքած մանր բուրժուազիային հակահարված տալ բուրժուա-կալվածատիրական ռեակցիային: Այդ նպատակով Փարիզի աշխատավորական մասսաները համախմբվեցին խոշոր դեմոկրատական կազմակերպության շուրջը, որը միավորում էր Ազգային գվարդիայի 215 գումարտակները: Այդ մասսայական կազմակերպության գլուխ կանգնած էր ընտրովի Կենտրոնական կոմիտեն, որի մեջ մտնում էին բազմաթիվ աչքի ընկնող սոցիալիստներ, Ինտերնացիոնալի անդամներ:

Մարտի կեսերին լրիվ հեղինակազրկված պե-

# Մեզ գրում են

### ԻՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ

Երևանի մսի կոմբինատի պարտիական կազմակերպության ադմինիստրացիայի գործունեության վերահսկող հանձնաժողովի նախագահ Զ. ԽԱՉԱՏՐՅԱՆԸ գրում է, որ հանձնաժողովը պարբերաբար ուսումնասիրում է կոմբինատի սպանդի ցեխի գործունեությունը և ժամանակին ահազանգում է պարտիական բյուրոյին և դիրեկցիային՝ գործի վիճակը բարելավելու համար: Մի ստուգումից պարզվեց, որ կոմբինատի ղեկավարությունը աչքաթող էր արել կաշվի որակի պահպանման գործը: Սպանդի ցեխում կաշվի սկզբնական վերամշակման վրա աշխատում էին այդ գործից անտեղյակ մարդիկ: Պարտբյուրոն այդ մասին հայտնեց դիրեկցիային: Վերջինս նրանց փոխարինեց գործիմաց մարդկանցով: Կարճ ժամանակ անց բարելավվեց կաշվի որակը:

Հանձնաժողովը հատուկ ուշադրություն է հատկացնում կոմբինատին կից խոզագիրացման կետի աշխատանքին: Այդ կետը հնարավորություն ուներ բտելու 450—500 խոզ, բայց ադմինիստրացիայի թույլ պահանջկոտության հետևանքով՝ այնտեղ բտվում էին միայն 280 խոզ: Այս հարցը ևս ուսումնասիրեց հանձնաժողովը, որի ներկայացրած նյութերը քննարկվեցին պարտբյուրոյում: Այժմ բտվում է 500-ից ավելի խոզ:

Հանձնաժողովն իր աշխատանքային փորձով ցույց է տալիս, թե որքան մեծ նշանակություն ունի այս կամ այն ձեռնարկությունում եղած թերությունների ժամանակին հայտաբերումը, որը հնարավորություն է տալիս ադմինիստրացիային՝ կոնկրետ միջոցառումներ մշակելու դրանց վերացման համար:

### ԴԱՍԱԽՈՍԱԿԱՆ ԽՈՒՄԲ

Նոյեմբերյանի կաթնա-անասնաբուծական սովխոզից ընկ. Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ գրում է.

Երկրորդ տարին է, որ Նոյեմբերյանի կաթնա-անասնաբուծական սովխոզում ստեղծվել է քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության անդամների խումբ, որն ընդգրկում է 15 հոգի: Խումբն իր առջև խնդիր է դրել աշխատավորության շրջանում լայնորեն պրոպագանդել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ընթացիկ քաղաքականության կարևոր հարցերը:

### ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՆՎԵՐՆԵՐՈՎ ԴԵՊԻ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Ադրբեջանի Լեռնային Ղարաբաղի ավտոնոմ մարզի Մարտունու շրջանի Ճարտար գյուղի Ստալինի անվան կոլտնտեսության պարտիական կազմակերպության քարտուղար ընկ. Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ գրում է.

1960 թվականին կոլտնտեսությունը ժամկետից շուտ գերակատարեց պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու իր սոցիալիստական պարտավորությունները:

Կոլտնտեսության դաշտավարները աշնանացան հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացան 12,5 ցենտներ ցորեն, պլանով նախատեսված 11 ցենտների փոխարեն, որը գերազանցում է յոթնամյա պլանով նախատեսված 1964 թվականի մակարդակը:

Ստանձնած սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարեցին խաղողագործները, որոնք մշակելով 317 հեկտար խաղողի այգի, ստացան 2176 տոննա խաղողի համախառն բերք: Խաղողագործները որոշել են ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանալ 2600 տոննա խաղող:

Քիչ հաջողություններ ձեռք չեն բերել նաև անասնապահները. նրանք խոստացել են անասնաբուծական մթերքների արտադրման սոցիալիստական իրենց պարտավորությունները կատարել մինչև 1961 թվականի հոկտեմբերի 17-ը՝ ՍՄԿՊ XXII համագումարի բացման օրը:



# Պարտիական խրոնիկա

### ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՀԿՊ Կենտկոմի բյուրոն քննարկեց կամավոր ժողովրդական դրուժինաների աշխատանքի վիճակը և կոնկրետ միջոցառումներ նշեց այն բարելավելու համար:

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների, հիմնարկությունների, շինարարությունների, կոլտնտեսությունների և ուսումնական հաստատությունների մեծ մասում կոմպլեկտավորված են ժողովրդական դրուժինաներ: ստեղծված են ժողովրդական դրուժինաների քաղաքային և շրջանային շտաբներ:

Իրենց դրական աշխատանքով աչքի են ընկնում Կիրովական քաղաքի, Երևանի ալյումինի և էլեկտրատեխնիկական, Սևանի գործիքաշինական գործարանների և այլ հիմնարկությունների ժողովրդական դրուժինաները:

Կենտկոմի բյուրոն միաժամանակ նշեց, որ այս ուղղությամբ դեռևս շատ բան չի արված: Երևան, Լենինական, Ղափան, Ալավերդի քաղաքներում և այլ տեղերում դրուժինաների մի շարք շրջանային շտաբներ թուլացրել են իրենց աշխատանքը, իսկ առանձին դրուժինաներ՝ գրեթե դադարել են գործելուց:

Երևանի Սպանդարյան, 26 կոմիսարների անվան շրջաններում, Լենինականում և այլ վայրերում ստեղծված դրուժինաների քանակն անբավարար է: Դրուժինաների ղեկավարության գործում տեղ են գտել լուրջ թերություններ, որոնց հետևանքով նրանց աշխատանքը սահմանափակվում է շատ նեղ շրջանակներում, դրուժինիկների մեջ չի ծավալվում պատշաճ քաղաքական, դաստիարակչական աշխատանք, լավագույն դրուժինաները չեն խրախուսվում: Երևան, Կիրովական, Լենինական, Սևան քաղաքների մի շարք հիմնարկությունների, շինարարությունների և տրանսպորտային կազմակերպությունների ղեկավարները ակտիվ մասնակցություն հանդես չեն բերում դրուժինաների աշխատանքին:

Կենտկոմի բյուրոն նշված թերությունների վերացման նպատակով առաջարկեց քաղկոմ-շրջկոմներին, սկզբնական կազմակերպություններին՝ վերանայել ժողովրդական դրուժինաների և շտաբների կազմը և այն ամրապնդել ստուգված, արժանավոր բանվորներով, կոլտնտեսականներով, ինտելիգենցիայի ներկայացուցիչներով, թոշակառուներով և, առաջին հերթին, կոմերիտականներով ու երիտասարդներով:

Քաղկոմ-շրջկոմները, աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետները պետք է հատուկ ուշադրություն հատկացնեն տնային վարչություններին կից ստեղծված դրուժինաներին, իսկ այնտեղ, որտեղ չկան, անհապաղ ստեղծել նման դրուժինաներ. ուժեղացնել և ընդլայնել դրուժինաների կապը բնակչության հետ և նրանց աշխատանքը դարձնել ավելի արդյունավետ:

Կենտկոմի բյուրոն հանձնարարեց ԼԿԵՄ Կենտկոմին և ՀԱՄԽ-ին՝ ապահովել լավագույն կոմերիտականների և պրոֆմիության անդամների լայն մասնակցությունը դրուժինաների աշխատանքներին:

### ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՄԱՍԻՆ

ՀԿՊ Ստեփանավանի շրջկոմի բյուրոն քննարկեց գարնանացանի նախապատրաստման ընթացքը Ագարակի ենթաշրջանի կոլտնտեսություններում: Բյուրոն նշեց, որ գարնանացանին անբավարար են նախապատրաստվում Յաղդանի, Ագարակի, Լեջանի և Լ. Բերդի կոլտնտեսությունները, որոնք ժամանակին չեն լրացրել գարու, վարսակի և եգիպտացորենի սերմացուների պակասը, դանդաղ է ընթանում գոմաղբի և հանքային պարարտանյութերի փոխադրումը դաշտ, մինչև վերջերս չէին կոմպլեկտավորված դաշտավարական բրիգադաները և օղակները:

Շրջկոմի բյուրոն կոնկրետ միջոցառումներ նշեց՝ կարճ ժամանակամիջոցում լրացնելու սերմերի պակասը, արագացնելու պարարտանյութերի փոխադրումը դաշտ:

### ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ

Օրերս տեղի ունեցավ ՀԿՊ Սպիտակի շրջկոմի պլենումը, որին մասնակցում էին շրջանի գյուղատնտեսության առաջավորները: Պլենումը քննարկեց «ՍՄԿՊ Կենտկոմի հունվարյան պլենումի արդյունքները և Սպիտակի շրջանի պարտիական կազմակերպությունների խնդիրները»

**ԳԻՆԸ 25 Կ.**

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*«Международный политико-экономический ежегодник» — Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 624 էջ, գինը 66 կոպ.։*

*«Трудом велик человек»—Ժողովածու, Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 184 էջ, գինը 20 կոպ.։*

*Բրոշյուրը կազմված է բանվորների, կոլտնտեսականների, գիտնականների, գրականության, արվեստի և հասարակական գործիչների ասույթներից։*

*«Лекционные плакаты по истории КПСС»—Առաջին հրատարակություն, 20 պլակատներ (72×108 չափսի), Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., գինը 3 ռ.։ Նախատեսված է պարտիական լուսավորության և ուսումնական հաստատությունների սիստեմում ՍՄԿՊ պատմությունից դասախոսությունների և սեմինարների անցկացման համար։*

*«Политическая экономия социализма»—Սոցիալ-տնտեսական գրակ. հրատ., Մոսկվա, 1960 թ., 527 էջ, տիրաժ 200 000, գինը 81 կոպ.։*

*«Экономика строительства»—Ուսումնական ձեռնարկ, Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 536 էջ, տիրաժ 75 000, գինը 8 ռ.։*

КАДАР ЯНОШ — *«Избранные статьи и речи 1957—1960 годы», Պետքաղհրատ, Մոսկվա, 644 էջ, գինը 1 ռ. 23 կոպ.։*

*«История гражданской войны в СССР 1917—1922»—Հատոր V, Պետքաղհրատ, Մոսկվա, 420 էջ, գինը 2 ռ. 35 կոպ.։*

ЛЕОНТЬЕВ Л. А.— *«Начальный курс политической экономии», Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 536 էջ, գինը 73 կոպ.։*

**Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Հանուն միջազգային կոմունիստական շարժման նոր հաղթանակների»:** *Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության արդյունքների շուրջ։ Հայպետհրատ, 1961 թ., 80 էջ, տիրաժ 5000, գինը 7 կոպ.։*

**«ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԿՈՉԵՐ ԵՎ ԹՌՈՒՑԻԿՆԵՐ. 1902—1921»:** *Հայպետհրատ, 1960 թ., 704 էջ, տիրաժ 3000, գինը 1 ռ. 19 կոպ.։*

**Ա. ՍԱՐԳՍՅԱՆ—«Աֆրիկայի զարթոնքը»:** *Հայպետհրատ, 1960 թ., 256 էջ, տիրաժ 3000, գինը 43 կոպ.։*

**«ՀԱՅ-ՌՈՒՍԵՐԵՆ ԲԱՌԱՐԱՆ»:** *Պարունակում է բանավոր խոսքի և գրականության մեջ գործածվող շուրջ 40000 բառ։ Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 444 էջ, տիրաժ 30000, գինը 1 ռ. 36 կոպ.։*

**Ի. ԱՆՏՈՆՈՎԱ—«Կանադա»:** *Հայպետհրատ, 1960 թ., տիրաժ 2000, գինը 17 կոպ.։*

**Գ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ, Ա. Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ—«Սովետահայ կուլտուրան սոցիալիզմի նվաճումն է»:** *Հայպետհրատ, 1960 թ., 112 էջ, տիրաժ 2000, գինը 9 կոպ.։*

**Ս. Խ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ—«Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը»:** *Հայկ. ՍՍՌ, Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 268 էջ, տիրաժ 1000, գինը 1 ռ. 85 կոպ.։*

**«ՆՐԱՆՔ ԸՆԿԱՆ ԼՈՒՍԱԲԱՑԻՆ»**—*Գրքում զետեղված են սովետահայ բանաստեղծների ստեղծագործությունները՝ նվիրված Հայաստանում 1920 թվականի Մայիսյան ապստամբության հերոսների հիշատակին։ Հայպետհրատ, 1960 թ., 140 էջ, տիրաժ 3000, գինը 48 կոպ.։*